# ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆ

## ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ

Ի

## ՀԱՅԱԲՆԱԿ ԳԱՒԱՌՍ

ԱՐԵՒԵԼԵԱՆ ՏԱՃԿԱՍՏԱՆԻ

## ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ

ՍԱՐԷՆ ԵՒ ՋՈՐԷՆ, ՀՆԷՆ ԵՒ ՆՈՐԷՆ

ՊԻՏԱՆԻ ԳԻՏՆՈՑ

**ՄԱՍՆ Բ.**

Տեղագրեց
ՄԱՆՈՒԷԼ Կ. ՄԻՐԱԽՈՐԵԱՆ

معارف نظارت جلیله سنك ٦٩٥ نمرولی رخصتیله

Կ. ՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ս. Գ. ՊԱՐՏԻԶՊԱՆԵԱՆ

1885

# ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆ
## ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ
## Ի
# ՀԱՅԱԲՆԱԿ ԳԱՒԱՌՍ
# ԱՐԵՒԵԼԵԱՆ ՏԱՃԿԱՍՏԱՆԻ



## ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ
ՍԱՐԷՆ ԵՒ ՁՈՐԷՆ, ՀՆԷՆ ԵՒ ՆՈՐԷՆ
ՊԻՏԱՆԻ ԳԻՏՆՈՑ



## ՄԱՍՆ Բ.



Տեղագրեց
ՄԱՆՈՒԷԼ Կ. ՄԻՐԱԽՈՐԵԱՆ



معارف نظارت جلیله سنك ٦٩٥ نمرولی رخصتیله



Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ս. Ղ. ՊԱՐՏԻԶՊԱՆԵԱՆ
1885

# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

Երես

# ՁՕՆ

# ԽՈՐԻՆ ԵՐԱԽՏԱԳԻՏՈՒԹԵԱՆ

ԱՌ

## ԱՄԵՆԱՊԱՏԻՒ

## Ս Ր Բ Ա Զ Ա Ն

# Հ Ա Յ Ր Ի Կ Խ Ր Ի Մ Ե Ա Ն

## ՆԱԽՈՐԴ ՊԱՏՐԻԱՐՔ ԹՈՒՐՔԻՈՅ ՀԱՅՈՑ

*Ընդունեցէ՛ք, Սրբազան Տէր,*
*Իմ սրտագին եւ զայս ՆՈՒԷՐ,*
*Զոր փնջած եմ Սարէն եւ Ձորէն,*
*Մեր Հայրենեաց Հնէն եւ Նորէն,*

*Ձեզ*

Խ. Ծ.
ՄԻՐԱԽՈՐԵԱՆ

# ԱՌ ԱԶՆԻՒ ԸՆԹԵՐՑՈՂՍ

*Մեր բազմաչարչար նահատակութեամբ 'ի Հայաբնակ գաւառս ըրած* ՅԱՏՈՒԿ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԵԱՆ *մէջ տեղական հանգամանքներն զիս պարտաւորցուցին ամեն ինչ աչք առնուլ . . . եւ այնպէս թափառիլ յայդ ընդարձակ աշխարհ ( . . . . . ) ուր արդարեւ շրջագայած եմ իբրեւ յանսահման տաճարի կամ 'ի խորանի սրբութեանց ։*

*Այժմ թէպէտեւ գտնուիմ օտար աստեղց տակը. սակայն իմ* ԳԻՐՆ *եւ իմ* ԽՕՍՔԸ *կը վերաբերին ընդհանուր Երկրին, որ դիւթական բառով մը «Հայրենիք» կանուանի, եւ զոր անձամբ սերտելոյ համար* ՍԷՐ *եւ* ԿՈՐՈՎ *վայրկեան մ'ինէ բացակայ չեղան ։*

*Տեղագիր-Ուղեւորն իւր փափաքին յայնժամ աւելի հասած կը լինի երբ իւր հայրենապատում* ԵՐԿԵՐՆ *տեսնուին ոչ թէ միայն Հայ հասարակութեան ձեռքը, այլ նաեւ դրասեղանին վերայ մեր* ՀԱՅ *ուսանողաց, որ շատ պէտք ունին սոյն օրինակ երկասիրութեանց, որք ազգային սուրբ զգացումներով օծեալ՝ կը համարիմ մէկ մէկ պահարան վեհագոյն զգացումներու, զորս կրողն, ով ոք եւ լինի, բնականէն մի գաղտնի զօրութիւն կ'զգենու յինքեան, ուրեմն ով որ կուզէ զօրանալ, պարտի ուշի ուշով եւ կրկնակի ընթեռնուլ զիմ Մատենիկս, որ ստուգիւ Երկրի հին եւ նոր կենաց պատմութիւնն է, գրուած զգուշաւոր խոհեմութեամբ եւ շրջահայեաց տեսութեամբ ։*

*
* *

*Երանի՛ թէ մեր բեմասաց վարդապետներն սովորութիւն ընեն բեմերու վրայէն յատուկ քարոզներ խօսիլ նաեւ* արտաքին *գրեանց վերայ, որպէս զի Եւրոպական խիստ շատ անգամ անհաճոյ վիպասանութիւնք*

եւ օտար կեանքէ առնուած երբեմն հանրային բարոյականը խանգարող թարգմանութիւնք, որք մեր ժողովրդեան մէջ եւ մանաւանդ յերիտասարդ դասուն դժբաղդաբար ճարակ գտած են, տեղի տան այս տեսակ ԵՐԿՈՑ առջեւ, յորոց լիապէս ամեն ոք կարող է ուսանիլ Երկրի հին եւ նոր կենաց ՆԿԱՐԱԳԻՐՆ իրեն բոլոր Երեւոյթներովն ։

Մեր Տեղագրութեանց այս ճոխագոյն մասի մէջ եւս առաւել բազմակողմանի դրութիւն մը բռնեցինք, որպէս զի ամեն կարգի անձանց եւ ուսանողաց օգտակար լինի գործն, որ արդէն սահմանեալ է օրինակելի լինելոյ եւ միանգամայն ՆՈՐ ուղղութիւն ներշնչելոյ գՀայաբնակ գաւառաց գրել ուզողներուն ։

Ուրախ եմ աստ չեշտակի յիշել թէ ի մեր բնագաւառս Հայկական եւ Մահմետական՝ երկու դարաւոր հայրենակցաց մէջ սկսած է յարաբերական քաղցրութեան ջերմաչափի աստիճանն բարձրանալ, որ նըշան կը համարիմ իւրեանց հեռատեսութեան եւ իմաստութեան ։

Մենք՝ Օսմանցի Հայերս առանց զԵրկիր ԼԱՒ ուսումնասիրելոյ իւր բոլոր հանգամանքներովն, բնաւ չեմք կարող պէտք եղածին չափ օգտակար հանդիսանալ Ազգին եւ Տէրութեան ծառայելուն մէջ ։ Ահա իմ հաւատոյ հանգանակն, ոյր վերայ կատարելապէս համոզուած եմ ։

*

* *

Երկասիրութեանցս բովանդակութեան մասին, յառաջաբանին մէջ ընդարձակօրէն գրելն անպատշաճ դատուած է, սակայն միտքս եւ նպատակս դարձեալ յայտնած եմ անցողակի, թէեւ մի քանի անորոշ դերբայներով միայն ։ Աստ ամենայն վստահութեամբ կը համարձակիմ ըսել թէ «Ուշադիր ընթերցողներն ըստուգիւ պիտի տեսնեն եւ փորձով իսկ պիտի համոզուին որ մեր ԵՐԿԵՐՆ, թղթոյ եւ տպագրական պարզութեան տակը, (որոյ պատճառը դժուար չէ գիտնալ) ունին պարունակած ԳԵՂԵՑԻԿ նիւթեր ։

Մ· Կ· Մ·

# ՅՈՌԱՋԱԲԱՆ

Երբ մի մարդ Հայրենեաց եւ Մայրենեաց սիրոյն յարաժամ կը մնանի եւ ընդ միշտ անձնանուէր է Երկրին եւ անոր տիրող կառավարութեան, անշուշտ չ՚կրնար ունենալ զիւր յառաջադիմութեան ուղին փակող խոչընդոտներ եւ յուսահատիլ նիւթական զոհողութեանց առջեւ՝ մանաւանդ երբ հաւատք ունի գործոյ ընդունելութիւն գտնելուն վերայ ։

Մեր Տեղագրութեանց այս Մասն, առանց դժուարութեան, մութէն 'ի լոյս ածելոյ կարող եղանք, 'ի շնորհս մեր հայրենակից Մեծ. Մարգար Էֆէնտի Լեւոնեանի աջակցութեան, որոյ համար ներկայիւս իմ յատուկ շնորհակալութիւն իւրեան կը յայտնելով կը գովեմ զիւր ազնիւ զգացումն ։

Երկասիրութեանցս սոյն ճոխագոյն մասի մէջ դարձեալ մեր նպատակն եղած է նկարագրել, տեղագրել, աշխարհագրել, վիճակագրել, հնագրել, նորագրել, պատմագրել, աւանդագրել, հաստատել, կենագրել, կենսագրել, հետաքրքրել, սրբագրել, իմացընել, յուսադրել եւ վերջապէս ընթերցողի սրտէն ԲԱՆ ՄԸ խըլել եւ անոր մտքին մէջ ուրիշ ԲԱՆ ՄԸ դնել ։

Զգուշացեր եմք նոյնպէս բանաստեղծականն իրականին կարգն անցունելէն ։

Շատ գոհ եմ ըսել՝ որ իմ այս նոր ՄԵԹՈՏՆ կամ ՈՃԸ հանդերձ ենթակայովն հետզհետէ, գոնէ բարոյապէս, գնահատուելոյ եւ մանաւանդ օրինակելի ըլնելոյ բաղդին կը հանդիպի, որ ինձ համար թէ պատիւ կը համարիմ եւ թէ միանգամայն քաջալերութիւն. սակայն կը ցաւիմ որ անձնասիրութեան ախտէն բռնուած եւ ազնուապետական ([illegible]) գաղափարին պաշտողներէն ոմանք զհայրենեաց խօսքին մենա-

շնորհ համարելով պահ մը կամեցան ընդ ակամբ նայել իմ Ազգային Նուիրական Երկրին. իսկ ինձ գալով՝ առանց ուղղութիւնս փոխելոյ՝ կը կարեկցիմ այդպիսեաց վերայ, դոքա թէ լինին աշխարհաւոր եւ թէ կինին կրօնաւոր, որք շատ հեռու կը գտնուին մեծ հոգի ունենալէ, եւ արդէն 'ի մեզ պտղատու ծառն ե՞րբ քար չէ ընդունած թէ՛ ուղղակի եւ թէ՛ անուղղակի. ինչ որ է, կը թողում ժամանակի լուսաւորութեան, որ յայտնէ ամեն բան եւ ճանչցնէ հոգիներն իրենց որոշ գոյներովն եւ նպատակներովն։

Ներկայիւս խմբագրին շնորհակալութիւն կը յայտնեմ այն գրագիտաց եւ պատկառելի անձանց, որք թէ՛ բանիւ եւ թէ՛ գրով զիս քաջալերեցին սերտիւ համակրելով ՏԵՂԱԳՐՈՒԹԵԱՆՑՍ Ա. Մասին, առ այս վստահ եմ որ դոքա երկասիրութեանս այս Բ. Մասին մէջ շատ աւելի նիւթեր եւ կանոնաւորութիւն պիտի գտնեն իւրեանց համակրանքն կրկնապատկելոյ։

Նոյնպէս ջերմագին շնորհակալութիւնս կը յայտնեմ «Հայրենիք» լրագրոյ խմբագրութեան, որ քաջ գիտէ անձնանուէր հոգիներ քաջալերել միշտ եւ անկողմնակալ լինիլ յամենայնի։

Ի վերջոյ կը յուսամ թէ Տեղագրութեանցս վերջին Գ. Մասն մի բարերար հոգւոյ կը հանդիպի, եւ թէպէտեւ հակառակ պարագայի մէջ դարձեալ մամլոյ յանձնել մտադիր եմ, սակայն ոչ ուրախ տպաւորութեան մը տակ։

Մ. Կ. Մ.



Երկասիրութեանցս Ա. Մասի վերաբերութեամբ ընդունած հետեւեալ նամակներն, փոխադարձ գոհունակութեամբ, Երկիս սկիզբը կարգաւ կը շարեմ, ոչ թէ ինձ համար ի պատիւ, որմէ կը հրաժարիմ, այլ իբրեւ զարդ են անզարդ վաստակոց։

Ա.

Վենետիկ Ս. Ղազար 22/4 Նոյ. 1884

Առ . . . Մանուկ Կ. Միրախորեան

. . . Պարոն

Ընդունեցայ եւ ծայրէ 'ի ծայր կարդացի ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆ ուղեւորութեանդ Ա. Մասն, հաւասար հաճութեամբ՝ Հայրենասէր զգացմամբ գրելուդ եւ խըրկելուդ համար. վասն որոյ եւ շնորհակալ եմ։ Յիրաւի այդ կողմերուն (Վասպուրականի) վրայօք կան ուրիշ գրողք ալ, սկսեալ քու Գերապատիւ վարպետէդ՝ Սրբազան Հայրիկէն (յԱրծուին Վասպուրականի), այլ դարձեալ կան եւ մնան շատ հունձք։ Փափաքելի էր ինձ, որ աւելի շատ յայտնուած ըլլային Արձանագրութիւնք՝ թէ եկեղեցեաց եւ թէ գերեզմանաց, եւ երբեմն նաեւ եկեղեցեաց եւ վանորէից մէջ գտնուած Ձեռագրաց Թուականքն եւ պատմական յիշատակարանք. թերեւս երկրորդ մասն, որպէս եւ խոստանաս ճոխագոյն ըլլայ, եւ է ժամանակին՝ նոյին եւ առաւել եւս հաճութեամբ ընդունիմ եւ մնամ յաջողութեանդ փափաքանօք եւ խրախուսանօք։

Հ. ՂԵՒՈՆԴ Մ. ԱԼԻՇԱՆԵԱՆ

Թ.

. . . Մանուէլ Կ. Միրախորեան
'ի Կ. Պօլիս

. . . Միրախորեան

Ընդունեցինք պատուասիրական նամակդ եւ գովանի երկասիրութիւնդ, զոր հաճած էիք նուէր խըրկել մեզ, ուստի եւ յատկապէս շնորհակալութիւն կը մատուցանեմ սիրելութեանդ ։

Ես համոզուած եմ, որ մեր ազգի ամենամեծ թերութիւններէն մին է իւր անհայրենագիտութիւնն, հետեւապէս, ով որ թէ բանիւ եւ թէ գրով Հայրենագիտութիւն կուսուցանէ ազգին՝ նա մեծ գործ կը գործէ ։ Այս տեսակիտով, ահա սիրելի Միրախորեան, մեծ արժէք ունի անշուշտ Ձեր ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆ ՈՒՂԵԻՈՐՈՒԹԻՒՆ 'Ի ՀԱՅԱՍՏԱՆԱԿ ԳԱՒԱՌՍ ։

Կը մաղթեմ ուրեմն որ յարատեւէք Ձեր այդ շահաւոր եւ ամենակարեւոր ձեռնարկութեան մէջ, որոյ նպատակն է Ազգին եւ Տէրութեան անեղծօրէն ծառայել ։

Կը մատուցանեմ հայրական օրհնութեանս հետ յարգական ողջոյնս մնալով միշտ բարեացակամ ։

1884 Դեկտ. 9 — ՄԵԼՔ. ԵՊՍ. ՄՈՒՐԱՏԵԱՆ
'ի Զմիւռնիա

Գ.

Առ . . . Մանուէլ . . . Կ. Միրախորեան

. . . Բարեկամ՛մ.

Հայաբնակ գլխաւոր գաւառաց ընդհանուր ՆԿԱ-

ԲԱԳԻՐՆ եւ ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՆ, որոյ Ա. Մասն մի մասննի մէջ ամփոփելով 'ի լոյս ընծայած էք, կարդացի ։

Ձեր ուղեւորութեան նկարագիրն որքան պարզ այնքան հմտալից էր, Ձեր ՈՃՆ դիւրըմբռնելի եղանակաւ կը ներկայանայր ընթերցողին ։ Տեղագրութեան մէջ գրագէտն ունէր իրեն կարեւոր մասն, բանասէրըն կրնար գտնել իրեն յատուկ նիւթերն, երբ Հայրենեաց գաւառաց վերայ քերթել կամէր . աշխարհաց թէ' տեղագրական, թէ' աշխարհագրական տեսակէտով, ունէր իրեն օգտակար ընթերցուածն ։

Այս տեսութեամբ եւ համոզմամբ սուղ իւրեն կասեմ, Աղնիւ բարեկամ, թէ Ձեր Երկասիրութիւնն օգտաշատ եւ կարեւոր մի գործ է, ոչ միայն գրագէտին եւ աշակերտին այլ եւ Հայ ժողովրդեան համար, որ կը ցաւիմ խոստովանիլ թէ Հայրենեաց գաւառաց վիճակին անգիտակ է ամենեւին ։

Ես ուրախ եմ որ Ձեր ուղեւորութեանց ժամերն՝ ոչ իբրեւ հեշտասէր՝ այլ իբր զգայուն եւ հետաքրքիր ուղեւոր, այս օրինակ արդիւնալից ծառայութեամբ յօգուտ 'ի կիր արկածէք, ծառայութիւն՝ որ իրաւամբ գնահատանաց արժանի է ։

Իցի՛ւ թէ ամեն գրագէտ ուղեւոր Ձեր կեանքին հետեւէին ։

Ձեր Տեղագրութիւնն մի նոր եւ օրինակելի գործ լինելն զգալով, փափաքող եմ յոյժ, նորա Բ. եւ վերջի Գ. մասերն եւս 'ի լոյս ընծայեալ տեսնել . իմ փափաքին ընդ փոյթ սլիտ կարենամ համնիլ անշուշտ, շնորհիւ ազնիւ ընթերցողաց քաջալերութեան ։

16 Դեկ. 1884 — Յաջողութիւն կը բարեմաղթէ Ձեզ

Գատը-քէօյ — ՅԱՐՈՒԹԻՒՆ Ս. ԴԻՄԱՔՍԵԱՆ

Գ.

Առ․ . . . Մանուէլ Կ. Միրախորեան

. . . *Հայրենակիցդ իմ*

*Ամենամեծ հաճոյքով ընթերցայ Ազգ. Տեղագրութեանցդ Ա. Մասն, յորմէ մէկ օրինակ ինձ խրկելու պատիւն ըրած էիք. ինչ որ սիրտս զգաց Ձեր այդ գրքէն կամ լաւ եւս է ըսել այդ սխրալի եւ միանգամայն զուարճալի պարտիզէն, լեզուիս եւ գրչիս զօրութենէն վեր է բացատրել Ձեզ զայն։*

*Դուք ամէն տեսակ վտանգներ եւ նիւթական զոհողութիւնք շատ սիրով յանձն առած՝ անձամբ մանգալով՝ Հայաբնակ գաւառաց Սարերէն եւ Ձորերէն, Հըներէն եւ Նորերէն ժողոված էք բազմատեսակ ծաղիկներ, զորս մատուըներովդ խնամօք փնջած՝ 'ի Պոլիս կը բերէք ու անձնանուիրաբար կը դնէք Հայ բանասիրաց առջեւ, Հայ հասարակութեան առջեւ եւ աւելի ՀԱՅ ուսանողաց առջեւ, ուրեմն բազմաշխատ մատիկներդ ծլին ու ծաղկի եւ դու մնաս միշտ այդպէս կորովալից եւ կանաչ Արեւ։*

*Երանի՜ թէ ազնիւ Միրախորեանիդ նմանները բազմաթիւ լինէին 'ի մեզ, որպէս զի կրթական տեսակէտով մեր ժողովրդեան հոգի, կենդանութիւն եւ գործունէութիւն ներշնչէին 'ի փառս Ազգին եւ 'ի պարծանս Օսմանեան Մեծազօր գահուն, ում հաւատարիմ եղած եմք ցարդ եւ պիտի մնամք միշտ։*

*Ազնիւ բարեկամս, Ձեր նամակն կարդալով իւր վերջի պարբերութենէն մեծ ցաւ զգացի, երբ կը գըրէք թէ « Տխուր տպաւորութեան մը տակ մուրհակ ստորագրելով Ազգային երկասիրութիւնքս կը հրատարակեմ ու կը հաւատամ չսխալիլ ». ուրախ եմ որ անմիջապէս կը յաւելուք նաեւ թէ « Ինչ որ ալ լինի,*

յուսահատութիւն բառն իմ անհատական բառարանէս ջնջուած է »։ Լի եմ յուսով որ դուք պիտի գտնէք Ազգէն այն քաջալերութիւնն, զոր կատարեալ իրաւամբ կակընկալէք Ձեր ԸՆՏԻՐ եւ ՆՈՐ երկոց առթիւն, յորոց մեծագոյն մասն, որպէս կը լսեմ, տակաւին 'ի լոյս չէ ընծայուած եւ կը մնայ 'ի մթան։

Ձեմ մոռնար նոյնպէս գովել Ձեր անչահասէր ընտրութիւնն, որով մեզ ամենուս սիրելի Ամենապատիւ Խրիմեան Հայրիկի անուան նուիրած էք. արդարեւ արժանաւոր գործ մ'արժանաւոր անուան մը հանդիպած է, ի՜նչ գեղեցիկ զուգադիպութիւն։

Տէր, 28 տարի է որ վանէն՝ իմ ցանկալի Հայրենիքէն հեռացած եմ եւ չատ կարօտ կը քաշեմ իւր տեսուն, դուք կը խոստանայք նորա պատկերն ալ, 'ի մէջ այլոց, 'ի տես բերել Ձեր Տեղագրութեանց Բ. Մասին մէջ, որմէ իրապէս կարող եմ գէթ կիսով չափ կարօտս առնուլ, 'ի չնորհս Ձեր անխոնջ աշխատութեան, յիմ այս նժդեհութեան։

Ուստի նուիրական պարտք մը կ'զգամ խոնարհաբար յայտնել Ձեր ազնուութեան թէ այդ Բ. Մասի տպագրութեան համար որչափ ծախքի պէտք որ ունիք պատրաստ եմ, 'ի փոքրիկ քաջալերութիւն, Ձեր տրամադրութեան տակ դնել առանց տոկոսի եւ առանց մուրհակի, եւ վերադարձնելու մասին ալ ահա իմ պայմանս. «Երբ որ կարող էք, յայնժամ միայն վճարեցէք», եւ աոոր տրամաբանական եզրակացութիւնն ընդունելովս հանդերձ, կը խնդրեմ որ անյապաղ մամլոյ տակէն հանելու աշխատիք այդ Բ. Մասն, որում անչուչտ պիտի յաջորդէ վերջի Գ. Մասն, զորըս մեր Հայ հասարակութեան հետ ես եւս կրկնակի ախորժանօք պիտի ընթեռնում եւ իբրեւ մատենադարանի եւ սրտի ԶԱՐԴ, խնամով կը պահպանեմ կուրծ-

քիս վերայ, որպէս քաջ կը յանձնարարէ եւ կը գրէ աղնիւ Գրասէր Աստմ։

Մնամ Ձեր յաջողութեան բարեմաղթող
եւ հայրենակից

ՄԱՐԳԱՐ ԼԵՒՈՆԵԱՆ

1885 Յունվար 15
ի Կ. Պօլիս

Չ.

Առ... Մանուէլ Կ... Միրախորեան

... Բարեկամ

Պատմութիւնը անցելոյն կեանքն, ներկային ծընողքն եւ ապագային դայեակն է, անսրբագրելի դաստիարակ մը, յորում սերնդի մը արժանաւոր յաջորդն կուսանի իւր ազգային ոգին, իւր նախնեաց սկզբունքըն, մեծութիւնն, վեհանձնութիւնն, բարդաւաճանքըն ու փառք, եւ բնականաբար մօք կը յարի եւ սրտիւ կ'զգածուի առ այն, եւ այն կը լինի աւազան սրբագործութեան, ուր կը մկրտի միայն այն որդին, որ ունի բերել զհարազատ նմանութիւն հօրն, եւ այնու կանուանակոչի ճշմարիտ որդի, ճշմարիտ մարդը, եւ ճշմարիտ ազգ։ Այս է աղբիւր ազգաց, մեծութեան եւ փառաց եւ հետեւաբար պատմութիւնն կենաց մի յարակաց բոլորն է, որ անձդաբար ոգի կը ներշնչէ իւր մասին եւ մի անմահ լեզու է, որ անդադարապէս կը խօսի հանդերձելոյն հետ՝ հրահանգելով զանի 'ի բարին եւ յօգտակարն. ուրեմն քանի մեծ է այն մարդն, որ մոռացութեան պատնիչներ քանդելով՝ աւերակաց մէջէն, երկրի ծածկոյթէն, գիտութեան խորշերէն եւ աւանդութեանց բաբելոնէն պատ-

մական նշխարքներ կը կորզէ, կը սրբէ եւ ի լոյս ածելով՝ կը կենդանագործէ զանի. եւ կը նուիրէ նոր աշխարհին, նոր սերնդին։ Սիրելի բարեկամ, դուք ՈՒՂԵԻՈՐՈՒԹԻՒՆ մի ըրած էք 'ի Հայաբնակ գաւառս խուզարկեր էք . . . հնութիւններն ու աւանդութիւններն, վարք՝ բարք՝ ու սովորոյթն, դիրքն՝ ու տեսարանն, ժողովուրդն եւ կացութիւնն, չէնն եւ . . ., տնակն եւ խրճիթ, միով բանիւ անցեալն եւ ներկայն առաւել քան զխափայէլ կենդանի գունով պատկերացուցած էիք զայն Ձեր հայրենասէր ընթերցողաց. պատկե՛ր մը, որ արդարեւ պատմութեան մի կարեւոր մասն կը կազմէ, եւ նորա պարապ խորշերէն մին կը լնու. — Գո՛րծ մեծի քաջալերութեան եւ երախտագիտութեան արժանի։

Տէ՛ր, զայն ուշի ուշով ընթերցայ, եւ մտախոհ յափշտակեցայ այն ըղձալի տեսարանին առջեւ . . . եւ այսպէս յաչս իմ ցոլացաւ Ձեր լուսաւոր գրչի մի շողշողիւն, եւ շլացայ, եւ յունկն իմ եհաս ձեր դաշնակաւոր ձայնն, եւ զմայլեցայ. վասն զի դուք այն տեղերէն անցեր ու եկեր էք, ուստի ժամէ 'ի ժամ կանցնի կարօտակէզ սիրտս, եւ ուր միտքս յափշտակեալ կը հոլաթեւէ անդադար։ Միտք եւ սիրտ նոյն իսկ կեանքն է մարդոյ, ուրեմն քո գիչ զիմ կեանքս կը խօսի՝ ուրեմն իմ կեանք նուիրեալ է քում գրչի, որ սիրոյս հայրենիքէն կուգայ՝ ընծայ բերելով . . . պատկեր մը . . .։

Սիրեցի յոյժ, եւ զքեզ առաւել սիրեցի, որ պատմական կենսատու ջահով ողջունեցիր զմեզ, այլ աւա՜ղ տխրեցայ եւ յոյժ, թէ չ'կայ քաջակորով ձեռքեր, որ ուղեւորիդ քրտանց աղի կայլակներն սրբէ խոնջեալ ճակտէդ եւ քեզ զօրութիւն ներշնչէ ՈՒՂԵԻՈՐՈՒԹԵԱՆԴ երկրորդ եւ երրորդ հատորիկն եւս 'ի լոյս ածել, որ գոնէ այն լինի 'ի վարձատրութիւն քո

*երկար ժամանակեայ տաժանելի երկանցդ ու ճգանց , զի վարձատրելն նպատակին հասնելն է ։*

*Ընդունէ , ազնիւ բարեկամ, իմ առ Ձեզ զեղուն շը-նորհակալեացս եւ խորին համակրանացս այս հաւաստին , զոր դժբաղդաբար առանց* ՆԻՒԹԱԿԱՆԻ *Ձեզ նը-ուիրելով՝ եմ , եւ մնամ փափաքող անընդհատ աշխատասիրութեանդ անձնանուէր բարեկացակամ ։*

Կ. Պօլիս
13 փետրվ. 85

ՍԻՄՕՆ Հ. Մ. ՖԷԼԷԿԵԱՆ



# ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆ
# ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ
## Ի ՀԱՅԱԲՆԱԿ ԳԱՒԱՌՍ
## ԱՐԵՒԵԼԵԱՆ ՏԱՃԿԱՍՏԱՆԻ

## ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ
ՍԱՐԷՆ ԵՒ ՁՈՐԷՆ, ՀՆԷՆ ԵՒ ՆՈՐԷՆ

*ՊԻՏԱՆԻ ԳԻՏՆՈՑ*

## ԳԼՈՒԽ Ա.

ԵՐՈՒԱՆԴՈՒՆԻՔ (ՀԱՅՈՑ ՁՈՐ)

*ԻՄ ՎԵՐՋԻ ՀՐԱԺԵՇՏ*

*Տեղագրութեանցս Առաջնոյ վերջի մասովըն գաւառիս ՆԿԱՐԱԳԻՐՆ աւարտած լինելով՝ այժմ սոյն երկրորդի սկիզբը մեր հրաժեշտ իրեն տալով պէտք է մեկնիլ յիւր Արևելակողմն, հետզհետէ ճանապարհնիս շեղելով 'ի Հարաւ և ուղղինիս բաւական յառաջ տանելէն ետքը դառնալ կրկին յԱրևել 'ի Խօշապ (Մահմուտիէ), որ 'ի հնումն Անձրևացեաց և Մարդաստան գաւառի մի մասը կը կազմէր և ներկայիս մէջ բաժնուած է երկու գաւառակներու, յորոց Առաջին կ'անուանի «Վերին Խօշապ» և երկրորդն «Ներքին Խօշապ», որք 'ի միասին առնելով շրջապատեալ են Արևելքէն Աղբակ, Արևմուտէն Վան-Տոսպ,*

Հարաւէն մասամբ մ'Երուանդունիք և Հիւսիսէն Առբերանի գաւառներէն :

Խօշապ գաւառի կլիման բարեխառն է, ջուրն լաւ, հողերն ընդհանրապէս արգաւանդ, հանդերձ ընդարձակ մարգագետիններով և արօտատեղիներով : Ունի զանազան հասակաւ լերինք, յորս նշանակելի են Զուխ լերինք յԱրեւելակողմն, Սեաւ լերինք 'ի Հարաւ, Պաշ-պաշը յԱրևելահիւսիս. նոյնպէս կան ընդարձակ լեռնահովիտներ և ձորեր, որոց մէջ պակաս չեն վայրի այլ և այլ կենդանիք և թռչունք :

Գաւառիս, (որոյ անուան վերաբերմամբ իւր համանուն քաղաքի մասին մէջ կը խօսիմ) բնակիչք անխտրապէս աշխատասէր և գործունեայ են : Ամառ ատեն կզբաղին երկրագործութեամբ և խաշնարածութեամբ. իսկ ձմեռն զանազան ձեռագործներով, յորս նշանաւոր են նախշուն (գոյնզգոյն) շալեր ու շալվարներ և ընտիր գորգեր, զորս արանցմէ աւելի իգական սեռն կը պատրաստէ, որ կը մրցի գործունէութեամբ արական սեռին հետ, որում նման ուժեղ և զօրաւոր կազմութեան տէր է :

Խօշապ գաւառն (երկու մասն 'ի միասին առած) 80 գիւղերէ կը բաղկանայ, որպէս անցեալ տարի հաշիւ եղած է, որոց մէջ 30,000 բնակիչ կը գտնուի, որոնցմէ 20,000 Հայ են, և մնացեալներն Քուրդ, Ասորի և Եզտի (արևապաշտ) : Սոյն վերջի երեք չհամազգի տարրերն

կենաց այլ և այլ հանգամանքներով երբեմն ա-
ռաջնոյն կը նմանին :

Երկրիս ժողովուրդք ընդհանրապէս ինքնապաշտպանութեան ոգին տակաւին կորսնցուցած չեն և շատ խնամօք կը պահպանեն զայն, իբրև նախնեաց ժառանգ, 'ի կիր արկանելի Հայքենեաց հողին վերայ, սորա մէջ Քուրդերն առաջին տեղին կը գրաւեն բաղդատմամբ :

## ՄԵԿՆՈՒՄՆ Ի ՎԵՐԻՆ ԽՕՇԱՊ

Վերոյիշեալ ընդհանուր տեղեկութիւնք համառօտակի տալէս յետոյ, ըստ նախընթաց ուղղութեան մեկնիմք Հայոց Ձորոյ հարաւային Արևելածայրը գտնուող Հնդստան գիւղէն, (որը վրայ խօսուած է Ա. Մասի 161 երեսին մէջ) : Մեր սոյն ճանապարհի Արևելեան թևի վերայ տակաւին 1 ժամուան չափ ուղի չ'կտրած՝ կը հանդիպիմք Ա[illegible] (Ապուսէթ) կոչուած բըլրաձև լեռնակի մը, զոր տեղացիք «Բերդ» կ'անուանեն, որոյ ներքևն բաւական խորունկ և հետաքրքիր այր մը կայ, որ երբեմն կը ծառայէր աւազակաց, իբր որջատեղի, յորմէ անցանելով ճանապարհնիս չարունակեմք և 2 ժամէն կը հասնիմք Հ[illegible] ըսուած երկայն բլուրը, որ Հարաւէն ի Հիւսիս աղեղնաձև կը ձգուի լայնատարած դիրքով մը, կը կազմէ Խօշապայ և Անձրևացեաց գաւառական սահմանը : Սոյն տեղէն փոքր ինչ յառաջ երթալով կը մտնեմք

ի Վերին Խօշապ, ուր 3–4 ժամ շարունակելով կը համնիմք հետևեալ գիւղը։

ՀԻՒՐԹՈՒԿ. — Սոյն գիւղն ունի 45 տուն Հայ բնակիչ, նաև Ս. ԳԷՈՐԳ անուամբ բաւական ճաշակաւոր եկեղեցի մը, կառուցեալ անթուական. միայն թէ իւր հիմնաքարանց մէջ գտայ մի տապանաքար 480 տարուան՝ զոր ընթերցայ բաղում դժուարութեամբ և չունի բառ մ'անգամ յիշատակագիր։

Տեղւոյս Հայք ունին երկու խեղճ քահանայ, մի խեղճագոյն ծաղկոց և մի ամենախեղճ ուսուցիչ, որոյ [illegible] յանձնած են գիւղիս 25–30 մանուկներ, զուարթ և առողջ, որոց զարգացման վիճակն շատ ցաւալի է։ Դասատուն, որոյ բնաւորութիւնն զինք ինձ ազնիւ կոչել կը տայ, խիստ ուսումնասէր, աշխատող և տոկուն մի երիտասարդ է, որ մեծապէս օգտակար կըրնայ լինիլ գիւղիս նոր սերնդեան, սակայն ՀՄՈՒՏ հրահանգաց ներքև միայն։

Հիւրթուկի բնակիչք բաւական դպրոցասէր և ջերմեռանդ են առ կրօն և առ հայրենի աւանդութիւնն, զորմէ անցանողն բանիւ քարկոծուելոյ մինչ ենթակայ կրնայ համարուիլ։ Աշխատասէր ու գործունեայ են արանց հետ հաւասարապէս նաև կանայք և աղջկունք, որք ժիր ու աշխոյժ են։ Հիւրթուկցիք բնական պատճառներ ունին իւրեանց կեանքէն փոքր ինչ գոհ լինելոյ։

Գիւղիս հիւսիսակողմը «[illegible]» անուն մի տաղաւարիկ կայ, որ երբեմն «մեծաշէն եկեղեցի» եղած լինիլ կ'աւանդուի, հին ատեն 200–250 տուն բնակիչ ունեցած է (150 տարի առաջ), որոնց հարց տապանաքարինք անտեսանելի և սակաւաթիւ չեն, թէև չունենան իրենց տարիքըն ու կեանք յիշեցնող թիւեր և գրեր:

Հիւրթուկի մերձակայ շրջապատը կան ընտիր քարահանքեր, որոցմէ տեղացիք գեղեցիկ և մեծ քարեր կը հանեն, յորս կը գտնուին 1½ քառակուսի մեթր երեսով և 3–5 մատ թանձրութեամբ սալեր, զորս կոտրտելով բնակութեանց պարիսպներուն կը գործածեն: Գիւղիս Հիւսիսակողմը 3–4 ժամու հեռաւորութեամբ կայ Ձեռնակ կոչուած Քուրդ գիւղ մը, որոյ պարոնն երբեմն Հիւրթուկի բացարձակ տիրապետն եղած է: Ձեռնակայ մէջ կը գտնուի մի հին բերդ, որոյ մասին կ'աւանդեն թէ «Նեղ ժամանակի մէջ տեղւոյն բնակչաց ապաստանարանի տեղւոյ կը ծառայէ»:

Մեր Հիւրթուկի ազգայինքն լուսոյ և կենաց այնպէս պէտք ունին, որպէս կոյրն լուսատու աչաց և կաղն՝ ոտից:

Տեղէս 1½ ժամ հեռու դէպ ի յԱրևելահիւսիս կայ ԽԱՉ անուն գիւղ մի, ուր այժմ 30 տուն Քուրդ կը բնակի: Սոյն գիւղի ընդարձակ խոտաւէտ և ջրաւէտ դաշտերն ևս իւր «Խաչ» անուամբ կը կոչուին: Գիւղիս եկեղեցին տակա-

ւին կ'ապրի կխաւեր , իւր գերեզմանատան հետ ։

Հիւրթուկէն մեկնելով ուղևորիմք դէպ 'ի Հարաւ , գրեթէ 2 ժամէն կը հասնիմք 'ի փակակատուկ , որոյ վերայ յաջորդ գլխով խօսիմք ։

## Գլ. Բ.

### ՓԱԿԱԿԱՏՈՒԿ

Աստ կը բնակին 15 տուն բնակիչք , յորոց 2 տուն միայն Հայ են և մնացեալքն եկաւոր Քուրդ ։ Հայք ունին մի գեղեցիկ եկեղեցի , 210 տարուան , որոյ ճակտի յիշատակագրեանքն բոլորովին ոչնչացած են , չէնքն վանքի ձևով է , կառուցեալ հաստատուն և լերճ (խիստ ամուր) քարերէ , թէև անշուք և անզարդ . եկեղեցւոյն քահանայ և մանկան մը խրատատու ունին ոչ ։ Ամենամեծ ցաւ զգացի երբ չ'գտնուեցաւ իւրեանց մէջ մի Հայ , որ նոյն եկեղեցւոյն անունն գիտնալով ինձ հաղորդէր , և երբ կը հարցանէի թէ ինչ է ձեր եկեղեցւոյ անունն , «Աստուծոյ տուն է , ժամ է , պատարագ է» կը պատասխանէին ամենայն անտարբերութեամբ ։ Ահա այսպէս Ուղևորիս անծանօթ մնաց յիշեալ եկեղեցւոյ անունն , որ անցելոյն մէջ հեռաւորայ իսկ պէտք է ծանօթ եղած լինի , թող թէ մերձաւորաց , նայելով իւր հաստատուն դրից և կազմութեան , որ փառաւոր օրեր տեսած տարիներ կը յիշեցնէ զինքն ուշի ուշով դիտողաց ։

Երբ տեղւոյս ազգային հնութիւնք տեսա-

նելոյ համար կը շրջէի, գիտես թէ զիս պա-
պերու կորսնցուցած դոհարեղէններն գտնելոյ,
ինձ հետ ընկերացած էին տեղւոյ 2 տուն Հայ-
երէն 3 անձինք ։ Հարցումի զհարցումի բերաւ և
հարցուցի, երբ որ խօսքն եկաւ թէ ինչ կը ցա-
նէք ձեր յայս գեղեցիկ արտօրայս, մին 'ի նոցա-
նէ չտապելով պատասխանեց «Աստուծոյն փառք
զըմէն (ամէն) բաներ կը ցանեմք, մեր ցորենի
հաց երկնային լոս (լոյս) է և ձան (ձեան) պէս
սիւտակ (սպիտակ), մենք ցորեն կը քաղեմք նոր
ծնած լուսնի նման երկաթով»։ Ինձ թուեցաւ
որ սոյն ողորմելի, այլ աղնիւ անձն կարծելով թէ
հեռու աշխարհէ մ'եկած եմ և չունիմ գաղա-
փար այդ գործիքին (մանգաղ կամ գերանդի)
վերայ, որոյ ձևն ինքնաբերաբար նոր ծնած
լուսնոյ կը նմանցնէր բնութեան այս ճշմարիտ
զաւակն, որ յիրաւի չէր սխալած իւր տուած
գեղեցիկ և բնական օրինակին մէջ ։ Սոյն անձն
լսեց և երկրորդ խօսքն անոր բերնէն առած՝
յարեց «Իմ աչիչ (աչաց) լոս, ես քու տան մը-
չակ (ծառայ), արի՛ ես քէյ (քեզ) ուրիշ բան
էլ նշանց (մատնացոյց) տամ խեմ (նայիմ թէ)
քու սիրտ չ'ցաւիր, որ էտա կանտար (այդչափ)
շատ կը սիրես Հայու վրէն (վերայ) զրուցել».
այս խօսքն աւարտեց թէ չէ, ինձ առաջնորդեց
եկեղեցւոյ դուռը, որոյ ճակտի վերայ զետե-
ղուած էր քառակուսի ճերմակ քար մը, զոր
մատնացոյց ըրաւ ցոյց տալով քարի վրայի հին

պարոնկական գնտակի հարուածներու նշաններն , յիրաւի դիտեցի քառակուսի այդ ճերմակ քարըն և անցանք գիւղիս մի այլ կողմն ։

Փակակատուկի մէջ կը տեսնուի կիսակործան ուրիշ եկեղեցի մը , որ ց'արդ հողի տակն ծածկեալ էր և այժմ յայտնուած տեղւոյն բըլուրէն հող քակելոյ առթիւն . նախ կարծուեցաւ աղբանքներով լի , որ մասամբ մը կառավարութեան ուշադրութիւնը գրաւեց , երբ հատահիմն պարիսպներն երևեցան . սակայն յետոյ փորուելով տեսնուեցաւ հողով լի և ոչ տղրանօով ։

Գիւղիս հողային սահմաններն շատ ընդարձակ են , խոտաւէտ , ջրաւէտ և մանաւանդ օդաւէտ ։ Ամենայարմար տեղի մի է ձի և ոչխար պահելոյ համար ։

Տեղւոյս անուամբ չէն և իրօք անչէն եկեղեցիքն ու ընդարձակ գերեզմանաքարինքն թէպէտև արդէն ցոյց կը տային Տեղագիր-Ուղևորիս 'իրենց հին ժամանակի մէջ ունեցած բաղմահայութիւնը և անոնց ճոխ վիճակն . սակայն կրկին հետաքրքրութեամբ գտի նաև հետևեալ անթուական արձանագրութիւնն , զոր եկեղեցւոյ չինութեան ատենը խառն ի խուռն դրած են մի քարի վերայ ցուցնելոյ իւր նախնի փառաւոր դիրքը . ահա ինչ որ կրցայ բաղում որոճմամբ ընթեռնուլ « Վարդավառի կիրակի Խ. Ջըրկալներ (արտ ջրող) բախերնին ուսի վրայ դրած են , կուգան եկեղեցւոյ դուռը և կը մտնեն ժամ 'ի Պատարագ » ։

Գիւղիս նախնի ժամանակաց մէջ ունեցած բազմահայութիւնը զարմանալի է նաև հետևեալ աւանդութեամբ, զոր մի բաւական տարեւոր ծերունէ լսեցի և աստ կը նշանակեմ բառ առ բառ. « Գիւղիս շատ Հայ ծըւըրէ ժամանակն ճոչ խէ մ' ( մեծ մարդ, հարուստ մարդ ) երբ խաչօխնայ կանի (կընէ) իւր մեռած պապու խուդույն (հօգւոյն), որ դժոխքէն ազատի, այնչափ եղխիր (բազմութիւն) Հայեր եկած են ճաշ ուտելու որ էտա (այդ) ճաշի համար 4 չափ աղ խուրջեր են, էլ մէկէլ (ալ միւս) ուտելիքներ դուն սայմէշ արա'»:

## ԳԼ. Գ.

### ՆՈՅԱՑ ՏԱՊԱՆ Ի ՓԱԿԱԿԱՏՈՒԿ

Նախորդ գլխոյ մէջ յիշած Փակակատուկ գիւղի հիւրն եմք տակաւին: Տեղէս դեռ չմեկնած՝ պատմեմ սոյն վերտառութեան ենթակայն:

Երբ աստ ժամանեցանք, գիւղիս մէջ փոքրիկ հանգիստ մ'առնլոյ իջանք Ռէս (գիւղապետ) Օհան (Յովհաննէս) անուամբ լայնակուրծք, որով լայնասիրտ և միջահասակ, թուխ աչքերով ու մեծ դէմքով մարդոյն նահապետական տունը, զոր ես ՆՈՅԱՑ ՏԱՊԱՆ կ'անուանեմ, որ աւելի ճիշդ կը լինի իւր նշանակութիւնն, վասն զի աչօքս տեսի և ձեռօքս շօշափեցի թէ արժանի է այդ անուան զմեզ հիւրասիրող Օհան աղայի տունն, որոյ կենաց և դրութեան վերայ կա-

տարեալ գաղափար մը կրնայ ունենալ ուշիմ ընթերցողն, որ պարտի գրածէս աւելին հասկնալ, ըստ որում ջանացի որչափ կարելի է համառօտիւ գրել ըսելիքս և գրոշմել միտքս։

Մտնեմք մի ընդարձակ տունը, որ 6 սեան վերայ շինուած է, որոյ ներքին շրջապատն կային 7–8 ընդարձակ սենեակներ, որոց դռներն ներսէն էին բացուած այդ մեծ տան մէջ։

Ամեն. Խրիմեան Հայրիկն, որ տեղւոյս Նոյայ Տապանին յատուկ այցելութեան եկած էր, առաջնորդուեցաւ այդ դարաւոր շէնքի տակը, որոյ կրկին դարաւոր միջնասեան առջև փռած (պարզած) էին մի պարզ թաղիք, որ գտնուածներէն ամենալաւն էր, որոյ վերայ նստաւ ԵՐԿՐԻ ՍԻՐԵԼԻՆ 'ի հանդիստ և կռնակն հոգնութենէն տուաւ մեծ սեանն, և ինքն կ'երևէր մտահոգ՝ ընկղմեալ ո՛ դիտէ ինչ տեսակ խորհուրդներու ովկիանին մէջ։

Այս պահուս ինձ կը մնայր աւելի դիտել և իմաստասիրել երևոյթներն և երերը։

Այդ քառակուսի և ընդարձակ հացկերութի ու կերուխումի տան մի անկիւնը 6–7 մանկիկներու գիւղական որորոցներ կային, յորս անուշ անուշ քուն կը քաշէին նոյն գերդաստանի ընտանեաց նորածիններն, աղջիկ և մանչ կլորիկ մանկիկներն, յորոց անհանգիստները փոքր ինչ խելահաս այլ աղջիկներն կ'որորէին չարունակ։

Տան մի այլ անկիւնը հաւկթատու հաւերն

իւրեանց ճուտերով (ձագ) ման գալով կը կըտկտային (ձայն կը հանէին) սոտ ու անդ ցրուեալ հատիկներ ժողովելոյ, մի քանիք ևս մի այլ կողմը կողովներու ներքև բանտարկուած՝ յարդի վերայ թուխս էին նստած (կօօշկա) լռիկ և մնջիկ, քիչ օրէն նազելաթև ՄԱՅՐ լինելոյ, թերեւս այնչափ թիւ ձագերու, որչափ որ իւր թիւերն կարող էին հաւկիթներ ծրարելով տաքցընել, միւս կողմէն տան մարդիկ ու տուարներն մուտ և ել կ'առնէին: Միւներէն միոյն առջև տեսի նաև 3 ճանապարհորդներ, որք անկշտօրէն կը ճաշէին ճամբայ ելնելոյ համար և որք չէին տանս տիրոջ Ազգէն և արիւնէն:

Այս տանն, որպէս վերև յիշեցի, Սրբազան Հայրիկն տան Մայր-սեան կռնակն տուած՝ ոգևորեալ զգացմամբ և յուզեալ սրտիւ կը դիտէր սոյն նոյայ նոր ՏԱՊԱՆՆ: Նոյ կամ տանուտէրն (ծերունի պապիկն կամ մեծ հայր) և Նոյեմզար կամ տանտիկին (պառաւ մամիկն կամ մեծ մայր) իւրեանց հայրենասէր հիւրը անկըշտօրէն շրջապատած՝ կը պատմէին իւրեանց լեզուաւ իրենց հինաւուրց և նորաւուրց դիպուածները, իսկ միւսներն մեծ ու փոքր, մանչ և աղջիկ, հարս և փեսայն, խոտաղն ու մշակն ամենքն միահամուռ իրարանցման մէջ էին մեծ այցելուին արժանավայել պատիւ մ'ընելոյ նպատակաւ. իսկ ինձ գալով բարոյական ցաւ մը բռնուած խիստ կըտանջուէի և դէմքս ուրախ չէր,

կաթիլ մի ջուր խնդրեցի, աղնիւ մարդն, երբ ջուրը բերաւ, ինձմէ ներողութիւն կը խնդրէր, կրկին, և կրկին կամէր ասել որ «երանի՜ թէ օղի լինէր իմ տան մէջ, զոր քեզ տայի այժմ, որ փորիդ ցաւն անցանէր». այս խօսքերն արտասանած պահուն ամօթխածութեանէն շիկնած էր խեղճ մարդն, որ իբրև բնական բժիշկ, ինքնին կը գուշակէր փորի խիթ մը, և դարձեալ ինքնաբերաբար կը ճարէր նորա դարմանն, զոր իրմէն բնաւ չէի խնդրած, թող որ չլինէի գործածող ոգելից ըմպելեաց, այլ երբէք չունէի մի խիթ կամ փորի ցաւ նիւթապէս, իմ մեծ ցաւն էր, որպէս յիշեցի, բարոյապէս, վերաբերող մեղէն սրտի մը և ազգային սուրբ զգացմանց, զորս չկարէր ճանաչել այդ աղնիւ, այլ կարճամիտ գիւղացին, որոյ պապն ո՛ գիտէ ինչ նեղութիւնք ու ցաւեր տեսած էր պարսիկներէն և զորս չկարէր մոռանալ։

Վերջապէս եկաւ ժամն եւ հասաւ վայրկեանն ճաշի, մամիկն ազդարարեց հաց բերելոյ և բերին, մենք էինք 6 հոգի, սակայն բերուած հացին թիւն 46 էն պակաս չէր, ընդ որս նաև 6 ահագին ամաններով ձուաղեղ, որոյ վերայ արդար իւղն լճի նման կը ծփայր ու ալիք կը տայր եղերաց, բերին նոյն թիւ ամանով և մածուն՝ վրան գեղեցիկ սեր կապած, ամենքս թէև լինէինք երկայն ճանապարհէ եկած, որով և քաղցած, սակայն աւելի նայելով կշտացանք

քան թէ ճաշելով, զի շատ բնական մի բան է, որ առաատութիւնն զմարդն շուտով կը լիացնէ և իմ արդէն կեռիկ (ախորժակ) կապուած էր ։

Ի վերջոյ Ամեն. Սրբազան Հայրիկն յոտըն-կայս օրհնեց այս գաւառի սոյն Նահապետական գերդաստանն, տունքն ու տեղիքը, և ապա ոգևորեալ զգացումներու ծանրութեան տակը՝ վերջի հրաժեշտնիս տուինք մեր կենդանի Նոյայ և իւր Նոյեմզարին ու մեկնեցանք իւրեանց ՏԱ-ՊԱՆԷՆ, որ նստած էր աստ երկրի վերայ 'ի Փակակատուկ ջրհեղեղներէ ազատուած, և ոչ թէ լերան վերայ ի Մասիս կղզիացած. այս մա-սին մեր Բարեխնամ կառավարութեան աղօթող գտայ զիրենք ։

*

* *

Մեր ուղին շարունակեցինք Արևելեան Հիւսիսային գծովն ու կտրելով ահագին դաշ-տեր օդաւէտ, խոտաւէտ և ջրաւէտ և 3 ժա-մէն հասանք հետևեալ տեղին ։

## ԳԼ. Դ.

### ՔՈՋԼ՝ ՊԱՏՄԱԿԱՆ ԳԻՒՂ

Այն գիւղն շինուած է քարոտ բլրոյ մ'ըն-դարձակ կողերուն վերայ, զիւր անունն առած է իր բնական վիճակէն. բնակութեանց թիւն է ընդ ամենն 45 տուն, յորմէ 40 տուն Հայ է և 5 տուն Քուրդ ։

Գիւղիս Հայք ունին Ս. ՍՏԵՓԱՆՆՈՍ անուն

հնաշէն մի եկեղեցի, տեսքովն ու դիրքովն ո-
ղորմելի և անճաշակ, ուր կայ մի ճարտար քա-
հանայ, իսկ դպրոց դժբաղդաբար ունին ոչ,
հակառակ իւրեանց ուսումնասիրութեան և բա-
ւական լաւ նիւթական կացութեան ։

Տեղւոյս ջուրն առատ է, և կը բղխէ իւր Հարաւային հարևան (մերձաւոր, դրացի) լերանց ստորոտներէն, յորոց միոյն գագաթան վերայ անծանօթ սրբոյ մը գերեզման կը գըտնուի, որ կը յարգուի երբեմն համազգի և չհամազգի հովիւներէն և գիւղացիներէն անխըտրաբէս. որք աստ կը հանդիպին ։

Գիւղիս տեսարանն բաւական լաւ է թէև ոչ ծառաստան ։ Բնակիչքն կորովէ և աշխուժէ չեն զուրկ, որպէս և ձիավարժութեան արհեստէն, ձևերնին առ հասարակ Քրդական են Հայկական անուան և Արամական սրտի տակ ։ Ինձ շատ զգալի եղաւ թէ աստ բարոյապէս գործելոյ համար մեծ ասպարէզ կայ, բայց ո՞ւր են կրթական գործի ուխտաւորքն կամ մեր զանգակաւոր գործիչներն ։

Սոքա ևս ինձ շատ բաներ յանձնարարեցին, մաքուր խղճով և անկեղծ զգացումներով, զորս իրենց կարգին, բացէն, այլ հրապարակաւ 'ի պատեհ ժամու, պիտի թարգմանեմ, ինչպէս նաև այլ գիւղացւոց նմանօրինակ ինձ ըրած Ազգ. յանձնարարութիւնքն, զորս չեմ մոռացած ։

Քուէյլայ կեդրոնը կը տեսնուի Խօշապայ հին

պարոններէն միոյն աւերակ բերդի յատակն, որոյ չէն եղած ժամանակն (70 տարի առաջ) մէջ բնակելով կը տիրապետէր սոյն գիւղին ։

« Քռէլ 150-200 տուն եղած է » ըստ ծերոց աւանդութեան, ասկէ 100 տարի առաջ », սոյն լակոնական աւանդութիւնն ստուգելոյ համար բաւական և շատ են տեղւոյս խումբ խումբ մեռելոց խաչաքարինքն, յորս կրցայ գտնել 480 տարուան որոշ ընթեռնելի մի տապանաքար, որ յոտին կանգնած էր, և մարմնոյ ղանգուածի ծանրութենէն գլուխն ծռած յԱրևմուտս ։

Գիւղացիք ծառ տնկելոյ կարևորութիւնը դեռ նոր զգացած են և իւրեանց տուներն այն աստիճան անխնայօրէն տնկուած՝ որ փոքրիկ մանկան մը ծիծաղ շարժելոյ երևոյթն ունին ։ Ահա կենդանի և գործնական վկայ իւրեանց տգիտութեան և մոլոր խեղճութեան, որոյ վերայ կը հրաւիրեմ արժանաւոր ուշքերն մերայնոց, որք կամին միտքեր լուսաւորել ։

Անցնիմք հետևեալ գիւղն .

ԱԿՐԱԿ . — Գիւղիս յԱրևմտահիւսիս, 1½ ժամ հեռաւոր կը գտնուի, որ այժմ տարաբընակ եղած է, ունի կիսակործան եկեղեցի մը, յանուն Աստուածածնայ երբեմն կառուցեալ և օծեալ, որոյ գերեզմանատան քարինքն տեղւոյ քրդական բնակութեանց՝ պարիսպներ և անոնց անասնոց մորանիք ( [illegible] ) կը կազմեն ։ Ծերունի մը 90 ամեայ, ուղևորիս կը պատմէր թէ

« Իմ հայրս յիշեալ Ակրակ գիւղն չէն տեսած էր, ԽԱՋ (որոյ վերայ խօսուեցաւ) անուն գիւղին հետ, իւրաքանչիւրն ունէր 70–80 տան չափ Հայանական ազգի տուներ, հանդերձ զոյգ զոյգ քահանայիւք և ըստ այնմ պարագայներովն » ։ Այն աւանդութիւնն ճշմարտութենէ չէ հեռու, երբ ուշադրութեամբ դիտուին նոյն աւերեալ սրբավայրերն ։

## ԳԼ. Ե.

### ԴԷՊ Ի ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԲՈՒԹԱՅ

Նախորդ գլխոյ մէջ յիշուած Քուէյլ գիւղէն ճամբայ ելնելով ուղղինիս դարձնեմք յԱրեւմուտ ու Գնամք 'ի Սուրբ Աստուածածին Բութայ ։

Բաւական յառաջ երթալով կը կտրեմք ընտիր արտօրայք և դաշտօրայք ։ Մեր ճանապարհի Արեւմտակողման վերայ կը գտնուին մի քանի աննշան լերինք, յորս անուանին է Պուչէնայ լեռ կոչուածն, ուր վայրի ոչխարներն բազմաթիւ են ամառ եղանակին ։ Այն ոչխարներն երբեմն կ'իջնեն լերան ստորոտը ջուր խմելոյ, մերձակայ տեղերը գտնուած աղային հանքերն բաւական լիզելէ զկնի, որպէս սովոր են ։

Որսորդներն իւրեանց դարանները կըլարեն այն աղային տեղեաց մէջ և շատ անգամ կը յաջողին յիշեալ վայրի ոչխարներ (կէյըկ) որսալ ։ Այս կողմերու Հայք այդ կենդանիք « վէրու ոչխար » կ'անուանեն ։ Որսորդներէն էն ճարպիկն Ուղեո-

բիս ուղեկից եղաւ և շատ հետաքրքիր տեղեկութիւնք հաղորդեց ինձ այդ սիրուն կենդանեաց վրայօք ։ «Նոյն վայրի ոչխարներն, բնաւ մարդն, միշտ զոյգ կը ծնանին և մենք զանոնք կարող կը լինիմք իրենց դառանց կաթ տուած ատեն միայն որսալ, վասն զի ոչխարն երբ զիւր ծիծն դառան բերանը դրած է, աւելի լաւ կը համարի զինքն որսորդի մահահոտ հրացանի գնտակին զոհ տալ, քան թէ իւր պտուկներն (մէմէ) իւր երկուորեակ դառնուկներու բերնէն հանել կամ քաշել՝ փախ տալոյ համար»։

ՊԱՀԱՆՑ. — Պաչխթայ ընդարձակ լերան յԱրեւելակողմն փոքր ինչ հեռու գիւղ մի է, որ ունի 16 տուն բնակիչ, յորմէ 2 տուն Հայկական և մնացեալքն Քրդական են ։

Արմենական գիւղիս, իբրեւ յետին մնացորդ, 2 տուն բնիկ Հայ տանց տարեւորն Ուղեւորիս հետեւեալ իմաստով պատմեց ըսելով թէ «Անկէ 50 տարի առաջ 45 տուն Հայ էինք այս տեղ, որոնք չկրնալով ինչ ինչ անբնական դժբաղդութեանց տոկալ, գնացին 'ի տար աշխարհ և կորսընցուցին իւրեանց նամս և նմուշն (անուն և հետք)»։ Միւս ընկերն աւելցուց «մենք չուր մկայ (մինչեւ հիմա) փախած էինք, թէ որ ՄԵՐ կակօյի (մեծ պապ) հանդստարան (գերեզման) էսա տեղ չէնէր. իշտէ կիրակմոէ կիրակմուտ (շաբաթէ շաբաթ) կերթամք խունկ կը

դնեմք [ինոր (անոր) պառկած խաչքարին վերայ և կը ծխեմք, երեմնիս կառնեմք ու փառք կը տամք մեր երկնաւոր Թագաւոր Ստեղծողին և կը դառնամք նորէն տուներնիս. տեսանք Աստուած [ինչ լոյս կանի, ախըր (արդէն) մեր չգիտութենէն (տգիտութենէն) բաներնիս պօչի (պարապ է)». առ այս իւրեան միսս բարով խօսքս չմոռցած՝ ես ելայ իմ ճանբան շարունակել։

## ՄԵԿՆՈՒՄՆ

### ՔԱՐԱՑԵԱԼ ՀՈՎԻԻ ԵԻ ՔԱՐԱՑԵԱԼ ՈՉԽԱՐ

Պաճանց գիւղէն մեկնելով ուղինիս այս դըրախտանման տեղերէն և Պաչեթայ լերանց կողերէն յառաջ տանելով պատահեցանք, գրեթէ մարդանման կերտած, մի բարձրահասակ քարի, որոյ շրջապատն կային ոչխարանման բաղմաթիւ քարինք փռուած աստ և անդ, ցիր ու ցան, որք կիսով թաղուած էին 'ի հող։

Տեղւոյս սոյն երեւոյթն բնականաբար Տեղագիր–Ուղեւորիս հետաքրքրութիւնն պէտք էր զարթուցանել. հետամուտ լինելով գտայ հետեւեալ աւանդութիւնն. «մի ճգնաւոր մարդակէ [ի Բուլթայ Ս. Աստուածին դնալու համար միստ կը հանդիպի և կը տեսնէ դհովիւն շրջապատեալ իւր ոչխարներէն, սեւազգեստ կրօնաւորն շատ քաղցած գոլով հովիւէն քիչ մը կաթ կուզէ հացի հետ ուտելու, ճգնաւորն որչափ որ սաստիկ քաղցած կը լինի, հովիւն ևս ընդհա-

կառակն այնչափ քարասիրտ կը դառնայ , որով կը պատասխանէ «կաթ չ'մնաց» , կրօնաւորն կրկին կը թախանձէ և հովիւն յայնժամ կը բարկանայ ըսելով «չիք» առ այս բան քաղցած վանականն կանխծանէ զհովիւն ասելով «չիք լինիս դու և քար կտրիս (դառնաս) ոչխարներուդ հետ» այս խօսքին վերայ հովիւն ընդ իւր ոչխարս կը քարանայ և այս պատճառաւ ց'արդ քարն կանուանեն քարացեալ հովիւ և ոչխարներն քարացեալ ոչխար այս կողմերու մեր Հայերն» :

Ահա այսպէս ուղինիս յառաջ տանելով 2½ ժամէն կը հասնիմք ի Բութ գիւղն և անոր վանքըն :

## ԳԼ. Զ.

### ԲՈՒԹԱՅ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԿՈՉՈՒԱԾ ՀՆԱՇԷՆ ՎԱՆՔՆ

Սոյն մենաստանն շինուած է մի քանի աննշան , այլ հետաքրքրութիւն զարթուցանող լերանց Հարաւային ստորոտը · վանուցս յԱրեւեհիւսիս շինական լեռներն են , 'ի Հիւսիսակողմն կապուտ ձոր , յԱրեւմտակողմն տանկանէզ լեռ և 'ի Հարաւային Արեւելակողմն սուրբ Սարգիս լեռ , որպէս իրենք կանուանեն : Սոյն վանուց , առանց յիշատակագրի մը , Թադէոս և Բարթուղիմէոս Առաքելոց օրով շինուած լինելն կաւանդուի : Մենք այժմ թողումք այդ աւանդութիւնն , և գրեմք զոր ինչ տեսած և չօշափած եմք անձամբ :

Սոյն վանքն հաստատուն , հաստահիմն և

ամրաշէն է իւր հիմերով ու պարիսպներով, ո-
րոց մէջ կը գտնուին գեղեցկայարմար պահա-
րաններ, յորս աննշան մաս մը քայքայեալ է վե-
րի կողմերէն, անխնամ մնալուն պատճառաւ:
Վանքս այժմ ամայացած է, շրջապատի սեն-
եակներն փլփլած, ոմանք կիսակործան, Թուա-
կանի կամ գրի համար շատ հետամուտ եղայ,
այլ չ'կրցայ գտնել բան մը, թէև կային ինչ ինչ
գրեր 10–12 հատ խառն 'ի խուռն, հազիւ գիր
ըլլալ կը յայտնուէր վանուց դրան վերի ճակտին
վերայ, որմէ, ներկայիս մէջ, զիւր անցեալէն
լոյս մ'առնելն ինձ համար եղաւ անկարելի, բաւ
կը համարիմ աստ դնել աւանդութիւն մը և զայն
ստուգող պարագայներն: Աւանդութիւնն կըսէ.
«Ժամանակին Եւնէր մը կարդացւոր եղած է
վանքիս մէջ», յիրաւի տապանաքարանց թիւն
բաւական շատ է, ամենքն ալ խաչով, ալ ոչ
Թուականով կամ գրով: Վանուցս Արեւելեան
շրջապատը 2 քարընկէց հեռու կը գտնուին գե-
րեզմանաքարինքն, որոնք կէս մէջքէն հողին
մէջ թաղուած՝ կը կենան ոտքի վերայ գլխակոր,
ինձ թուեցաւ թէ սոյն հինաւուրց տապանա-
քարերէն շատերն ծուռ տնկուած էին, վասն զի,
ըստ եկեղեցւոյ օրինաց, փոխանակ դէմքեր-
նին յԱրեւելս դառնալու, ոմանք ի Հիւսիս կը
նայէին և որոնք որ զանգուածով թեթև է-
ին, ընկերիս հետ ձեռք ձեռքի տուած շըտ-
կեցինք մեր զուարճութեան համար, որպէս ըը-

նական է սոյն օրինակ անձանց կամ ուղևորաց ։

Աստուածածին վանուցս մերձ է ԲՈՒԹ անուն իւր գիւղն և որոյ այդ անունն, որպէս կը տեսնուի, կցուած է վանուց անուան հետ ։

Բութ կը բաղկանայ այժմ 10 տուն բնակիչներէ, յորոց 1 տուն միայն Հայ է, որոյ անդամներէն մին մեզ ցոյց կը տայր մենաստանիս անցեալ նախանձելի և ճոխ փառաց անշքացեալ պատկերն ու կը խօսէին Ուղևորիս զանցեալ բազմահայութենէն տեղւոյս, զժամասացութենէն և զսաղմոսերգութենէն ամայացեալ Մենաստանիս, որոյ ընդարձակ հողերուն և պատուական ջրերուն տէրն և կառավարն եղած են արդի եկուոր բնակիչներն ։

Բութ գիւղիս մի Հայ տան մէջ կը բնակի մի այրի ու միանդամայն խեղճուկ կին, որ շաբաթ իրիկունները կը գայ և վանուցս կիրակամտի կանթեղն ձէթ լեցնելով կը վառէ և իւր աղօթքն ընելով 'ի տուն կը վերադառնայ. այս է ահա սոյն սրբազան տաճարի սրտի ՄԽԻԹԱՐԱՆՆ ։

*
* *

Աստուածածին վանուցս յԱրևմտակողմն 1 քարընկէց հեռու լերան ստորոտէն կը բղխէ ահագին քանակութեամբ անմահական ջուր մը, որ կը բանեցնէ 2 ջրաղացներ ։ Դարձեալ մի և նոյն լերան կողին վերայ քուրդ Խանավտալ պէկըն, երբեմն մի բերդ շինել տուած է, որոյ բեկորքն ց'արդ նշմարելի են. բերդն շինուած

կ՚երևի գլխաւորաբար գերեզմանատան քարերուն , որոց տէրերն արդէն անհետացած են ։

Տեղւոյս տեսարանն շատ գեղեցիկ է իր կենսատու օդովն և վերոյիշեալ անուշահամ ջրովն , որոյ քով ոչինչ կ՚արժէ Պօլսոյ հռչակաւոր Խայիշտաղինը ։

Բուլթայ և իւր ամայացեալ վանուցս վերաբերութեամբ ունիմ շատ թթու բաներ ըսելիք . բայց առ այժմ չ՚պիտի կրնամ ինքզինքս հակրցնել թէ բուն նպատակս է Երկրի տիրոջ ապագայի փառքն յաւելուլ, և կրնայ ծուռ մեկնուիլ իմ տուած Մեսրոպական ՍՈՒՐԲ ՏԲՈՒԵՐՆ, որք կը հայլին մեր Օսմանեան բարեխնամ կառավարութեան մեծ շահին , զոր սիրելոյ Նուխրական դասեր կը տամ իմ Նոր գրչովս և շատ անգամ խօսքերովս, որք կը բղխին վճիտ աղբիւրէ մը ։

## ԲՈՒԹԱՑ ՎԱՆՔԷՆ ՄԵԿՆՈՒՄՆ

Տեղէս ելնելով ճանապարհնիս ուղղեմք դէպ 'ի Հիւսիսային Արեւել ։ Այս գծին վրայ մեզ պատահեցաւ հետևեալ գիւղն .

ԽՐԿԱԽՑ . — Այս գիւղն 80 տարի առաջ 35 տուն Հայերէ բնակուած էր , որպէս խաչաքարինք և տեմնող ծերունիք կը պատմեն . այժմ 7–8 տուն Քուրդ կ՚ապրի՝ նախնի բնիկներու հողային և ջրային կալուածոց վրայ ։ Անկէ յետոյ հետզհետէ կը գան Չիավըրքանց և Իշխան կոչուած գիւղերն , որք նախապէս Հայկական , իսկ այժմ

Քրդական են դարձած գլխովին և ոտովին ։

Անհետացեալ բնիկներու յիշատակարանք անտեսանելի չեն ուղևորաց աչքին ։ Տեղւոյս այժմեան բնակաւորքն կը պահեն բազմաթիւ ոչխարք և ընտիր նժոյգներ, որոց կունկին վերայ կ'անցունեն իւրեանց կենաց մեծագոյն մասըն ։ Սոյն երեկոյ իջևանեցանք 'ի Կասր, որ Բութէն 5 ժամ հեռու է ։

## ԳԼ. Է.

### ԿԱՍՐ ԵՒ ԻՒՐ ԿԻՒԶԷԼ ՊԱՊԱՆ

Սոյն գիւղն ունի 18 տուն բնակիչ, յորմէ 10 Հայ է և մնացածն Քուրդ ։ Հայք ունին յանուն Ս. Ստեփաննոսի կառուցեալ մի եկեղեցի, 200 տարուան հնութեամբ, սակայն ցաւ է ինձ ասանօր ասել, որ ո՛չ դպրոց ունին մանկանց համար և ո՛չ իսկ քահանայ Աստուծոյ ՏԱՆ համար ։ Գիւղիս անցեալն բազմահայութեամբ լի եղած է, հարուստ և առատասեղան Արմենականք. եթէ տեղւոյս դերեզմանատանց բազմութեան համաձայն հաշիւ մը սահմանեմք, հարկ է գիւղիս ներկայ բնակչաց թուոյն աջակողմը գոնէ 2 զրօյ դնել, որ կընայ մի խիստ բնական զգացմունքի խնդիր հանել, զոր յուզելոյ չէ արդ ժամս, երբ 'ի նկատ առնուի Պարսկական հէն բռնութիւնն ։

*
* *

Կասրկայ Հարաւակողմն փոքր ինչ հեռու

կը տեսնուի ծառոց մէջ Կէչէլ ղալա կոչուած մի մատուռ, որ ջերմի դարմանատար սուրբ մը կը համարին գիւղացիք, և շատ անգամ անոր կը դիմեն ու լածխ նայելով նը Էօժչիւլէն ։

Տեղւոյս Հայքն մասնաւոր հմտութիւն ունին խաշնաբուծութեան և խաշնարածութեան արհեստին մէջ, շատ լաւ կը հասկնան ոչխարի բնաւորութիւնը, լեզուն ու մանաւանդ հիւանդութեան տեսակէն ։

Իւրեանց ոչխարներն տեսքով աւելի սիրուն, առողջ և պարարտ են քան այլ տեղեացն ։

Աստ մի ազատախօս և փորձառու ծերունի, խումբ մը գիւղացւոց մէջ բազմած՝ կը պատմէր Տեղագիր–Ուղևորիս՝ երկրի հին և նոր կէանքէն, որոց վերայ այժմ խօսիլն զանց կ՚ընեմք․ ուրեմն չուեմք տեղէս դէպ ՚ի Սալախանայ անուանեալ գիւղն, ուր տեսնել և լսել նոր բաներ ։

## ՄԵԿՆՈՒՄՆ

Կասր գիւղէն ճամբայ ելնելով Արևելեան Հիւսիսային ուղղութեամբ $^1/_2$ ժամէն կրնամք տեսնել Ալմալու ըսուած գիւղն, որ ճանապարհէն $^1/_4$ ժամ հեռու կը գտնուի․ գիւղս բոլորովին ամայացած է և իւր կանդուն ու չարքով կեցած տապանաքարինքն այնչափ բազմաթիւ են, որ յանդէտս ոչխարի նմանցնելով հարցուցի մեզ ընկերացող գիւղացիներէն երիցագունին թէ որ գիւղի հօտն է այն, հէք գիւղացին զարմա-

նալով ակնարկ մը նետեց երեսիս և պատասխան տուաւ թէ « աղանք ոչխար չեն , Հայ մեռելներու քարեր են » սոյն խօսքերն ողեւորեալ ձայնով մը արտասանելէն ետքը՝ խայթող զգացմամբ մը մատնացոյց ինձ ըրաւ անշէն ; այլ կանգուն կեցած մի եկեղեցի ըսելով թէ « տես աՀա գեղի ժամն էլ ( եկեղեցին ալ ) իր մէջ կերեւի և Աստուծոյն փառք [illegible] կը մընայ դեռ ։ Իմ Հայրս 93 տարեկան մեռաւ , էնիկ ( նա ) շատ օր կըսա ( պատմութիւն ) կ'անէր այդ գեղի վերայ , 60–70 տարի առաջ 140 տուն Հացի տէր ( Հարուստ , առատասեղան ) Հայ բընակիչ ունեցած է , էլ ապա , շատ էրկէն ( երկայն ) է աղոր պատմութիւն քեզ անել եւ գլխի ցաւ տալ սրտի ցաւի Հետ , էտա անխեղք Հայերն թողին , փախան դէս ու դէն ( աստ եւ անդ ) ցիր ու ցան կորան գնացին . մկա (Հիմա) անոնց անուն աշխարՀէս վերցուած է , Հիւ Հիւ ձէն ու ձիւ չկայ , եթէ անոնք չգէտ չէընէին Օսմանցու [illegible] տակէն չէին երթար կորեր ։

Ալմալու կոչուած սոյն աւերակ գիւղն ունի ընդարձակ արտօրայք և դաշտօրայք , զորս միաՀաղոյն կառավարութենէն գնած է Վանայ գըլխաւոր Թուրքերէն մին , ամենաչնչին գումարով մը (60 ոսկի) , ուր կցած է իր ազդեցութիւնը։

Այժմ բնականաբար ծախու առնողի տըրամադրութեան տակն գտնուած պէտք է լինի ։

Տեղւոյս փոքր ձորակներէն անցանելով հինչ-

պէս և ընդարձակ տաշտերէն, կը հասնիմք Զէյ-նիս անուանեալ գիւղն, որ (Նախորդէն 1½ ժամ հեռու է՝ Արեւելեան Հիւսիսակողման վերայ:

ԶԷՅՆԻՍ. — Աստ կը բնակին այժմ 10 տուն եկաւոր Քուրդ և եռատուն բնիկ Հայք, որք ունին Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ անուամբ մի հնաշէն ե-կեղեցի, որ գրեթէ ամայութեան վիճակի հասնե-լոյ չափ անշքացեալ է, հակառակ իւր գեղեցիկ դրից և 550 տարուան հաստատուն շինուածոյն: Ունին մի ծերուկ տիրացու, որ միտն ինկած ժամանակն կը դայ յեկեղեցին և անդ կաղօթէ թէ՛ քահանայի, թէ՛ տիրացուի և թէ՛ ժողովր-դեան փոխան միանգամայն:

Զէյնիս շինուած է լայն բլրոյ մը Հարաւային կողերուն վերայ և ունի գեղեցիկ տեսարանին հետ նաեւ ընտիր օդ, ջուր և խոտաշատ դաշ-տօրայք, որոնց վաղեմի Հայ տէրերն անհետա-ցած և թողած են յայտնի հետքերը:

Աստ մի փոքրիկ հանգիստ առնելոյ և մեր ցորեկուան ճաշն ընելոյ համար իջանք մի ըն-դարձակ սրահ, ուր ժողովեալ էին բաւական բազմութիւնք, յորոց մին էր իմ լեզուէն և իմ ազգութենէն, որ զիս հրաւիրեց յիւր տուն ինձ մատուցանել մի գաւաթ կԱթ 'ի պատիւ. փսեա-թի մը վերայ բազմեցանք, որ տան պատուաւոր գործն էր Բոնկոֆէն, նա շատ հետաքրքիր կը լի-նէր իմ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԵԱՆ խսկական նպատակին վերայ, զոր իւրեան հասկանալի լեզուաւ բա-

ցատրեցի թէ երկրի կեանքն անձամբ սերտելոյ համար միայն կը թափառիմ և մանաւանդ ամէն տեսակ վտանգ սիրով յանձն առած՝ եկած եմ 'ի մօտոյ ճանաչել Հայրենեացս Նոր սերդեան բարոյական վիճակը կրթական տեսակէտով, այսինքն տեսնել թէ Ձեր լաճեր (մանչ) գրել, կարդալ գիտե՞ն թէ ո՛չ ։ Ձիս հիւրասիրող մարդոյ մազերն տարեաց թիւերէն ձիւնի նման ճերմըկած էին, նման Սիմէօն ծերունւոյն, կը կըռուէր մահուան դէմն և չէր ուզեր մեռնիլ մինչեւ որ ԹՈՌԱՆ ՄԸ ԾՆՈՒՆԴ տեսնայր ։ Յիրաւի ինքն մարմնով զառամեալ, այլ սրտիւ և մտօք առոյգ ու հեռատես էր ։ Ես տեսի նորա վերայ հազուագիւտ ձիրքեր, զորս չատ սիրելուս, իբրեւ իւր թոռնիկն, քաղցր համբոյր մի տուի իւրեան ձեռաց, երբ իրմէն կը բաժնուէին ։ Ցաւ ինձ մեծ եղաւ, որ մի գիշեր իրեն հիւր չ'կըրցայ լինիլ հակառակ իւր քանիցս թախանձանացըն ։ Ըստ որում տեղէս նոյն օր մեկնիլ անհրաժեշտ հարկ մի էր ինձ համար, երբ ինկատ առնուէր ճանապարհաց անընական երկիւղներն և ուրիշ ինչ ինչ տխուր դէպքեր, որք կընային դիւրաւ գուշակուիլ մեր ընկերաց գոնէ վեհերոտ վիճակէն և անփորձութենէն ։

## ՄԵԿՆՈՒՄՆ

Մեկնեմք աստի ուրեմն դէպ 'ի յԱրեւել և չարունակեմք մեր ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ ։ Սոյն

ուղղութեան մէջ կարեցինք դարձեալ ընդարձակ և խոտաւէտ դաշտեր, անցանք մի քանի երկիւղալից ձորամէջերը, որոնցմէ ուղևորաց կրած ահարկու տպաւորութիւնն, եթէ ըսեմք բնական են, կը մեղանչեմք երկնից առաջ. վերջապէս անվնաս հասանք 'ի Սալախանայ գիւղն, որ Կասր գիւղէն 6 ժամ հեռու է:

## ԳԼ. Ը.

### ՍԱԼԱԽԱՆԱՑ՝ ՆՇԱՆԱՒՈՐ ԳԻՒՂ

Կը գտնուի գաւառիս (Վերին Խօշապ) Արեւելեան Հիւսիսակողմն և անոր կարեւորագոյն գիւղերէն առաջին կրնայ համարուիլ, իւր հողային ընդարձակութեամբ, որոյ տրամագիծն $1^1/_2$ ժամ կը տեւէ: Գիւղս ունի պատուական տեսարան, շինուած տափարակ երկրի վերայ լայնայատակ բլրալերանց հարաւային ստորոտը, գրեթէ ամեն կողմանէ դաշտերով շրջապատեալ է, օդն նմանապէս մաքուր և ջուրն բարեհամ, այլ ոչ առատ դժբաղդաբար:

Սալախանայ գիւղն Սովելոց խնամող Պատ. մասնաժողովն, յանուն Վարագայ վանուց, ծախու առած է կառավարութենէն և այժմ կը գտնուի Ամեն. Խրիմեան Սրբազան Հայրիկի տրամադրութեան ներքև, որ Անձրեւացեաց գաւառէն և ուրիշ սովեալ տեղերէն 35–40 տուն Հայ գաղթականներ բերել տալով բնակեցուցած է 'ի գիւղս, որ երբեմն Հայոց սեպհականութիւն ե-

ղած և Հայութենէն ամայացած էր ։

Ամեն. Խրիմեան Հայրիկի յատուկ խնամոց առարկայ եղած է սոյն գիւղն, զոր օր ըստ օրէ ժրաջան բնակչօք ծաղկեցնելոյ փոյթ կը տանի այժմ, որպէս զի այդ ընդարձակ հողերն անմշակ չ'մնան 'ի վնաս կառավարութեան ։ Աստ կը բնակին նաև մի քանի տուն Քուրդեր, որք շնորհիւ բարեխնամ կառավարութեան, այժմ մեղմ և հանդարտ են։ Տեղւոյս իւրաքանչիւր գաղթականաց, իւրեանց ընտանեկան թուոյն համաձայն, հողեր յանձնուած է 'ի մշակութիւն, յորմէ կըտան «զԿայսերն Կայսեր, և զԱստուծոյն Աստուծոյ» ։ Գիւղիս վերայ մի վարդապետ և մի աշխարհական տեսուչ կարգուած են. բացուած մի նոր դպրոց, որ կանոնաւոր շինուելոյ վերայ է և ուր պիտի մակաղուին ուսանելոյ սոյն խեղճ գաղթականաց բոկոտն մանուկներ կամ ծէթկեկ ձագեր, որոնց յատուկ դասատուք կարգուած են այժմէն և գործն կը շարունակի ։

Տեղւոյս Հայ մանուկներն երբ փոքր ինչ զարգանան և հասկնան աշխարհիս թուրքերէն, երախտագէտ պիտի լինին ոչ թէ միայն մեր Օգոստափառ Կայսեր, այլ և համայն Ազգին, որոյ շնորհիւ երբեմն նիւթական հաց գտնելով սեւ գերեզմանի դռնէն ետ դարձան և այժմ կընդունին նաև բարոյական կենաց հաց ։ Սոյն գիւղն, որպէս աւանդութենէ և մանաւանդ տեսանելի խաչաքարներէ կը յայտնուի, նախապէս բազմա-

հայ եղած է, որ Թէպէտև երբեմն ամայացաւ Հայութենէ, այսու ամենայնիւ մի գեղեցիկ, և քարուկիր փոքրիկ տաճար կեցաւ անփլաս, զոր բարեզարդելոյ պէտք եղած ջանքերն Խրիմեան Հայրիկ ի գործ դրած է և կը դնէ։

Գիւղիս մէջ երկու հատ գերեզմանատուներ կան, յորոց մին եկեղեցւոյ շրջապատը կը կաղմէ և միւսն 2 քարընկէց հեռու։ Հետաքրքիր եղայ Գտնելոյ համար Թէ ո՞ւր աղագաւ տեղւոյս հին մեռեալներն, իրարմէ զժտուածի պէս, անջատօրէն Թաղուած են։ Այս պահուս մի տարեւոր ծերունի տապանաքարներէն դարաւորին կռթնած «Տէր ողորմեա» մրմնջելով ոտքի ելնել կուզէր յիւր տնակն վերադառնալ, որ իւր կեցած տեղէն հազիւ 4–5 քարընկէց հեռու կը գտնըւէր, ինձ համար այս առիթէն օգուտ քաղել պէտք էր, և հարցուցի, նա (ծերուկ) իրեն եկած ու հասած աւանդութեան նայելով՝ հետեւեալ սրտաճմլիկ խօսքերն ըրաւ «Գիւղէս հեռու դուրս Թաղուածներն ժամանակի Պարսիկներէն գլխատուածներն են»։

Գիւղս իրեն մերձեկայ լճակ մի ունի, որով բաւական Թուով արտօրայք կոռոգուին․ լճակիս ջուրն մի քանի մասնաւոր առուակներէ կը գոյանայ։ Ամեն․ Խրիմեան Հայրիկ, վերջի ատենները սոյն լճակն աւելի ընդարձակել տուաւ․ որպէս զի նեղ ժամանակը կարող լինի անցունել տալ արեւակէց արտօրէից ծարաւն։

ԱՂԿԷՕՂ . — Սալախանայ գիւղիս Արեւմըտակողմն՝ իրեն սահմանակից Հայ գիւղ մի է 80 տարիէ 'ի վեր ամայացած , որոյ աւերակաց վերայ կը տիրապետեն այժմ քանի մը տուն Քրդեր։

Գիւղիս անուն ծագած է իւր համանուն լճակէն , որ բաւական ընդարձակ և ջուրն աղի է , այս պատճառաւ հովիւք երբեմն սոյն լճակէն , իբրև աղի ջրէ , կը խմցնեն իրենց ոչխարաց ։

Սոյն լճակէն օգտակար արտադրութիւնք կրնան ձեռք բերուիլ , եթէ խելահաս մարդոց ձեռամբ իւր եզերաց վերայ շինուին բորակի ածուներ , ուր շարունակաբար ջուր կապելով լըճացնեն , որոնցմէ արևու տաքութեամբ ջուրերը շոգիանալով ածուներու յատակը պիտի նըստին աղային նիւթերն , որպէս Վանայ ծովու եզերքը , ( որոյ վերայ իւր կարգին կը խօսիմ ) ։

## ՍԱԼԱԽԱՆԱՅԷՆ ՄԵԿՆՈՒՄՆ

Տեղէս ճամբայ ելնելով գնամք Արևելահիւսիսային ուղղութեամբ , և 3/4 ժամէն կը հասնիմք հետևեալ գիւղը ։

ՓԱԿԱՆ . — Ունի 10-12 տուն Քուրդ ։ Աստ կանգուն և գրեթէ անվնաս կը տեսնուի Ասորիական մի եկեղեցի , որ է գեղեցկաշէն և կամարակապ , որոյ անկիւնաքարին վերայ իւր յիշատակագիրն տակաւին կը նշմարուի ։ Սոյն շէնքըն այժմ ամայի կը կենայ ։ Տեղւոյս յիշեալ հնութիւնը կը թողում իւրեան տիրոջ , որ զայն

խնամէ և ես կ՚անցնիմ գիւղիս անմիջական մօտ երկայն ձորակէն, ուր ջրերն կարկաջասահ կ՚ընթանան, ու 20 վայրկենի չափ դարն 'ի վեր ելնելով կարապետիս հետ երթամք տեսնել կամ աւելի աղէկ է ըսել այցելել մի փառաւոր հընութիւն, որ հարիւրաւոր Եւրոպացի ուղևորաց այցելութիւնք վայելած է և դեռ կը վայելէ :

## ԳԼ. Թ.

### ԱՇՈՏԱՅ ԴՈՒՌՆ ԿԱՄ ԲԵՐԴ ԵՒ ԻՒՐ ՀՆՈՒԹԻՒՆՔ

Այս տեղը բաւական երկայն և ընդարձակ լերան մը վերայ դուռն մի կայ քարափոր, զոր «Աշոտայ դուռն» և երբեմն ևս «Աշոտայ բերդ» կ՚անուանեն, ոչ միայն գաւառիս Հայք, այլ սոյն կողմերու Քուրդերն անգամ մի և նոյն անուն կը տան այդ խորհրդաւոր տեղւոյն :

Սոյն լեռն ձգուած է յԱրևելէն յԱրևմուտ միջակ բարձրութեամբ, և երկու գլխաւոր մասերու բաժնուած նեղ կիրճով մը, որոյ երկու կողերուն վերայ փորուած են մեծամեծ խաչեր, որք հնութենէն ծաղկած են, այլ դժբաղդաբար չ՚ունին յիշատակութեան գիր մը կամ թուական մը : Բերդն բնական լեռնակ մ՚է, զուրկ արհեստական պարիսպներէ և չինութիւններէ, այսու ամենայնիւ իւր Արևելեան մասն բնականէն զարմանալի համեմատութեամբ մը կը բարձրանայ, որոյ 'ի Հարաւ նայող ճակտին վերայ

միապաղաղ քարէ փորուած վերոյիշեալ դուռն է հսկայաձև, զոր, որպէս յիշեցի, այս կողմերու բնակիչք անխտրապէս «Աշոտայ դուռն» կը կոչեն և ընդհանուր առմամբ ևս «Աշոտայ բերդ»: Սոյն դրան բարձրութիւնն է 4 մեթր, լայնութիւնն 2 և խորութիւն 1 մեթր կը լինի: Դրան վերնակողմն 1 մեթր երկայնութեամբ 10 կարգ բևեռագրերով զարդարուած է, միջնակողերուն վերայ մանր ու մունր աննշան խաչեր կան փորուած, որք՝ պատմութիւն փոքր ինչ թղթատողին դիւրին է գուշակել թէ նոքա վերջի ժամանակաց գործեր են: Դրան առջևի դիրքըն, որ յատուկ մուրճերով կարգադրած են և տակաւին սանդուխի մի քանի ելևէջերն կը կենան, վեհանձն դատաւորի մը տեղի լինել կրնայ կարծուիլ՝ իւր տարածութեան և ձևին նայելով:

Սոյն հին բերդի կողերուն վերայ արձանի կամ կուոց պատուանդանի տեղուանք կը տեսնուին փորուած քառակուսի և ուղղանկիւն ձեւերով: Վերի կողմերը կը գտնուին այլ և այլ հետաքրքիր խորութիւնք ու մասնաւոր այրեր: Բերդիս Արևմտեան մասին վերայ փորուած են միակտուր քարէ մեծամեծ խորեր թւով 3–4, որք կը թուին լինել ցորեանի ամբարատեղի կամ ջրշեղջ: Աշոտայ դրան հանդիպոյ կողմն 'ի Հարաւ նշմարելի են հինաւուրց այլ և այլ բնակութեանց աւերեալ հիմունք, բաւական թւով, ո-

րոց վերաբերութեամբ տաւ մ'անգամ չ'գանըւ-
ւիր մեզ լոյս տուող, միայն կ'աւանդեն թէ «հին
և մեծ քաղաքի մը տեղերն են», թէ սոյն ա-
ւանդութիւն քանի տարեկան է մեզ անծանօթ
կը մնայ, թէև շատ հետաքրքրուիմք։

Ցիշեալ, անշուշտ, արքայական կամ իշխա-
նական դրան վերայ շատ տեսակ կարծիքներ և
խորհուրդներ 'ի մեզ կրնան ծնանիլ, յորոց մին
սա է թէ Քրիստոնէութենէն առաջ Երկրի բնիկ
իշխանաց կամ Նախարարաց մի ապաստանարան
եղած լինի, որոյ շարունակութիւնն տևած է
մինչև քրիստոնէութեան դարումն, ուր այդ-
բերդի կրճի կողերուն վերայ փորած լինին յի-
շեալ վիթխարի խաչերն, որք մօտ դարերու աշ-
խատութեան գործ չեն թուիր, որպէս իւրեանց
տեսքէն դիւրին է մակաբերել։

Տեղւոյս բևեռագրեանց օրինակն առնելոյ
համար աւելի դերմանացիք կը յաճախեն աստ.
և դրերն բաւական եղծեալ և խանգարեալ են
ժամանակի աւերիչ ձեռքէն կամ դէպքերէն։

Ինչ որ ալ լինի, աղնիւ բանասիրաց և հայ-
րենախօսաց, տեղւոյս նկատմամբ այսչափ դրելով՝
բաւ կը համարիմ և կ'իյնամ յուղի դնալ դէպ
'ի յԱրևելահարաւ, յԱղբակ գաւառ, որոյ սահ-
մանը 2 ժամէն հազիւ կրնամք մտնել յիշեալ
դծովն, որ դժուար կեւրէ կը բաղկանայ. բայց
մենք ոչ թէ կէտերէ այլ և մարդակուլ ճեւրէ
պարտաւորեալ եմք անցնիլ։

# Գլ. Ժ.

## ԱՇՈՏԱՅ ԲԵՐԴԷՆ ՄԵԿՆՈՒՄՆ

Աշոտայ խորհրդաւոր բերդէն մեկնելով հարկ է ընդարձակ և անհաւասար մակերևոյթ ունեցող մարգագետինք, ինչպէս նաև լեռնահովիտներ, բազմաթիւ ծործորներ, բլրաւաներ և դաշտաբլուրներ կտրել բաւական դըժուարութեամբ, այսպէս 2 ժամէն կը հասնիմք Քարահիսար կոչուած Քուրդ գիւղն, որ Ասիոյ Հայաբնակ գաւառաց հռչակաւոր Քուրդ Տըրպազ աղայի ծննդավայրն էր, ուր այժմ իւր եղբարք և եղբօրորդիք կը բնակին քանի մը տուն քրդաց հետ և մեծ ազդեցութիւն ունին։

Աստ մի գիշեր հիւր լինելով Տրպազ-խան տեսնելոյ բարեպատեհ առիթ ունեցայ։ Այն հռչակաւոր Քուրդ, որ այժմ իւր բնակութիւնն 'ի Պարսկաստան Կոտուր ըսուած գաւառակի մէջ հաստատած է, ունի աշխոյժ և կենդանի արիւն, հակառակ իւր տարեաց թուոյն, որ 80 էն պակաս չէ. իւր արագ և թեթև շարժման առջև տարևորութեան ծանրութիւնն ոչ ոք կրնայ ըզգալ, մօրուքն կարմիր ներկած, ըստ Պարսկական սովորութեան, բնականէն ունի դիւանագիտական մեծ տաղանդ, զոր կը փայլեցնէր իւր կրճատախօս տաճկաբանութեան մէջ, ուր կը խառնէր Պարսկական լեզուի ոճերն ու հնչումներն. իւր հասակն (պօյ) Պարթևական էր, ա-

ներկիւղ 'ի բան, 'ի պատասխան և 'ի դէն, որոյ ներքև բազմաթիւ անձինք կը դանուին հպատակ, որք 'ի պահանջել հարկին, իւր որ և է հրամանին ամենահնազանդ գործադրիչներն են:

Քարահիսարի բնակիչներն ամենքն ալ բազմաթիւ ոչխարներ ունին. կը պահեն ընտիր նըժոյգներ (զամբիկ), երկրագործական վիճակնին ծաղկեալ չէ, զի ՀՈՂԻՆ հետ քիչ գործ ունին, և ընդհանրապէս մտածելով չեմ կարծեր սխալած լինիլ, եթէ ըսեմ, 'ի Հայս՝ Քուրդերն ոչխարաբուծութեան և Հայք երկրագործութեան մէջ կընան յառաջադէմ նկատուիլ բաղդատաբար, թէպէտև չ'նային թուղթի և գրչի վերայ:

Տեղէս ելնելով ճանապարհնիս շարունակեմք դէպ 'ի յԱրևելահարաւ, անցնելով դարձեալ բազմաթիւ լեռնահովիտք, բլուրներ և բլրակներ և մանաւանդ բաւական թուով լերկագլուխ (մերկագլուխ, առանց անտառի և բուսաբերութեան) լերինք, որք յիշեալ գիւղին անուամբ կը կոչուին Քարահիսարի լեռներ, յորս կը բարձրանայ սուրուխածայր (սիվրի գլուխ) մի լեռ, զոր տեղացիք «Քարահիսարի բերդ» կ'անուանեն, որոյ ստորոտներէն կը բղխին բազմաթիւ վտակներ, որոց ամբողջութիւնն կը կազմէ մեծ գետ մը, որով գաւառիս արտօրայք կ'ոռոգուին և կը լինին աւելի պտղաբեր:

Սոյն գետն կը պարունակէ լաւ ձկունք և կ'ընթանայ հանդարտօրէն դէպ 'ի Հարաւ ու

Գայլ անունն առնելով կը թափի 'ի Տիգրիս, որ Եփրատէսին հետ Պարսից Պասրա քաղաքին մերձ՝ Քօռնա գիւղաքաղաքին քովերը միանալով կը կազմեն Շաթ-էլ-Արապ ու կը թափին 'ի Պարսկական ծոց ։

Վերոյիշեալ լերան Արեւմտեան Հարաւային ստորոտէն կը բղխի Խօշապայ կամ Անգղայ գետն (որ վերջի անուան վերայ գործիս Ա. մասի 134 երեսի մէջ խօսուած է) ։

Դարձեալ սոյն լերան Արեւմտեան Հիւսիսային ստորոտէն կը բղխի, Կոտուրայ գետն, որ դէպ 'ի յԱրեւելահիւսիս յառաջ գնալով կը կազմէ մի ճիւղն Կարմիր գետակին, որ կը թափի յԵրասխ, սա եւս 'ի Կասպից ծով ։

Հին ատեն մի հովիւ սոյն լերան չուրջը իւր ոչխարներն արածացնելէն յետոյ, վերոյիշեալ երեք գետակներէն ջուր կը խմցնէ անոնց, այս առթիւ հետեւեալ հանելուկն կը ծնանի մեր հովուոյն միայն բնական ճարտարութենէն և ց'արդ ժողովրդեան մէջ կը պահպանուի և կը խօսուի ։ Ահաւասիկ հանելուկն ։

« Ի՞նչպէս կը լինի, որ մի հովիւ մէկ օրուան մէջ, տակաւին Արեն 'ի մար չ'մտած, կարող կ'ըլլայ գիւր հօտն ջրել Կասպից, Վանայ և Պարսից ծովերու ջրերո՛վ » ։ Մեր հովիւն կարող կը լինի այս իմաստով թէ՝ որովհետև ոչխարաց խըմած գետակաց ջրերն յիշեալ ծովերուն մէջ թափելով անոնց հետ հաղորդակցութիւն ունի,

ուստի սոյն գետերէն երբ ոչխարներն ջուր կը խմեն, անուղղակի խմած կը լինին նաև նոյն ծովերէն, մի և նոյն ատենուան մէջ։

## ԳԼ. ԺԱ.

### ԱՂԲԱԿ

Սոյն գաւառն Անձրևացեաց գաւառի Արևելակողմը կը գտնուի, և անկէ բաժնուած է Հարաւէն 'ի Հիւսիս ձգուող Զուխոյ գետևոր լեռներով. ունի բարեխառն կլիմայ և քաղցրահամ առատ ջուր ու բարեբեր հող։

Երկրի բնական դիրքին նայելով, կրնայ ընդարձակ լեռնադաշտ մի համարուիլ շրջապատեալ մեծամեծ սարերէ և բլուրներէ։ Գաւառիս ձմեռն սաստիկ ցուրտ կը փչէ և շատ ձիւն կ'ուգայ. իսկ ամառն բարեխառն է։

Աղբակու Արևելակողմը կը բնակին Տամուքցի բռուած Քուրդ Հաշիրէթ, որք թուով 5-550 տուն են. Արևմտակողմն Տէվանցիք, թուով 100-120 տուն, Հարաւակողմն Արտօշցիք 1000 տուն և Հիւսիսակողմն Շկակ կոչուածն, բաղմաբնակութեամբն 600 տան չափ։

Սոյն Հաշիրէթ քրդաց գիւղերն շատ փոքրաթիւ տներէ կը բաղկանան, (վրանաբնակներն 'ի բաց առեալ) ինչպէս 2-8-10-15, որք կը բընակին առ հասարակ լերանց ձորաբերաններն և կամ անոնց միջավայրերը։ Դաշտայինքն, որք շատ քիչ են, Հայերէն ալ գիտեն խօսիլ, հա-

րազատութեամբ պահպանելով իւրեանց մանաւոր ձևերն ու յատկանիշերը ։ Հայերն ևս Քրդերէն լաւ գիտեն , սակայն դժբաղդաբար ոմանք անարատ չ՚են պահած իւրեանց ազգային յատուկ ձևերն և յատկանիշներն · շատերն դժուար կը ճանչցուին , եթէ Հայերէն խօսելնին չ՚լսուի ։

Աղբակու բնակիչք ընդհանրապէս յաղթանդամ, ուժեղ և կորովի են ։ Իգական սեռն ժիր և աշխատասէր է , մանաւանդ քրդականքն ; որք օրն 'ի բուն դաշտօրէից մէջ կ՚աշխատին , այն ինչ իւրեանց ամուսինքն 'ի տան հանգիստ կը նստին կամ 'ի նժոյգ հեծած կը պտըտին ։

Գաւառիս ժողովուրդն առ հասարակ երկրագործութեամբ և խաշնարածութեամբ կ՚զբաղի · առաջի զբաղմունքն Հայոց կը բերաբերի և վերջինն Քրդաց , որք իւրաքանչիւր տարին 1000 աւոր ոչխարներ կը վաճառեն Տիգրանակերտի , Պաղտատու և այլ կողմերէն եկած բէճէչներուն , որ ամեն տարի պակաս չեն ։

Երկիրն խաղողի այգիներէ և մրգեղէն ծառերէ զուրկ է , զ՚այնս կ՚ընդունին Պարսկաստանէն . վերջի տարիներս ծառատունկեր սկսած են տեղ տեղ տնկել , տա՛յր երկինք որ յաջողէին ։

Աղբակու Հայք ունին բարձր բարոյականութիւն մը , որուն դէմն գործողի պատիժն մահ է . գրեթէ առանց բացառութեան , իրենք անչափահաս ամուսնանալոյ սովորութիւնն դեռ կը պահեն , անանկ որ 20 տարեկան երիտասարդ

մը չես գտներ, որ ամուսնացեալ չ՛լինի ։ Սոքա կը սիրեն միութեամբ ապրիլ իրենց ընտանեկան յարկին տակ, չուտով իրարմէ բաժնուիլ չ՛գիտեն․ տուն կայ որ 15 էն աւելի չափահաս մարդիկ կամ երիտասարդներ ունի ։ Նոյնպէս ունին օրինակելի սովորութիւն մը, այն է բնաւ չ՛գնալ ՚ի պանդխտութիւն, ըստ որում իրենց համար անտանելի է ընտանեկան ԿԵԱՆՔԷՆ զուրկ ապրիլն և այս ամենամեծ իրաւամբ ։

Կանայք կը գործեն գիմացկուն գորգեր, այլ և այլ գոյներով և ճարտարութեամբ, ընտիր շալ, կտաւ, ջէջիմ (բրդէ անօսր կապոց $1^1/_2$ մեթր մեծութեամբ), և թաշախիկ (վրայէն հագնելի կարճիկ զգեստ մը) գիւղացւոց գործածելի ։

*

* *

Գաւառիս գիւղօրէից ընդհանուր թիւն 80 է, և բնակչաց գումարն 20,000, յորմէ 10,000 Հայ են և մնացածն Քուրդ, Ասորի և Հրէայ ։

Աղբակու ընդհանուր վիճակին վերայ սոյն համառօտ տեղեկութիւնք տալէս ետքը մըտնեմք յիւր սահմանը, ճանապարհնիս ուղղելով դէպ ՚ի Հարաւային Արևելակողմն և $3^1/_2$–4 ժամուան տևողութեամբ ահագին բլուրներ, վիթխարի ժայռեր ու երկիւղներով լի ընդարձակ ձորեր կտրելէ յետոյ կը ժամանեմք հետևեալ շատ նախնական գիւղը ։

ՍՕՐԱՏԷՐ․ (սորա տէր)․ — (կարմիր վանք կամ եկեղեցի) Այս գիւղն ունի 30 տուն Հայ

բնակիչ, ԷՋՄԻԱԾԻՆ անուն մի գեղեցկաշէն և հրաշակերտ մենաստան, փոքրիկ ու կոկիկ, շինուած կոփածոյ ճերմակ քարերէ, կառուցման թուական չ'կայ, եղածն իւր ճշգրութեամբ նշանակած եմ հետևեալ տողերուն մէջ: Սոյն մենաստանիկ 3 քարընկէց հեռու կը գտնուի գիւղէն, որոյ եկեղեցին է, ուր կը լինի ժամասացութիւնք: Ունին մի երիտասարդ քահանայ, բաւական զարգացեալ, աշխոյժ և վառ դիմօք, մի ողորմելի ծաղկոց կամ աւելի սոյգ կը լինի ասել կատարեալ խամրոց, ուր կը խամրին առաքելոց թուով 12 կայտառ և կլորիկ մանուկներ՝ յանձնուած մի ծաբրտար մանկավարժի, որպէս իրենք կ'անուանեն:

Տեղւոյս Էջմիածին վանքն ունի ընտիր տեսարան և ընդարձակ չրջապատ որ լի է հին կիսաւեր շէնքերով, որք նշան կը տան իւր անցեալ փառաց և ճոխութեան, զորս 'ի ծերոց ոմանք աղաւաղեալ կը պատմեն հոգւոց հանելով հանդերձ: Վանքս երբեմն ունեցած է շատ հողային կալուածներ, սակայն գիւղացիքն, դէպքերէ օգուտ քաղելով, այժմ յիշեալ վանուց սեպհականութիւնքն իւրացուցած են:

Կ'աւանդեն թէ «սոյն Էջմիածին Պարսից Շահ-Աբասի արշաւանաց ատենը կիսով չափ քանդուած լինելով նորէն շինուած է այժմեան գեղեցկայարմար կաթուղիկէն»: Ահաւասիկ Սօբատէրայ Ս. Էջմիածնայ դրան ճակտի յիշատակա-

րանն, որ կ՚ապացուցանէ թերևս յիշեալ աւանդութիւնն. «Շնորհօք Ամենակալին Աստուծոյ վերստին նորոգեցան Ս. Էջմիածին օժանդակութեամբ Մահտեսի Սարօյին, Թուին ՌՃՀ. որ ըսել է 204 տարուան վերանորոգութիւն է ։ իսկ վանուց հիմնարկութեան թուական դժբաղդաբար չ՚կայր, միայն աւանդութեան մը վերայ պիտի կրթնիմք որ կըսէ, «Ս. Բարթուղիմէոս Առաքելոյ վանուց ճարտարապետի աշակերտի չէնքն է,» որ յիրաւի շատ յար և նման է յիշեալ վանուց ձևոյն և ճարտարապետական ճաշակին, ոյր վերայ ի կարգին կը խօսուի ։

Սօրատէր գիւղն կը գտնուի վերին Աղբակու Արևելակողմն չինուած տափարակ դաշտի մը վերայ և է անծառաստան բոլորովին. իւր հնութեանց վերայ խօսիմք հետևեալ գլխովս ։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### ՀՆՈՒԹԻՒՆՔ ՍՕՐԱՏԷՐԱՅ

Գիւղիս շրջապատը կը գտնուին 2 աւերեալ եկեղեցեաց հիմունք, ընդ որս նշմարելի ու ոմանք տեսանելի բազմաթիւ բնակութեանց հետքեր, որոց վերաբերութեամբ ահա աւանդութիւնն տարեւոր ալեւորաց «Սօրատէր շնուէ քաղաք մ՚եղած է Սիկալ իշխանի ժամանակը, որ ղայն շէն և հաստատ կը պահէր շուկաներով և տներով». սոյն աւանդական խօսքին վերայ նըկարագրեմ ու տեղագրեմ տեղւոյս հնութիւնք ։

## (*) ՍԻԿԱԼ ԻՇԽԱՆԻ ԲԵՐԴ

Գիւղիս Արեւմտեան Հարաւակողմն 5 քարընկէց հեռու ընդարձակ յատակով բլուր մի կայ, որ վերայ կը տեսնուին հսկայ շինութեան մը հիմունք, որոց ահագին մեծութեամբ քարերն տակաւին քանի մը կարգ իրարու վերայ շարուած կը կենան. Նոյն վիթխարի քարանց քանիներուն վերայ քանդակեալ են մեծամեծ խաչեր, արուեստիւ աննշան: Այս անթուական և կիսաւեր շինութիւնն տեղացիք «Սիկալ իշխանի բերդ» կ'անուանեն: Սոյն հնութեան յատակը շինուած է լայն ուղի մը, որ 3 քարընկէց երկայնութեամբ կը տանի դէպ 'ի Հարաւ գետակի եղերքը. սոյն ճանապարհէն 'ի Գետակն երթալ անկարելի եղած է, վասն զի շատ տեղեր խանդարուած և պարապ տեղերն եւս ածխային

(*) Ձեռքս բերած մի քանի հնաքրքիր եւ ընդարձակ աւանդութիւնք, որք ընդ աղօտս լոյս կը տան «Սիկալ իշխանի» եւ իւր հնութեանց վերայ: Նոյնպէս ուրիշ աւանդութիւն մը, Սօրատէր գիւղիս սոյն վանուց «Էջմիածին» անուն կրելուն վերայ. Ջանացի, կարելի եղածին չափ, յիշեալ աւանդութիւնք այնպիսի դասակարգութեամբ շարել տեղագրութեանցս մէջ, որ զիրեար չօշափելոյ համար առարկայքն իրարու մօտ լինին եւ որով ուշիմ բանասէրք ու յարգոյ ընթերցողք աւելի ախորժանօք ընդունին: Մի եւ նոյն դիրք բռնած եմ նաեւ Բարթուղիմէոս Առաքելոյ սպանման եւ վանուց շինութեան պարագայից վերաբերեալ նոր աւանդութեանց մասին:

կաղերովլի են, որք կրնան 'ի քծծիլ ական չընչաւորի մը մահ պատճառել. աստ եթէ 5 վայրկեան կանուխ չ'համնէի, մի կորիճ երիտասարդի սօսատիպ դիակն տեսնելոյ ամենացաւալի տեսարանն պիտի ներկայանայր իմ աչաց, ըստ որում յիշեալ երիտասարդն իմ հետաքրքրութենէն չարժեալ, ինէ աւելի կանուխ Սիկալ իշխանի յայդ բերդ կանխած՝ կուզէր մտնել ճանապարհի այրերուն մէջ, ո՛ գիտէ, թերեւս իւր ողորմած հօրն պապերու հին տեղերը պահած գանձերն գտնելոյ յուսով. առ այս անմիջապէս զինքըն արգիլեցի, կարճիկ բացատրելով այդ օրինակ կաղերու բնականէն վտանգաւոր վիճակն, զոր խեղճ գիւղացին ըմբռնել չէր կրնար, որ մօտ էր զիւր ծաղիկ կեանքն տգիտութեան զոհ տալով գնալ 'ի հոգւոց աշխարհ, որմէ բացարձակապէս անհնարին պիտի լինէր Ուղեւորիս զինքն ետ կոչել և յանձնել նորէն իւր պառաւ մէրկան, որոյ թափելիք աղի արտասուքն իմ բոլոր կենացս մէջ սրտիս մեծ ցաւ և խղճիս ամենածանր բեռ մի պիտի լինէր, վասն զի գլխաւոր պատճառն ես էի այդ երիտասարդին յայրի բերան գնալուն և այդչափ հետաքրքրուելուն:

Սիկալ իշխանի բերդն, որպէս 'ի վերև յիշեցի, կը գտնուի լայնատարած բլրոյ մը վերայ, որոյ կողերը փորելով գտնուած կը տեսնուին մի քանի այրեր, փոքրիկ ուցած սենեկի մը տարածութեամբ, այրերէն երկուքն անձամբ դիտե-

ցի զգուշաբար ներս մտնելով։ Սոյն տեղերը գիւղացիք իրենց պարապոյ ժամերուն երբեմն փորած են և գտած հսկայ մարդոց անդամներէն ծունկ, գլուխ և դարձեալ հողէ հին ամաններ և ոսկորներ, որք կը թուին միացած լինել կռապաշտական դարերէն, ուր սովորութիւն ունէին ոմանք, երբ մեռեալ իգական սեռէ լինէր, նորա հետ ոսկորներ կը թաղէին, որք իրենց մէջ շատ յարգի համարուած էին։

Տեղւոյս բերդի հնութիւնն չ'գիտեմ թէ կը յիշեցնէ՞ զՍանատրուկն և զՆախարարսն։

ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆՔ

Սկզբնամուտն 'ի յԱռաքեալ Բարթողիմէոս Սրբազան Առաքելոյն 'ի ժամանակն կռապաշտութեան։

« Բարթուղիմէոս Առաքեալն ժամանակին իւրեան վիճակած Աղբակու գաւառը (երկիր օձապաշտից կամ վիշապապաշտից, որպէս իրենք կ'անուանեն) կը գայ զՔրիստոս քարոզել. Նախ գաւառիս Արևելքէն կ'սկսի և կը հասնի 'ի Սօրատէր (որոյ վերայ քիչ մը վերև խօսուեցաւ), ուր այժմեան « Էջմիածին » կոչուած վանուց տեղը հանգիստ մ'առնելոյ։ Այս ատեն Սիկալ անուն իշխան մը, որ Աղբակու կիսուն կը տիրէր, իւր բնակութիւն հաստատած էր բերդին մէջ (այժմեան աւերակ), որմէ իւր « Վառվառինէ » անուամբ դուստր կը տեսնէ, որ մի մարդ.(Առաքեալն) նստած է և երկու լուսեղէն հոգի-

ներ նորա աջ և ձախ կողմերը, լուսեղէն հոգիներէն մին աղջկան և միւսն մարդոյ կերպարանօք կ՚երևէին իւր աչաց ։ Սիկալ իշխանի դուստրը Վառվառինէն հետաքրքրուելով կ՚առնու զ՚իւր սպասաւոր և իր վերայ մի քող, (զի անծանօթ մարդոց երևնալն նախատական համարուած է եղեր) կը գայ Առաքելոյն քով և տակաւին չհասած առընթեր, լուսեղէն երևցած հոգիներն աներևոյթ կը լինին, ու երբ կը մօտենայ առաքելոյն, անմիջապէս կը հարցնէ անոր թէ « ո՞յք էին լուսեղէն աղջիկն և մարդն և ո՞ւր գնացին, զի ես իմ հօր բերդէն (մատնացոյց կ՚ընէ Սիկալի բերդն) տեսի և հիմա զ՚անոնք ալ չ՚եմ տեսնայր » . Ս. Առաքեալն յ՚այս պահուս յուզեալ և մտահոգ Քրիստոնէական կրօնի տարածման միջոցներուն վերայ, կը պատասխանէ թէ « Մարդոյ կերպարանօք քեզ երևցողն Աստուծոյ Որդի Քրիստոսն է, որոյ կողմանէ խրկուած եմ և եկած յ՚այս երկիր քարոզել նորա կրօնն ու վարդապետութիւն . իսկ աղջկան դէմքով երևցածն Քրիստոսի Մայր Աստուածածինն էր, որք այժմ համբարձան յերկինս » ։

Վառվառինէն առ այս բան, մեծ փափաք կը յայտնէ Քրիստոսի կրօնն ընդունելու . իւր ըսպասաւորէն գաղտնի և միանգամայն Առաքելոյն իմաց կը տայ իւր Սիկալ հօրմէն ունեցած սաստիկ երկիւղն ։ Ընդ այս՝ Վառվառինէն կը վերադառնայ ՚ի բերդն, ուր զիւր սպասաւոր թող

տալով ինքն գիշերանց գաղտնապէս դուրս կ'ելնէ ու առաքելոյն ընկերանալով անտեսանելի ճանապարհաւ մը դէպ 'ի Պարսկաստան՝ յերկիրն Արևապաշտից և Կրակապաշտից կ'երթան ։

Միկալ իշխանն, որ զօրքի և զօրութեան տէր կը լինի, երբ կ'իմանայ իւր Վառվառինէ դստեր աներևութանալն, հարց ու փորձ կ'ընէ իւր ծառայներէն, յորոց մին կ'ըսէ թէ « երէկ Վառվառինէն այս ինչ տեղը (ցոյց տալով Առաքելոյն նստած տեղը) անծանօթ մարդոյ մը հետ տեսնուեցաւ, կարելի է անոր հետ փախած լինի » ։ Միկալ իշխանն անմիջապէս ամեն կողմերը զօրք և մարդիկ կը խրկէ զՎառվառինէն և զօտարականն գտնելու. խուզարկուներէն ոմանք կը տեսնեն զԱռաքեալն և զաղջիկ 'ի հեռուստ և հեռաւորութեան պատճառաւ չկրնալով որոշել թէ նոքա են, կ'սկսին մօտենալ անոնց, և երբ կը հասնին, ուրիշ բան չեն տեսներ բայց եթէ զԱռաքեալն և ճերմակ մազերով 100 տարեկան ծերունի մը, զոր եկողներն տեսնելով յետս կը դառնան առ Միկալ իշխանն ասելով թէ « մենք այն անծանօթ մարդն աչքով տեսանք, որ լաւ կերպարանքի տէր մի օտարական էր, մենք թէև իրեն հետ չխօսեցանք, սակայն գիտեցինք որ նորա հետ ընկերացողն մեր տիրոջ աղջիկ Վառվառինէն չէր, այլ ուրիշ օտարական մը, որ շատ ծեր էր և մազերն ճերմըկած, որ եթէ ասա գտնուէր այդ խեղճուկ ծե-

րունին , դուք շատ պիտի յարգէիք (*) զինքն , անոր համար որ պատկառելի էր դիմօք ։

Սիկալ այս անգամին մարդ կը խրկէ առ իւր եղբայր (**) 'ի խանասօր (կարմիր տուն) , որոյ վերայ 'ի կարգին խօսուած է , և տեղեկութիւնք կը հարցնէ իւր աղջկան վրայօք , եղբայրն թըղթով կը պատասխանէ , որով իւր տեղեկութիւն մը չունեցած լինելը կը յայտնէ . սակայն Սիկալն չ'համոզուելով իւր եղբօր խօսքերուն կրկին կը հարցնէ ասելով թէ « քու զօրքերէդ կամ մարդիկներէն հարցուր , վասն զի նոքա փախուցած պէտք է լինին զիմ վաւվաւինէն ։ Խանասօրայ եղբայրն դարձեալ միևնոյն պատասխանն կըտայ, որում Սիկալ իշխանն չ'հաւատալով պատերազմ կը բանայ եղբօր դէմ և զիրեար իւրեանց զօրքերով և զօրութեամբ կը ջարդեն ։

Կրակապաշտից կամ Արեգնապաշտից (Պարսից ) թագաւորն , որ միշտ կուզէր այս երկրին տիրել , առիթէ օգուտ քաղելով կը յարձակի Աղբակու երկրին վերայ և կը յաջողի զՍիկալ իշխանն սպաննելու և միանգամայն աւերակ

(*) Կաւանդեն թէ Սիկալ իշխանն տարեւոր անձինք շատ կը սիրէր եւ մանաւանդ , եթէ ճերմկամազ լինէին ։

(**) Աւանդողք ասոր անուն մը չեն տար , միայն թէ 'ի Խանասօր նստած՝ Աղբակու միւս կիսուն կը տիրէր կըսեն , վասն զի երկիրն բաժնուած էր այս երկու եղբարց մէջ ։

դարձնելու զՍօրատէրն՝ և զԽանասօրն՝ դեր-կու իշխանանիստ քաղաքներն, որք լի էին բազ-մամարդութեամբ և հարստութեամբ ։

Այս աւեններըը Սիկալի մարդիկներէն ոմանք կը փախչին 'ի Պարսկաստան անդ հպատակ լինե-լու, սոքա մի օր զվառվառինէն կը տեսնեն, որ կզբօսնու Սալմաստ քաղաքէն $1/2$ ժամ հեռու պարտիզին մէջ, անմիջապէս զանի կ'սպանանեն, որոյ սպանման տեղւոյն վերայ, ետքէն եկող քրիստոնեայք իւր գերեզմանն կը կանոնաւորեն և մատուռ մի կառուցանելով՝ կ'անուանեն զայն « Սուրբ Վառվառինէ (*) » ։

* *
*

Սօրատէրայ հեռաւոր շրջապատը տեղագ-րելոյ և նկարագրելոյ պահուս միտքս կեյնան շատ բաներ, բարի խորհուրդներ, և ես չեմ կրնար ըսել՝ որ նոքա գեղեցիկ չեն ու արդար, զոր ԱՐԴԱՐՈՅՆ թող տալով չարունակեմք ըն-թացքնիս ։ Արևելակողմն 1 ժամ հեռաւոր կան 2 քուրդ գիւղեր Ալչէ» և Ալչուէ անուամբք, ուր Արմենական հնութիւնք չ'կան, այլ կան մի քա-նի հին ջրաղացներ բնակչաց ձեռքը, և դոքա կը կոչուին Հայոց Ջրաղացք ։ Սոյն գիւղերն որ ի-

(*) Սոյն մատուռն այժմ գրեթէ կանոնաւոր ուխ-տատեղի մի է այս կողմերու Պարսկահայոց, մանա-ւանդ նորահարսներու համար, որք մուրատ առնելոյ բաղձանօք կը դիմեն 'ի համբոյր կուսի տապանին։

րարմէ $1/2$ ժամական հեռու կը գտնուին, ունին 10 ական տուն հաղիւ* բնակաւորք, հպատակք Տամուէլի բռուած Հաշիրէթի գլխաւորին։ Սոյն գիւղերն ունին ընտիր տեսարան, օդ և ջուր, բնակիչք շատ քիչ կապրին երկրագործութեամբ, այլ ընդհանրապէս ոչխար կը պահեն, արօտատեղիքն շատ ընդարձակ են և պարարտ։

Սօրատէրայ դարձեալ յԱրևելակողմն, մէկ ժամ հեռաւորութեամբ, կը գտնուի Պաղ..ան անուամբ գիւղն, որ ունի 10–12 տուն բնիկ Հայ և 10 տուն ևս եկաւոր Քուրդ։ Վերջի պատերազմէն առաջ աստ կը բնակէին 50 տուն Արմենականք։ Տեղւոյս բնութիւնը շատ հարուստ է և ցորեանն ուրիշ տեղեաց վերայ շատ գերադանց, որ յառաջ կը գայ սեւ և կարմիր հողերէն։

Տեղւոյս Հայոց ամենամեծ մխիթարանքն իւրեանց կամարակապ և գմբեթաւոր եկեղեցին է, շինուածն վանքի ձևով, հաստատուն և ղօրաւոր դրիւք, կառուցեալ կապտագոյն քարերէ։

Սօրատէրայ յԱրևմտակողմն $1^1/2$ ժամ տարակայ է Բօ.. գիւղն, որ ունի 20 տուն բնակիչ, յորմէ 12 տուն Հայաբնակ և մնացածն քրդաբնակ է։ Հայք ունին հին եկեղեցի մը, որով իւրեանց ձայն Աստուծոյ լսելի ընել պիտի տան. խեղճ մարդիկ նորութենէ միշտ հեռու, և գոհ են իւրեանց կեանքէն։

## ՄԵԿՆՈՒՄՆ

Նախորդ Սօրատէր գիւղէն մեկնելով ուղե-

ւորիմք դէպ 'ի Հարաւային Արեւել, բարեպատեհ առթիւ մեզ ընկերացան 20 ձիաւորէն աւելի հեծեալ ուղեկիցք, որք կը բաղկանային 2 խումբէ, Մեծն Մարալեան և Փոքրն Հայկական, որոց մէջ էր Զլկավցի բարձրահասակ ու ֆօլօղէխ Վարդան, պարթևադէմ Հայն, որ երկու օր առաջ դիպուածով մը երիվարէն 'ի վար ինկած և ոտքերէն մին կոտրած լինելով հանդերձ՝ անդադար 'իւր սեաւ նժոյգին վերայ փոթորիկ կը հանէր դաշտաց մէջ։ Ի ճանապարհին յեղեալ երկու խումբերն, ատրճանակի խրոխտ ձայնով մը զիրեար կը հրաւիրէին 'ի տիգախաղութիւն, 'ի ձիարշաւ և 'ի յայլ խաղս։

Աստ՝ Տեղագիր–Ուղևորիս սիրտն ու հոգին լեցուեցան, տեսնելով Երկրի այս կորովի մասի եռանդն, աշխոյժն և ճարտարութիւնն 'ի ձիարշաւս. նոյնպէս նժոյգներու վեհանձն և արագաշարժ ընթացքն, զոր տեսնողին կը բերէ կատարեալ զմայլումն հրճուանք։

Այս պահուս յիրաւի բոլորովին յափշտակուած և զմայլեալ՝ կը դիտէի անկշտօրէն զայս տեսարանն գեղեցիկ, որ տեղի կ'ունենայր աչքիս հանդէպ, ընդարձակ դաշտօրէից մէջ. ահա այսպէս զուարճութեամբ ճանապարհ կտրելով 2 ժամէն հասանք հետևեալ գիւղը։

*
* *

ՀԱՅՈՑ Մրէղ. — Հայոց Մրիպա ըսուած սոյն գիւղն, որ կանուանի ընդհանրապէս «Թա-

ղիք », այժմ ունի 10 տուն Քուրդ ։ Տեղւոյս բընակիչք, որպէս յիշեցի, թէպէտև լինին տարարին սեռէ. սակայն գովութեան արժանի հիւրասիրութիւն ունին, զոր գրեթէ անխտիր ցոյց կը տան ճանապարհորդաց և եկւորաց ։

*
* *

Գիւղիս յԱրևմտահիւսիս 3 քարընկէց հեռու, 4 հատ կամարակապ կիսախորանի նման, աւազեայ կերտուածներ կան, որոնց տեսքին նայելով, ինչպէս և պարագայիցն՝ շատ դիւրին կընայ մակաբերուիլ թէ սոքա երբեմն ժամասացութեան կամ սաղմոսերգութեան ծառայած են ։ Ազնիւ ընթերցողն պիտի զարմանայ տեղւոյս բնութեան հրաշալեաց վերայ, զոր պիտի գրեմ 'ի պատիւ բնութեան ամենաճարտար արհեստին ու ԳԵՐԱԳՈՅՆ ՀԵՂԻՆԱԿՈՒԹԵԱՆ ։

## ԳԼ. ԺԳ.

### ԲՆՈՒԹԵԱՆ ՀՐԱՇԱԼԻՔ

Հայոց Մրիպա կամ Թաղիք գիւղի հիւսիսակողմն՝ 10 վայրկեան հեռու, կան բնութեան զարմանալի հրաշակերտներ, արձաններ, և մարդկային աչաց ու միանգամայն մտաց բեղմնաւոր խորհուրդներ տուող զանազան կերպարանքներ, զորս խոհեմ և իմաստուն բնութիւնն անհաշիւ դարերու մէջ համբերութեամբ կերտելով յառաջ բերած է քիչ ու շատ նմանութեամբ զոր օրինակ մարդ, երիտասարդ և ծերունի, այր և

*կին , պատանի ու նորածին մանկիկ , առիւծ , ձի , ուղտ , վագր , արծիւ , վանքի ծածք , ոլորապտոյտ սիւն , գեղատեսիլ շրջանակներ և ուրիշ բազմատեսակ հետաքրքիր ձեւեր , ու ամեն տեսակ ճաշակի և արհեստի վերաբերեալ : Բնութեան այս ամայի և անորոշ տեղւոյն մէջ ներկայ դարուս Եւրոպական ամենամեծ ճարտարապետն անգամ իւր համեմատական տգիտութիւնն պիտի զգայ և առանց վարանման պիտի խոստովանի , եթէ մի անգամ այցելէ սոյն անմարդաբնակ վայրը , զոր ես կանուանեմ* ԲՆՈՒԹԵԱՆ ԳԵՐԱԳՈՅՆ ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱՆՈՑ *, ուր նազելի բնութիւն լռութեամբ , այլ գործնականապէս աւանդած է և կաւանդէ արձանագործութեան հիանալի դասեր , զորս իբրև իւր յատուկ ձեռագործ , 'ի հանդէս , 'ի լոյս և 'ի տես դրած է , յորմէ աշխարհիս ամենաճարտար արձանագործն կրնայ , իբրև նոր ուսանող , դասեր ընդունիլ , եթէ յիրաւի մի անգամ երկաթէ կօշիկներու դէմն կռուելով գայ ու մնայ յայս գերագոյն ճարտարապետանոց և ուշի ուշով դիտէ բնութեան սոյն ձեռագործներն , որոց մէջ ձայն ահագին արձագանք կըտայ : Աստ կը գըտնուի նաև երկրի շատ տեսակ խաւեր , որք գեղեցիկ ներդաշնակութեամբ իրարու վերայ շարուած են և հորիզոնական դրիւք կը կենան :*

*Սոյն վայրն « բերդ » կանուանեն , որ « ծառացած է երբեմն ապաստանարանի տեղւոյ՝ ընդ-*

դէմ Պարսկին» ըստ հայկական աւանդութեան, որ կը յաւելու նաև թէ «ղնըլըղաշ մի անգամ բերդիս վերայ յարձակած է, սակայն տեսնելով որ բերդի վերի խաւն խարա (սեւ) է, զիւր զօրքերն առած՝ ետ դարձած է, գուշակելով թէ «սեւագլուխ բերդի վերայ յարձակումն մեզ համար յաջողութիւն չ'կրնար համարուիլ»։

Թաղիք գիւղի առաջեւէն կանցնի Աղբակու գետն, որոյ մէջ կը գտնուին պատուական ձըկունք, որք երբեմն կորսացուին անգործ գիւղացիներէն և անձրապղձաղներէն։

Տեղւոյս բնակիչներն թէպէտև լինին օտար ազգութենէ, այսու ամենայնիւ արդարութիւն է խոստովանիլ թէ գովութեան արժանի հիւրասիրութիւն ունին, զոր գրեթէ անխտիր ցոյց կըտան ճանապարհորդաց և աստ հարկ եղաւ կրկնել։

* *
*

Քանի մեծ հրաշք կը լինէր արդեօք, որչափ լոյս կըտայր համօրէն մարդկային մտաց և որպիսի տիեզերական զարմանքներ պիտի շարժէին ու վերջապէս ինչ նորանշան յեղափոխութիւնք յառաջ պիտի գային ԿՐՕՆԻ և ԳԻՏՈՒԹԵԱՆ յարաբերական գաղտնեաց մէջ, եթէ յիրաւի բնութիւնն վերոյիշեալ հրաշակերտ որհեստանոցի բացման թուականն նշանակած ըլլար մի բացորոշ տեղը և ես ՀԱՅԱԲՆԱԿՑԻ կամ Վանցի, Տեղագիր–Ուղեւորս, աստ գալով յաջողէի զայն ընթեռնուլ կամ Եւրոպիոյ հնագիտա-

կան ժողովք մը թարգմանել տալ, եթէ հնարաւոր լինէր և կարելի է այսպէս ասել. յայնժամ ահա իմ ԲԱՂԴ և ահա իմ ԱՆՄԱՀՈՒԹԻՒՆ այս անցաւոր աշխարհումս կամ որ նոյն է ըսել այս սուտ ու փուճ աստուածի մէջ։

### ՄԵԿՆՈՒՄՆ ՀԱՅՈՑ ՄՐԻՊԱ ԳԻՒՂԷՆ

Տեղէս ելնելով ուղղիս դարձնեմք դէպ 'ի Հարաւ և երեւնիս 'ի Վանս Սուրբ Բարթուղիմէոս Առաքելոյն, ուր հասնելոյ համար 1 $^1/_2$ ժամուան թէև կը կարօտիմք, սակայն մեր սիրտըն մօտ է և հասած, ուրեմն կընամք փոքր ինչ ծանր քայլել տեղագրելոյ ինչ որ այս կարճիկ ճանապարհէն դուրս մերձ կամ բաւական հեռու կը գտնուին։

Սոյն ճանապարհի յԱրեւելակողմն ընտիր կաւճի հանք մի կայ առատ, որմէ երբեմն յայլ և այլ կողմեր կը տանին, 'ի գործածութիւն վարժարանաց և կը գործածեն այնպէս ինչպէս կընդունին բնութենէն, առանց արհեստի մը տակը մտցընելոյ։ Անկէ յառաջ դնալով կը հասնիմք ԱՄՊԻԿ գիւղն, որ ունի աւերեալ եկեղեցի մը՝ հանդերձ գերեզմանատամբն. տեղւոյս բնիկներն այժմ չ'կան, այլ մի քանի տուն Մարական թուռունք կը բնակին, որոնց այցելութիւն մը տալոյ առիթ ունեցած ատենս նժոյգներու խրխինջներն անլսելի չէին հիացեալ Ուղեւորիս ականջին։

Խոնջալիս (խոնջեալ ես). — Սոյն գիւղն ունի մի եկեղեցի թէև լինի ամայի և աւերեալ, կա-

ռուցեալ երբեմն յանուն Ս. ՍԱՐԳԻՍԻ, որոյ տօնին սոյն կողմերու Հայ գիւղացիք ուխտի կը գան և կը յիշատակեն Ս. Սարգիս զօրավարի անունն իւր տկարացած և խնկած տան մէջ:

Ասկէ յետոյ մեր ճանապարհի Արեւմտակողմն կէս ժամ հեռաւոր կայ «Բժնկերտ» ըսուած Հայ գիւղ մը, որ 55–60 տուն բնակիչ ունի և 10 տուն ևս Քուրդ: Հայք այժմ ունին երկու սիրուն եկեղեցի կոփածոյ քարերէ շինուած կաթուղիկէի, առաջին արդէն Հայոց սեփհականն է և երկրորդն ֆրանկի ժամ կանուանեն, որ ըստ աւանդութեան «կառուցեալ է Ս. Բարթուղիմէոս Առաքելոյ վանուց հետ» և թուական չիք:

Ժողովուրդն թէ Հայ և թէ Քուրդ անխըտիր կը դիմեն ֆրանկի ժամը, որ ըստ աւանդութեան «հրաշագործ է» այս առթիւ արտաքինքըն երկիւղ կրելով զայն աւերելոյ հետամուտ չեն լինիր: Գիւղս նոր բացած է գեղջուկ ծաղկոց մը, ուր 30 ի մօտ ուսանողք կը հաւաքուին անորոշ ուղղութեան մը տակ:

Տեղս բաւական անպտուղ ծառեր կան շուք տուող, նոյնպէս առջեւէն կանցնի անուշահամ գետակ մը, որ կը բղխէ մերձակայ լեռներէն, սոյն ջուրն կրնայ ջրաղաց մը բանեցնել:

Ուղինիս յառաջ վարելով կ՚անցանեմք բաւական ընդարձակ և դժուարանցանելի մարգագետինք, կը հասնիմք ի հռչակաւոր վանս Ս. Բարթուղիմէոս Առաքելոյն, որոյ ՏԵՂԱԳՐՈՒ-

*ԹԻԻՆՆ ԵՒ ՆԿԱՐԱԳԻՐՆ արժանի են նոյն իսկ կաղ և միականի Հնդկահայուն ընթերցման ։*

## ԳԼ. ԺԳ.

### ՎԱՆՔ Ս. ԲԱՐԹՈՂԻՄԷՍ ՍՐԲԱԶԱՆ ԱՌԱՔԵԼՈՅՆ

*Սոյն նշանաւոր վանքն կը գտնուի Աղբակ գաւառի կեդրոնական Արեւելը, ուր կը բարձրանայ դէպ 'ի Երկնից կապուտակ կամարն, արհեստական մի բարձր բլրոյ վերայ, ընդարձակ նըստուած քով մը. կառուցեալ կոփածոյ ընտիր քարերէ՝ ահաւոր և հսկայաշէն դիրքով մը ։*

*Հռչակաւոր վանուցս շինութեան թուականն գտնելոյ համար շարունակ հետաքրքրուեցայ, սակայն ես չ'կրցայ հանիլ իմ ցանկութեան, զի չ'տեսի ոչ 'ի քարի, և ոչ իսկ 'ի թղթի, միայն թէ ըստ բանի ծերունի քահանայի մը « այդ յիշատակագիրն կը գտնուի վանուց վաղեմի մեծակամար դրան երկու կողերուն վերայ » ։ Սոյն աւանդութիւնն կը թուի լինել ճշմարիտ, վասն զի արդէն ականատես իսկ եղայ, որ վանքն նախապէս ունեցած է ահագին մեծութեամբ մի դուռ համեմատ ամբողջ շէնքի հսկայութեան, յետոյ ԻՆՉ ԻՆՉ կամ լաւ ևս է ասել երկիւղներէ ոչ բնական շարժեալ, պզտիկցուցած են դուռը մի այլ կամարաւ, որ ծածկած է իւր նախորդը՝ ետև գտնուող կողերովն կամ արեւատես դէմքովն, որ վերայ փորուած պէտք է լինին այդ թանկագին ԳՐԵՐՆ, որք անշուշտ կրկին մի օր, թէ*

ներկայ սերունդն պիտի յաջողի տեսնել զայն թէ չէ, զայդ գիտեմ ես ոչ, որով և չ'կարեմ իսկ այժմէն ձե՞ւ մի տալ, միայն թէ յուսալ, սպասել և մեր Վեհափառ Սուլթանի կենաց համար աղօթել պէտք է, որպէս զի փորձն կարճի ։

Վանուցս շինութիւնն հաւանականաբար չորրորդ դարուն մէջ տեղի ունեցած պէտք է լինի և թերեւս ժամանակակից Ս. ԷՋՄԻԱԾՆԱՅ « մի քանի տարիներու տարբերութեամբ » երբ Արշակունեաց քաջակորովն Տրդատէս զՍ. Գրիգոր ԼՈՒՍԱՒՈՐԻՉ թող տալով հրաման տուաւ և միանգամայն աջակցութիւն խոստացաւ իւրեան այս կողմերը վանօրայք շինել տալոյ ։

Ս. Բարթուղիմէոս Առաքելոյ վանքն, որպէս վերև յիշեցի, կոփածոյ քարերէ շինուած է, ներքին կողմն տարբեր և արտաքին կողմն տարբեր քարերէ բաղկացած, կառուցեալ է շատ հսկայաձև, մի հօյակապ տաճարով. շէնքն կը թուի լինել մեհենական ճաշակաւ և է արդարև բարձրագոյն ճարտարապետութեան մը գործ, ամբողջ գաւառիս հիանալի և միանգամայն անդին հրաշակերտն է Ազգ. Ս. և նուիրական և այժմ ի չնորհս մեր կառավարութեան երկիւղ մը չունի Պարսիկներէն, որպէս երբեմն ։

### ՎԱՆՈՒՑ ՏԱՃԱՐՆ

Վանուցս տաճարն կը բաղկանայ 3 գլխաւոր մասերէ. Ա. միջին մասն, որ է ԱՒԱԳ ՍԵՂԱՆ ։

Բ. աջակողմեան ՀԱԶԱՐԱՊԵՏԻ ՄԵՂԱՆ ։ Գ. ձախակողմեանն՝ մի փոքրիկ մատուռ , ուր է Ս. ԱՌԱՔԵԼՈՑՆ ԳԵՐԵԶՄԱՆ , խնկելի և պաշտելի , որոյ հին տապանաքարին վերայ առանց թուականի գրուած է հետևեալն «Այս է տապան հանգստեան Սրբոյ Բարդուղիմէոսի Սրբազան Առաքելոյ առաջին Լուսաւորչին Հայաստանեայց աշխարհի » ։ Սոյն ամենապարզ տապանաքարի վերայ կայ մարմարինէ մի այլ տապանաքար նոր , որ յիշատակագիրն է հետևեալն « ԹՎԻՆ ՌՄԼԷ , այր Լևոնին յիշատակ է տապանաքարըս , սա է գիւղացի վարդանի որդի Մելիք Սաֆարին 'ի յիշատակ կողակցին՝ ծողկին » ։ Այս տապանաքարն առաջնոյն վերայ եռքէն տըրտրուած է , որպէս կը տեսնուի իւր թուականէն ։

ՎԱՆՈՒՑ ԵԿԵՂԵՑԻՆ

Ս. Բարթուղիմէոսի սոյն վանուց ահարկու եկեղեցին հաստատեալ է 6 կլորակ քարէ սիւներու վերայ , իրարմէ համեմատական հեռաւորութեամբ՝ կանգնած են պարապաց առջև , մէջ տեղերը չկայ սիւն կամ մի այլ յենարան , եկեղեցւոյ ներքին շրջապատը կը զարդարեն յիշեալ 6 սիւներն , որոց վերի գլուխներն հրաշակերտ արուեստիւ կը բարձրանան և կը խառնըւին եկեղեցւոյ հսկայական ԿԱՄԱՐԻՆ , որոյ շինուածքի ճարտարապետութեան և ամրութեան վերայ նայողն արդարև կը հիանայ ու կ'ապշի ,

մի և նոյն տեսակ կամար մը կը կազմէ նաև տա-ճարի ԱՌԱՍՏԱՂՆ ։ Սոյն երկու ներքին կամա-րաց կեդրոնական ուղղութեամբ դէպ 'ի դուրս շինուած են երկու միջակ մեծութեամբ կաթու-ղիկէներ առանց զանգակատան ։

Վանուց շրջապատը ընդարձակ և զարմա-նալի ձևով կերտուած կան պահարաններ, զոր օրինակ պարապաց մէջ անկիւնական տեղուանքն և այլ կողմերը. պարապաց լայնութիւնն ընդհան-րապէս 1¼ մեթրէն պակաս չէ հաստատուն և զօրաւոր, որոց թէ ներսի և թէ դրսի կողերուն վերայ կան քանդակուած բազմաթիւ խաչեր, ոմանք դարաւոր և ոմանք տարևոր թուականներ կրող, զորս ըստ, վաղեմի սովորութեան, բա-րեպաշտ ուխտաւորք փորել տալով օծել տուած են 'ի յաւէրժական ՅԻՇԱՏԱԿ, ուր սիրտեր կը բանտարկուին, հոգիներ կը կապուին և զգա-ցումներ շատ անգամ կը յուզուին նման ովկիանի ։

Վանուցս Եկեղեցւոյ դրան արտաքին ճակ-տի վերի կողմն սքանչելի արուեստիւ ՀԱՅՐ ԱՍ-ՏՈՒԾՈՅ պատկերն, համաձայն Եզեկիէլ մարգա-րէի տեսլեան, առիւծներով և հրեշտակներով փորագրուած է, վարի կողմն Սուրբ Բարթուղի-մէոս տէգն 'ի ձեռին նժոյգ հեծած՝ կ'սպանանէ զվիշապն (որոյ վերայ ետքէն աւանդութեանց մէջ կը խօսուի) ։ Դրան 2 վիթխարի կողերուն վերայ փորագրեալ են վանուց 4 ճարտարապե-տաց պատկերները մեծութեամբ իւրեանց հա-

սակներուն և իւրաքանչիւր ճարտարապետն իւր գործած գործիքն 'ի ձեռին բռնած յարմարական տրիւք կը կենայ , որոց մէջ տեղը կը գտնուի նաև Յովհաննէս Մկրտչի ԳԼՈՒԽՆ և դրան երկու կողմերը 2 մարդ բուռվար 'ի ձեռին։

Սոյն արուեստական նշանաւոր գործն երբ ուշադրութեամբ կը դիտէի , զարմանքս տեղի տուաւ սրտիս մեծ ցաւին տեսնելով որ այդ գեղեցիկ քանդակներն շատ անգամ ընդունած են նաև իրենց վերայ կրակապաշտից հարուածներ , զոր օրինակ ճարտարապետաց ԳԼՈՒԽՆերն կոտըրտուած և պատկերի վերայ մի քանի պատուականապէս արուեստեալ բարակ սիւներն աւերեալ էին ծոխրապաշտից անկարեկեր ձեռքէն և որք թէպէտև վանուցս չքեղութեան և հաստատութեան վնաս մը չեն բերած , այսու ամենայնիւ նոյն դարու արձանագործութեան կամ քանդակագործութեան արհեստի զարգացման աստիճանն մասամբ մը կրնայ մնալ 'ի մթան , որով մեր ներքին մարդն սրտակոտր , որ պիտի յառաջ գնայ հետեւեալ գլխովն ։

## ԳԼ. ԺԷ.

### ՎԱՆՈՒՑ ԵԿԵՂԵՑԻՆ (ՇԱՐ.)

Վանուց աջ թեւն երբեմն երկրաշարժէ վընասուած լինելով նորոգուած է , որոյ նկատմամբ հետեւեալ յիշատակագիրն կայ քարերէն միոյն վրայ , զոր նոյնութեամբ ընդօրինակելով

կը նշանակեմ աստ. « ՌՄ (1200) ամին նորո-գումն եղև Ս. ուխտին իշխանութեամբ Հաքա-րու ( այժմ Հէքեարի ) Եզտին Շէրիֆ Խօսրով փաշային(*) » :

Վանուց ձախակողմեան թևին վերի կողմն կայ նաև հետևեալ անթուական յիշատակու-թիւնն. « Շնորհիւ բարերարին և մարդասիրին, կարողութեամբ Ս. Հոգւոյն շինեցաւ ուխտը Զր-րատին հրամանաւ Փիլիպպոս կաթողիկոսի ձե-ռամբ Ս. Կիրակոս վարդապետի առաջնորդու-թեամբ Ս. ուխտին հոգևոր » :

Սոյն յիշատակագրոյն յարակից երկու կարգ ևս կային, սակայն ափսոս որ եղծեալ լինելով, հակառակ ջանքերուս մնացին անընթեռնլի :

Հռչակաւոր մենաստանիս մեծ կաթուղիկէն նորոգուած է նախորդ վանահայր հանգուցեալ (8–9 տարի առաջ) Եղիազար վարդապետի օրով, որ 18 տարի վանահայրութիւն ընելով՝ ամենա-մեծ խնամ տարած է վանուցս շինութեան, պայ-ծառութեան և բարեկարգութեան (սոյն լուսա-հոգի վարդապետի յիշատակն օրհնութեամբ լը-սեցի Աղբակու բոլոր Հայոցմէ) :

(*) Սոյն Խօսրով փաշան նոյն թուականին գաւա-ռիս կառավարիչն եղած է, որոյ դերեզմանն Պաշգա-լէի (որ վերայ ի կարգին խօսուած է) յԱրևմտակողմն 4 ժամ հեռու Փիղան անուանեալ քաղաքին մէջ կը գտնուի, ո՛ւր երբեմն բազմաթիւ Հայք կը բնակէին և այժմ մի քանի տուն Քուրդ միայն :

Վանուցս արտաքին շրջապատի պարիսպ-ներն դարձեալ հսկայ և միանգամայն պաշտպա-նողական դիրք ունին և անզօր չեն ։

Ս. Բարթուղիմէոս Սրբազան Առաքելոյ սոյն հռչակաւոր վանքն ունեցած է երբեմն արտա-քոյ կարգի պայծառութիւն և դարձեալ արտա-քոյ կարգի անշքութեան հակապատկեր թուա-կաններն , որոց վերայ ներկայիս մէջ լռութեամբ անցնիլ պարտաւորեալ եմ, զի մի դուցէ շրջանս ընդլայնելոյ ունեցած փափաքովս ինքզինքս դը-նեմ յանդէտս անել շաւղի մը մէջ , որ կրնայ տակաւին գարուն կենացս վերջի դատակնիքն համարուիլ և չ՚կարողանամ խլրտիլ ։

Այս վանուց համար իմ ցաւոտ սիրտն չատ ցաւած է ընդդէմ արևապաշտ ազգին ։

Ծերունիքն արդէն պարծենալով կը պատ-մեն թէ « ՄԵՐ Ս. Բարթուղիմեոս բազմաթիւ միաբանական ուխտ ունեցած է հանդերձ հա-րուստ և ճոխ պարադաներով » ։ Ականդութիւ-նըն կը յաւելու թէ « սակէ 70–75 տարի յառաջ Իսրայէլ անուամբ եպիսկոպոսի օրով , ( զոր թերևս տեսնողներ կան դաւառիս մէջ) 13–15 վարդապետ և ըստ այնմ մենաստանցիք դըտ-նուած են եղեր աստ . նոյն թուականէն սկսեալ օր ըստ օրէ կը նսեմանայ մեր մեծ Առաքելոյ ՇԷՆ ՏՈՒՆՆ և կը հասնի այս ողբալի վիճակին , որ դարձեալ ամենափառաւոր վիճակն է բաղ-դատելով մերձակայ անցելոյն հետ ։

* * *

Այրին մեր պարսկահայ եղբարք, որ վանուցս կրած զառնութիւնք ամոքեցին և վանքն վերստին ելեմոից բնակավայր ըրին ու Պարսկաստանէն հասան վերստին օգնութիւնք ամեն տեսակէն, որով փոքր ինչ մխիթարութիւն զգեցաւ Ս. Առաքելոյն վանուց . . . վիճակը։

Երկու տարին մի անգամ յատուկ նուիրակ կը խրկուի ի Սալմաստ, յորմէ պտղաբեր ուխտաւորք ևս ամեն տարի չեն պակաս։

Վանքն ունի եզական տեսարան, պատուական օդ, ջուր, ընդարձակ մարգագետինք և դաշտօրայք։

Մենաստանիս անմիջական քովը 20 տնէ բաղկացեալ Հայ գիւղ մի կայ, որոյ բնակիչք «Վանքցի» կըսուին, վասն զի գիւղն Ս. ուխտիս սեպհականութիւնն է։ Նմանապէս 25–30 տուն քուրդեր կը բնակին, նոքա ևս Վանքցի կ՚անուանին, զի նոքա ևս նման են առաջնոյն։ Առաջ տեղւոյս Հայ բնակութեանց թիւն 75 էր, որ պակսելով կամ ցամքելով 20 ի իջած է։

Այժմեան երկու մասն գիւղայիք՝ վանքցի Հայք և վանքցի Քուրդք, առանց ամենափոքր բացառութեան, կապրին վանուցս հողերովը և ջրերովը, ինչպէս նաև ԿԵՆՍԱՏՈՒ ՕԴՈՎ և այս դրութիւնն թերևս դարաւոր իսկ լինի։ Ամենազօրաւոր ջանքեր պէտք են, որպէս զի կարելի լինի յիշեալ Քրդաց ձեռքէն վանուց սեպհական հողային կալուածներն ետ առնուլ։

Սոյն տարասեռ բնակիչներն վանուցս ներքին գործերուն խառնուելոյ չափ յառաջ կերթան երբեմն, պատճառելով թէ վանքն Ձերն ալ է, ըստ որում մեր պապերն ժամանակին եթէ մենաստանս չպաշտպանէին ընդդէմ ներշնչաց, այժմ քար քարի վերայ չէր մնացած»:

Պատրիարքարանի յատուկ ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ կը հրաւիրեմ սոյն ամենակարեւոր կէտի վերայ, որով և Ս. Բարթուղիմէոս վանուց վերայ, որ Աղբակ գաւառի հոգին և սիրտն կը կը կազմէ, ու Ազգին կրնայ ամենամեծ ծառայութիւն մատուցանել բարոյական տեսակէտով:

Վանուցս տարեկան հասոյթն 150–200 ոսկի կը լինի, նոյնչափ ալ ծախք. սակայն եթէ օրինաւոր վիճակի մէջ դրուի և տնտեսագիտաբար մատակարարութիւն մը ձեռք առնուի քանի մը անգամ 200 ոսկի պիտի գոյանայ, որով վանքն կը լինի համայն գաւառիս լուսաւորութեան կեդրոն մը կամ լուսատու Արեգակ մը, որոյ շառաւիղներն թերեւս Պարսկաստանի (որմէ 5 ժամ հեռու է) մեր համարիւն եղբարց եւս հասնի և զանոնք ջեռուցանէ Ազգի և Հայրենեաց սիրով, յայնժամ միայն իւր հիմնարկութեան ՍՈՒՐԲ նպատակին իրապէս ծառայած կը լինի և պատիւ կը բերէ մեր Բարեխնամ Տէրութեանն և Մեզ:

## ԳԼ. ԺԶ.

### ՍՈՎԵԼՈՑ ԽՆԱՄՈՂ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎՈՅ ՁԱՆՔԵՐ

1878 ին, Սովելոց խնամող յանձնաժողովոյ

կողմանէ եկաւ, իբրև քննիչ, ի Հայս (ի Վան) Մեծ. Մերովբէ էֆէնտի Գույումճեան, որ Վանէն յԱղբակ մեկնելով այցելութիւն մը տալ ուխտ կունենայ Ս. Բարթուղիմէոս Առաքելոյ ՏԱՆ. գաւառիս Հայոց և միանգամայն վանուցս ամենատխուր վիճակն տեսնելով կուղէ սոյն կարեկցութեան արժանի երկրին բարիք մի ընելոյ միջնորդ հանդիսանալ: Այս ատեն Աղեքսանդրապօլցի Գեր. Դանիէլ վարդապետ Թօսունեան՝ միաբան Վարայ ուխտին, աստ կը գտնուի, իբրև նախագահ տեղւոյս բնակչաց ցորեան բաշխել տալոյ: Սոյն պատուական վարդապետն տեսնելով յիշեալ բարեսիրտ էֆէնտիին բարի և ազգօգուտ տրամադրութիւնք ու գեղեցիկ խորհուրդներ, երկրի ժողովրդեան հետ, համաձայն բաղձանօք, խնդրագիր մի կը մատուցանեն յիշեալ էֆէնտիին, խնդրելով որ Աղբակ գաւառիս ամենամեծ բարիք մ'ըրած կը լինի, եթէ վանուցս մէջ մի դպրոց չինել տայ չնորհիւ Սովելոց յանձնաժողովոյն, որով և Ազգին յաւիտեան կը լինին երախտապարտ: Ընդ այս՝ Գեր. Դանիէլ վարդապետն 12 հատ գիշերօթիկ աշակերտներ պահելոյ ուխտ կընէ, իբրև իւր նուիրական պարտիք:

Վերջապէս Գույումճեան ազնուահոգի և Հայրենասէր այցելուն կը գրէ 'ի Պօլիս, առ Սովելոց խնամող յանձնաժողովն և 200 ոսկիէ աւելի գումար մը բերել տալով՝ չինել կը տայ

վանուցս մէջ կրթական գեղեցիկ շէնք մը, որ կը բաղկանայ 6 սենեկէ, յորոց մին ննջարան՝ գիշերօթիկ ուսանողաց համար, մի թանգարան և մի տեսչարան ու երեք դասարան։ Ամենքն շինուած են քառակուսի դրիւք, մեծութեամբ միջակ և բաւական ճաշակաւոր կառուցմամբ։ Ցետ այսորիկ վարժարանն կը բացուի, ուսանողք կը հաւաքուին, դէպքերն իրարու կը յաջորդեն վերջապէս դպրոցն կը գոցուի և այժմ դրօքն փակելօք կը կենայ։ Անցած տխուր անցքերու նկարագրութիւնն տեղագրութեանցս նպատակէն դուրս ելնելով կը թողում արտաքին տեսութեանց մէջ, զորս կը յուսամ ընելոյ առիթ ունենալ։

* * *

Աղբակ գաւառի Ս. Բարթուղիմէոս Առաքելոյ սոյն հռչակաւոր վանքն, որպէս վերև յիշեցի, ազգային և բարոյական տեսակէտով արժանի է ամենամեծ ուշադրութեան, սակայն ինձ համար ցաւ է աստանօր չեչտելով ըսել թէ ահա ուշադրելին, ո՞ւր է ուշադիրն, ահա գործ և ո՞ւր է գործողն։

Մենաստանիս փառքն եթէ վերանորոգի, ոչ թէ միայն Ազգի պատմական կենաց նոր փայլ մի կը տայ, այլ նաև մեծ պարծանք կը բերէ Օսմանեան մեծազօր գահուն, որոյ հովանեաց ներքև կը գտնուի և որ կը ծառայէ Երբեմն Թէ++էէ տեղւոյ։

* * *

Վանքս անտանելի անցքեր կամ բաժակ-ներ անցուցած է , բայց այժմ ուրախ եմ ըսե-լոյ որ բաւական հանգիստ կենաց մէջ մտած լինիլ կը թուի 'ի շնորհս կառավարական ջանից :

Ազգային գոյութեան այս ՏԱՆ հողային կալուածներու վերայ փոքրիկ գաղափար մի տուած լինելոյ նպատակաւ պէտք է ըսել որ իւր սեպհական հողերու տարածութեան շրջա-պատն 4 ժամ կը տեւէ , ձիու միջակ քայլերով. ունի ջրարբի ընտիր արտօրայք : Վանուցս յԱ-րեւելակողմն 5–6 քառորդէց հեռու կ'անցանէ գաւառխ գետն , որ ստուգիւ Աղբակու Նեղոսն է և ամենամեծ բարիք կը մատակարարէ երկրի բնակչաց , զորս խորել չ'գիտեր բնականէն , որ-մէ մարդիկ օրինակ առնելոյ պարտքեր չունի՞ն դարձեալ բնականէն :

Վանքն կորուսած է իւր 10–12 տարի յա-ռաջ ունեցած ներքին հարստութիւնն , այժմ հազիւ ունի 120–150 ոչխար , ( որմէ 1500 հատ պահելոյ արօտատեղիք չեն պակսիր ) մի քանի գոմէշ , եզ ու փոքր կով և այլն :

Պարսկաստանէն վանուցս համար ընծայ ղրկած են մի գոմէշ , որ ձիւնի նման սպիտակ է ամբողջովին , այլ մեզ , որ այդ օրինակ հազ-ուագիւտ և սիրուն կենդանեաց արժէքն չեն գիտեր , որոց վերայ կը նային իբրև հասարակ կենդանեաց վերայ : Արդասաւոր հողերն օրի-նաւորապէս արդիւնաւորելոյ համար դարձեալ

կը պակսի ՄԱՐԴ , որոյ տեսակի ոգին ամէն կողմերն ընդհանուր է ՀԱՅԱԲՆԱԿԻ գաւառաց մէջ։

* * *

Մ. Բարթուղիմէոս վանուց վանահայրութիւնն բաւական տարիներէ 'ի վեր երբեմն վիճակի մ'ենթարկեալ է , կռիւք և անհամաձայնութիւնք միշտ անպակաս , մինթէ չ՛գտնուիր արժանաւոր Վանահայր-Առաջնորդ , 'ի պակաս Աղբակու անհովիւ ժողովրդեան բաղձանաց , 'ի խաղաղութիւն գժտեալ մարդոց և 'ի միութիւն անջատեալ սրտերու ։ Ահա Գեր. Երեմիա Եպիսկոպոս՝ այր պատկառելի և արժանաւոր Վանահայր-Առաջնորդ Աղբակու երկրին , շատերու հետ ես ալ կը զարմանամ թէ Ազգային Վարչութիւնն էր կանգխտանայ այս արժանաւոր պաշտօնութիւն և չտեսներ . Գեր . Տէր Սարգըսեանց՝ այդ փորձառու Եպիսկոպոսն ։

* * *

Հռչակաւոր մենաստանիս Առաքելական խնկելի տապանին իմ վերջի հրաժեշտի համբոյրըս տակաւին չ'տուած և մեկնելէս առաջ նըշանակեմ հետեւեալ աւանդութիւնք , յորս Առաքելոյն սպանման և վանուցս շինութեան պարագայից վերաբերմամբ իրարմէ ինչ ինչ կէտերով կը տարբերին . մեք զայնս ճշդիւ կը նշանակեմք , որպէս առած եմք ժողովրդեան անգիր մաքէն(*) ։

* * *

(*) Սոյն աւանդութեանց մէջ մասնաւոր տեղերու

## ԳԼ. ԺԸ.

Վանուցս նկարագրումք եղած աւանդութեանց իւր հիմ-նարկութենէն առաջ :

« Ս. Բարթուղիմէոս Առաքելոյն վանքն տակաւին չ'կառուցուած՝ Ուրփանոս կամ Արփանոս մի նշանաւոր քաղաք եղած է աստ և ըստ ամենայն հաւանականութեան կռապաշտ բնակչօք և անորոշ հաւատալեօք :

« Սրբազան Առաքեալն Բարթուղիմէոս իւր ժամանակին կը գայ իւրեան վիճակեալ Աղբակու սոյն գաւառն զՔրիստոս քարոզելոյ , 'ի կռապաշտից կը նահատակուի 'ի Խանասոր (կարմիր քաղաք , թերևս քրիստոնէից թափած կարմիր արիւնէն այդ անունն ծնած լինի) , սակայն տակաւին 'ի Խանասոր չ'գնացած՝ աստ Արփանոս քաղաքի մէջ բազմաթիւ կռապաշտներ կը դարձնէ 'ի Քրիստոս Յիսուս և ապա տեղէս կը մեկնի 'ի Խանասօր » (*) :

---

կրկնութիւնք պահած եմք դիտմամբ որ ուշիմ բանասիրաց ուրոյն ուրոյն թերեւս լոյս տալու բնութիւն ունենան :

(*) Սոյն քաղաքն այժմ աւերակ է եւ կը գտնուի Մենաստանիս Հիւսիսային Արեւելը $3^1/_2$ ժամուան հեռաւորութեամբ , ո'ւր պակաս չեն հնութեանց բեկորներ , զորս անձամբ տեսնելոյ բաղդ չունեցայ երկիւղի տագնապէն , զոր յառկապէս ազդարարեցին առ ի ըղ-դուշութիւն , թէպէտեւ ես էի զինեալ եւ երկու ընկերքս ինձ նման :

«Առաքեալն Բարթողիմէոս քրիստոնէական առաքինութեամբ և անձնուիրութեամբ զինեալ՝ կը գայ յիշեալ կարմիր քաղաքն և որպէս յիշուեցաւ, անդ կը նահատակուի, որոյ մարմինն տեղւոյ կռապաշտից դերեզմանոցէն հեռու մի որոշ տեղի կը թաղեն 'ի նախատինս, այսինքն իբրև անարժան իւրեանց մեռելոց հետ ապրելոյ: Արիփանոս քաղաքիս բնակիչք, որք քրիստոնեայ եղած էին, նախապէս առաքելոյն քարոզութեամբ, երբ կը լսեն՝ շատ կը ցաւին և խորհուրդ ընելով մարդ կը խրկեն Առաքելոյն մարմինն Խանասօրէն գողնալու, և յիրաւի կը յաջողին և աստ բերելով կը թաղեն զանի այժմեան վանուց տեղն և յետ այնու կը յարգուի յամեն քրիստոնէից և զգուշութեամբ կը պահպանուի, որոյ դերեզմանին վրայ կը տնկեն կըլոր քար մը, ոյր վերայ նշան կը դնեն անկորըստականութեան: Այսպէս կը պահպանուի ց'ժամանակն Ս. Գրիգոր Լուսաւորչի, որ երբ այս կողմերը կը գայ և Առաքելոյն դերեզմանն կ'ըստուգէ, յայնժամ հրաման կընէ տեղւոյս դարձած քրիստոնէից և յանուն Առաքելոյն այժմեան հոչակաւոր վանքն շինել կը տայ:

Հետևեալ աւանդութիւնն նախորդէն ունեցած աւելի հետաքրքրութեան և տարբերութեան պատճառաւ կը նշանակեմ աստ:

* * *

Նախատարողութիւն Ս. Առաքելոյն յԱրիփանոս գաւառէ .

« Ս. Առաքեալն Բարթուղիմէոս Պարսկաստանէն ( ուր Վառվառինէի հետ գնացած էր , որպէս յիշուած է վերեւ) կը վերադառնայ 'ի Բժնկերտ , Արիփանոս քաղաքին մօտ . Բժնկերտ գիւղն , ինչպէս յիշած եմ Արիփանոսէն (վանքի տեղէն) $1/_2$ ժամ հեռու կը գտնուի ։

« Առաքեալն սոյն տեղէն սկիզբն կառնու գաւառիս մէջ քրիստոնէութիւն քարոզելու ։ Առաքեալն աստ գիւղին մէջ ցորեկ ատեն մը կը տեսնէ որ մի քանի մանր տղայք շրջանակի ձեւով վէգ (աշըխ) կը խաղան , ինքն ևս մանկական բնաւորութեամբ մը 'նոցա հետ ընկերանալ կուզէ , և մանուկներն զինքը կընդունին ու երբ կը տեսնեն քաղցրախօս օտարական մը , իբարու իմաց կը տան և նորէն աւելի բազմութեամբ կսկսին եռանդալից խաղերնին , որոյ մէջ երբ կարգն Առաքելոյն կը գայ , նա զվէգն նետելէն առաջ « ով Քրիստոս » խօսքն կ'արտասանէ , որով վէգն միշտ ճուկ (յաղթող) կողմն կը գայ և միշտ տղայոցմէ կը շահի , այնպէս որ ինքըն « ով Քրիստոս » խօսքովն անոնց մէջ ամենէն բաղդաւորն կերեւի ։ Տղայքն զայս տեսնելով իրենք ևս կսկսին վէգերնին նետած ատենը « ով Քրիստոս » արտասանել , որով իւրեանց համար ալ բաղդի յաջողութեան դուռն կը բացուի և վերջապէս ամենքն ալ կ'սկսին նոյն խօսքն արտասանել , վասն զի արտասանողն կ'օգտէր

'ի խաղին և կը լինէր բաղդաւոր ։

«Այս պահուն, մանուկներու հայրերէն ոմանք տեսնելով կը յանդիմանեն զտղայս ըսելով թէ «այդ անունն (ով Քրիստոս) մի՛ տայք»(*)։ Մանուկներն կը պատասխանեն թէ «կը շահիմք խաղերնուս մէջ, այն պատճառաւ «ով Քրիստոս» կը կանչեմք ։ Այսպէս ահա տղայք մոլիկ չէին ըներ իւրեանց հարց, սակայն ի հարկէ ստիպեալ պահ մը այդ անունն չ՚տուլին և երբ հայրերն հեռացան դարձեալ սկսան կոչել «ով Քրիստոս». զի այդ երկու բառին մէջ իւրեանց փնտռածն կը գտնէին» ։

«Յաջորդ օրն Ս. Առաքեալն կսկսի զծերս համոզել և զմեծս յորդորել 'ի դարձ Քրիստոնէական կրօնին ։ Մի օր Առաքեալն յանկարծ տըխուր լալու մը ձայն կառնու գիւղի միւս ծայրէն, հոն կերթայ և կը տեսնէ որ ծերունի մը դառնագին կողբայ զիւր նոր մեռած զաւակն և արտասուելով կաղաղակէ թէ «թող ես մեռնէի և տղաս ողջ լինէր» Առաքեալն, հոգւոց հանելով, «մի՛ լար կըսէ, ով ծերունի, յոյս ա՛ռ, զի պահ մ'ետք պիտի ցամքին աչքիդ արտասուքն և կը տեսնես զաւակդ ողջացած». զայս ասելէն ետքն Առաքեալն կը հրամայէ որ զմեռեալն գիւղիս առընթեր գետոյ ջրովն լուանան իւրեանց մանուկներու 3–4 օր առաջ խաղի մէջ արտասա-

(*) Ըստ որում Քրիստոսի անունն շատ ատելի էր օձապաշտից մէջ այն ժամանակն ։

նած անունն տալով (ով Քրիստոս), կընեն ըստ բանի Առաքելոյն և զմեռեալն նոյն գետոյ ջրովն կը լուանան․ տղան տակաւին մեռեալ է, իսկ երբ « ով Քրիստոս » կը հնչեն յայնժամ երիտասարդ-մեռեալն հրամանաւն Աստուծոյ աչերն կը բա-նայ, իբրև քունէ զարթեալ։ Նոյն հրաշից առթիւ բազումք 'ի կռապաշտից կը դառնան 'ի Քրիստոնէութիւն և ոմանք ևս ի քրմաց կսկսին հակառակիլ ըսելով թէ « տղայն արդէն ծանրա-պէս ննջած էր կամ ուշաթափ եղած և անոր հա-մար աչքն բացաւ և ոչ թէ ողջացաւ »։

Այս հրաշից պատճառաւն գետիս անունն « բժիշկ գետ » կոչուեցաւ, (որոյ աղաւաղեալն է այժմեան « բժնկերտ ») որոյ անուամբ մկըր-տուեցաւ նաև քովի գիւղն, որ ց'արդ իւր գե-տոյ հետ կայրի, «որոյ վրայ արդէն խօսուած է»։ Նկարագրեմք հետևեալ կտորն և ապա շարու-նակեմ մեր աւանդութիւնք՝ ժողովրդական ան-գիր պատմութիւնք։

## ՎԻՇՊՈՒ ՀԷՐ (ԱՅՐ)

«Վիշպու հէր» կոչուած քարանձաւ մի է կէս ժամէն քիչ մը պակաս հեռաւորութեամբ դէպ ի վանուցս Արեւելահիւսիս։ Նոյն քարայրն, կա-րելի է ասել, բնութեան ճարտարութեամբն ե-ղած է քան մարդոցն․ քարայրի ներսի ճակտին վրայ կան կարգ մ'անընթեռնելի գրեանք, ինչ-պէս նաև մի քանի աննշան խաչեր փորուած։

Աւստաղէն դարաւոր ժամանակներուն հան-
քային ջրեր վազած կերեւին , զորս բնութիւնն
քարացնելով գեղեցիկ ջահեր կազմած է լուլայ
լուլայ կախուած . տակն կայ մի այլ սենեակ ,
կիսով չափ հողերով լի ։

Սոյն քարայրի սենեկին նայելով և ըստ ա-
ւանդութեան թուի լինիլ կռապաշտից դիցա-
րան և երբ Քրիստոնէութիւն մուտ կը գտնայ
և 10-15 տարիէն յետոյ կը չինուի Սուրբ Բարթու-
ղիմէոս Առաքելոյ այժմեան վանքն , յետ այնու
վանուց կրօնաւորաց կամ ճգնաւորաց աղօթա-
տեղի կը լինի , իբրև բնակութենէ հեռու կըղզի-
ացեալ տեղի , որպէս իւր տեսանելի նշաններն
ցոյց կուտան և կ'ստուգեն սոյն կարծիքը ։

## ԳԼ. ԺԲ.

Նախորդով յիշուած քարայրին վերայ հետեւեալ ա-
ռասպելական մասն կըցել անհրաժեշտ է ։

« Սոյն այրի մէջ գաւառիս Աստուածն՝ ե-
րեւակայելի վիշապ մը , վիթխարի մեծութեամբ
կամ նմանօրինակ օձ կը բնակէր ժամանակին » ։

« Աղբակ գաւառի բոլոր գիւղօրէից ժողո-
վուրդն կարգաւ օր մէկ պարարտ մանկիկ յատ-
կացուցած էին սոյն վիշապուն 'ի կերակուր . ան-
գամ մը Բժնկերտ գիւղի Հայերէն մին զիւր
« Սուրմէ » անուամբ աղջիկն առած կը տանի
զաղանին կերակուր ձգելու և ճանապարհէն
անցած ատեն Առաքեալն կը տեսնէ զայս , կը

բարկանայ և երկնից վրէժխնդրութեամբ լեց-
ուած՝ զմանկիկն Սուրմէն իւր հօր ձեռքէն կը
խլէ, ու կը բռնէ ձախ թեւին տակն ու աջ ձե-
ռքին եւս մի երկայն տէգ բռնած՝ կը յառաջանայ
դէպ 'ի վիթխարի գազանն, որ զԱռաքեալն տես-
նելուն պէս փախուստ կը տայ դէպ ճանապար-
հաւն ի յԱտէս գիւղն, որ կը գտնուի ի Հիւսի
սակողմն վանուց և անկէ 4 ժամ հեռու է։
Սրբազան Առաքեալն 1/2 ժամու չափ ճանա-
պարհ զՍուրմէն թեւին տակ ու տէգն 'ի ձե-
ռքին կերթայ վիշապու ետեւէն մինչև որ կը հաս-
նի ձորի մը մէջ գիւղ մը, զոր այժմ Խաչնոց կը
կոչեն (որոյ վրայ խօսուած է)։ Տեղւոյս բնակիչք
զարմացմամբ կը տեսնեն իւրեանց Աստուծոյն
փախուստն և զանի փախցնող օտարական մարդն
(Առաքեալ), որ երբ Խաչնոցի գիւղացիք կը
տեսնէ, զՍուրմէն (փոքրիկ աղջիկն) կը բարձրա-
ցընէ ըսել ուզելով թէ եկէ՛ք ձեռքէս առէ՛ք և
երբ կը գան առնել, Առաքեալն զՍուրմէն յանձ-
նելու ատեն անոնց կը պատուիրէ ըսելով թէ
« պահպանեցէ՛ք խնամօ՛ք զայս մանկիկ, մինչև
որ ես զայս անիրաւ գազանն սպանանեմ և վե-
րադառնամ առնուլ զՍուրմէն »։

« Առաքելոյն մեկնումէն ետքը Խաչնոցցիք
խորհուրդ կընեն իւրեանց մէջ թէ որովհետեւ
այս տղուն տէրն (Առաքեալն) զմեր Աստուած կը
բարկացընէ և անոր ետեւէն ինկած կը փախցնէ,
ասոր համար օր մը չէ օր մը պիտի վերադառ-

նայ Հէշտոն յիւր այր ու տեղէս անցանելոյ ատեն զմեզ պիտի ուտէ, ուստի զայս տղայն չարաչար մեռցնեմք, որով կարենամք մեր Աստուծոյն (վիշապուն) սիրտն առնուլ. այս ըսելով սաստիկ տաք ջրոյ մէջ չարաչար կը խաշեն զմանկիկն Սուրմէն: Ահա այս պատճառաւ գիւղս խաշնոց անուանեցաւ այսինքն խաշելոյ տեղի և ոչ թէ ոչխարի բնակավայր:

«Առաքեալն զվիշապն կը քշէ և կը տանի մինչև վերոյիշեալ Ատէս գիւղն (*), ուր զիւր տէգն կը շուլուլէ (կը մխէ) գազանին սիրտը, և այն վայրկենին Աստուծոյ հրամանաւ վիշապն կը դառնայ քար»:

* *
*

Ահա պատմեմ այժմ սոյն վերջի աւանդութեան ենթակայն. որպէս թէ վերոյիշեալ վիթխարի վիշապն եղած լինի, որ այժմ քարացեալ կը կենայ Ատէս գիւղի մէջ: Սոյն քարացեալ կենդանին կը նմանի ահագին օձի մը, որ իւր մեծութեամբ զարմանքներ կը շարժէ, երկայնութիւնն 10–12 մեթր, բարձրութիւն $2\frac{1}{2}$–3 մեթր կը լինի. վիշապն կամ առասպելական աւանդութեամբ բռնաւորեալ վերոյիշեալ գազանն իւր երկայնութեամբ և վիթխարի դիրքով ինկած է աջ կողման վրայ և աջ ականջն գետնի մէջ թաղուած է, իսկ ձախին մէջ խոտ կը դիզեն, զի այն-

(*) Ասորի գիւղ մի է 20 տնէ բաղկացեալ, շինուած մի աւազուտ տեղւոյ վրայ:

չափ ընդարձակ է . գաղանանման սոյն քարի փորը մի քանի մարդ կրնայ պարունակել, ոմանք իսկ ոտքի կենալով. ահա մի հետաքրքիր հընութիւն բեռնաւորեալ առասպելօք :

Քարն է թխագոյն և կակուղ, զոր թէ գաւառիս Հայք, թէ տեղւոյ Ասորիք և թէ Քուրդք սոյն քարին մի և նոյն անունն կը տան, զոր օրինակ Հայերն զքարն կանուանեն «Վիշապու քար» . Քուրդերն «Էժտահարէ տէրայ Ալպակէ» . «Աղբակու վանուց վիշապու քար» . վանքն Առաքելոյն փոխան առնելով, Ասորիք ևս իւրեանց լեզուաւ զնոյն կանուանեն » :

## ԳԼ. ԺԹ.

Ս. Բարթողիմէոս Առաքելոյն սպանման պարագայից և յանուն իւր կառուցեալ վանուց շինութեան վրայ եղած աւանդութիւն :

Բարթուղիմէոս Առաքելոյն յետ սպանանելոյ զերևակայեալ վիշապն կը վերադառնայ յՈւրփանոս կամ Արեփանոս ըսուած քաղաքն (այժմեան վանուց տեղին և իւր շրջապատն), ուր բազմաթիւ կռապաշտներ 'ի Քրիստոնէութիւն դարձնելէն զկնի 'ի միացեալ կռապաշտից կ'սպանուի և կը թաղուի հիմակուան վանուց տեղը : Տեղւոյս ծածկահաւատ քրիստոնեայք գիշեր մը գաղտնապէս գերեզմանն կը բանան և զառաքելոյն ծնօտն և աջ թևն առնելով խնամօք կը պահպանեն հողէ ամանի մը մէջ :

Ժամանակէ մը յետոյ Տրդատ Թագաւորի որդին կը բորոտի և ոչ մէկ բժիշկ կրնայ իրեն դարման մը գտնել։ Տրդատայ որդւոյն ձին և որսորդութեան շուն (բարակ) ևս իւրեանց տէրոջմէն կը բռնուին և այսպէս իրենք ալ կը լինին անդարմանելի բորոտ։ Այս պատճառաւ որդին Տրդատայ կառնու զիւր բորոտեալ նժոյգ և զնոյն որսաշուն կելնէ յաշխարհէ յաշխարհ ման գալ դարման մը գտնելոյ յուսով։ Երբ կը գայ աստ 'ի յՍուրփանոս քաղաք, տեղւոյս բնութիւնն սիրելով 20–25 օր կը կենայ, այս միջոցին իւր որսաշուն մի օր ցորեկուան տաքութեան ատեն կերթայ վանուց հիւսխակողմն աղբերակի (*) մը ցեխերուն մէջ կը թաւալի և ապա երբ Արևու կիզմանէն նեղուելով կերթայ մերձակայ գետոյ մէջ լաւ մը կը լողանայ, վրայի աղտոտութիւնքն ջուրէն կը մաքրուի ու կը վերադառնայ առ իւր արքայազուն տէր, որ զինքն տեսնելուն պէս կը հետևի իւրեան օրինակին և առաջին անգամ փորձն իւր նժոյգին վերայ կընէ, երբ կը տեսնէ որ նա ևս սրբուեցաւ, ինքն՝ Թագաւորի որդին ևս մի և նոյն գործողութիւնն կընէ հետևելով, որպէս ասացի, իւր կենդանեաց օրինակին. վերջապէս բոլորովին կը սրբուի իւր անբուժելի բորոտութենէն։

(*) Սոյն աղբերակի տեղին այժմ ցոյց կը տրուի եւ կանուանի «աւազան», զոր ինձ ցոյց տուողներէն մտիկ ըրի սոյն աւանդութիւնն։

«Արքայորդին տեղւոյ ժողովրդոց հարց ու փորձ կընէ ըսելով թէ «այս ինչ ջուր է» (աղբերակին համար), կը պատասխանեն թէ՝ այս ինչ տարին երբ Բարթուղիմէոս Սրբազան Առաքեալն սպանեցին, որոյ մարմինն այս ինչ տեղ (այժմեան վանուց տեղին ցոյց տալով) թաղեցին, այն օրէն 'ի վեր այդ ջուրն բղխած է և կըսեն թէ անոր գերեզմանի տակէն կը գայ այդ ջուրն, առ այս կը յաւելուն նաև ըսել թէ «Առաքելոյն ծնօտն և աջ ձեռքը հողէ աման մը մէջ քովերնիս կը պահպանեմք խնամով». այս խօսքին վրայ արքայազն անմիջապէս գերեզմանն բանալ կը տայ և ձեռք կտրած ու ծնօտ առնուած տեսնելով կը հաւատայ. յետոյ Առաքելոյն յիշեալ մասունքներն ամփոփող հողէ ամանն բերել տալով ստուգելէն յետոյ՝ արծաթեայ տուփի մը մէջ ծրարած, վերստին կը յանձնէ ջերմեռանդ քրիստոնէիցն:

«Ահա ասոր վերայ որդին Տրդատայ իւր հօր կը գրէ, որ զօրք խրկէ իրեն, որպէս զի ինքն կարող լինի Առաքելոյն գերեզմանին վերայ վանք մի կառուցանել, վասն զի տակաւին բազմաթիւ կռապաշտներ կային, որոնք կընային մեծ արգելքներ յարուցանել շինութեան գործին դէմ: Այս եղանակաւ Տրդատայ որդին կառուցանել կը տայ վերոյիշեալ հռչակաւոր վանքն, որոյ աւարտման առեններ Տրդատ և Ս. Գրիգոր Լուսաւորիչ կը գան տեսնելոյ և շատ կը հաւնին

ու Թերևս նաւակատեաց հանդէսն 'ի միասին կը տօնեն »:

Այժմ, որպէս վերև յիշուեցաւ, «Առաքելոյն ծնօտն 'ի սնտկի ամփոփեալ իւր դերեզմանին մէջ թաղուած է» իսկ աջ ձեռքն «տարուած է ի Պարսկաստան Սալմաստ քաղաքին մերձ՝ Համթուան գիւղի Ս. Գէորգ եկեղեցւոյն մէջ կը պահուի»:

*

* *

Սօրատէրոյ Ս. ԷՋՄԻԱԾԻՆ վանուց նախակառուցման վերայ քօթրէկ աւանդութիւն մը:

«Միկալ իշխանն երբ կսպանանուի, իւր գանձերն ծածուկ պահուած կը մնայ բերդի ներքև (այն աւերակն, որոյ վերայ նախապէս խօսուած է) և Վառվառինէն զտեղին գիտէր իւր հօրը գանձուն ու սպանուելէն առաջ պատմած կը լինի Պարսկաստանի քրիստոնէից, որոնք յորդոց յորդիս իրարու կաւանդեն և յետոյ տարիներ անցանելով՝ երբ կ'աւարտի Ս. Բարթուղիմէոսի վանուց շինութիւնն, յայնժամ քրիստոնէից մէջ խորհուրդ կը լինի ու լսած և պահած աւանդութեան համաձայն երթալով կը գտնեն Միկալ իշխանի գանձերն, որովք կը շինեն այժմեան վանքըն, 'ի ձեռն Բարթուղիմէոս Առաքելոյ վանուց ճարտարապետի աշակերտին և զոր կանուանեն «Ս. Էջմիածին» կառուցանելով ճիշտ այն տեղը, ուր «Վառվառինէն տեսած էր զՄիածին և

ղէսր մայրն Առաքելոյն աջ ու ձախ կողմերը »։

Սոյն Էջմիածին վանուց ձախակողմն խորան մի կայ, որոյ մէջ կը տեսնուի անյիշատակ գերեզման մը, որ վերաբերութեամբ կաւանդուի թէ « Քրիստոսի Թաշկինակն և Առաքելոյն գօտին թաղուած են, զորս իւրեանց տէրերն երբ նախապէս սատ հանգիստ առին գուշակեցին թէ մի օր Քրիստոնէից ուխտատեղի պիտի լինի այս տեղին, ուր պիտի կառուցի տաճար մը։

## ԳԼ. Ի.

### Ս. ԲԱՐԹՈՒՂԻՄԷՈՍ ԱՌԱՔԵԼՈՑ ՎԱՆՔԷՆ ՄԵԿՆՈՒՄՆ Ի ՊԱՇԳԱԼԷ

Երկնային բանին գործակատարի և արդարութեան քարոզչի հրաշարուխ գերեզմանին տալով իմ հրաժեշտի ջերմագին համբոյրս, մեկնեմք գաւառիս քաղաքական կեդրոնատեղին 'ի Պաշգալէ' ճանապարհնիս յԱրեւմտեան Հարաւային գծովն շարունակելոյ։ Փոքր ինչ յառաջ գնալով կը հանդիպիմք, երբեմն Հայ, Խաչնոց րնուած գիւղին, ուր այժմ մի քանի տուն քուրդեր կը բնակին։ Գիւղս չինուած է երկայն ձորակի մը բերանը տեղւոյս առընթեր Հիւսիսակողմն լերան կողին վերայ կայ գրեթէ քարափոր եկեղեցի մը, մութ և խիստ հնատեսիլ և ուր կաղօթէին երբեմն գիւղիս նախնի Հայերն, որոց պապերու Խաչ-քարինքն սատ կան ու կը մնան, իսկ իրենք նամով ու նմուշով կորած են։

Խաչնոցէն կէս ժամու չափ ուղինիս յառաջ վարելով կը հասնիմք հետեւեալ գիւղը ։

ՀԱՍՓՍՏԱՆ . — (Չիաստան) . Սոյն գիւղի անունն բաղադրեալ է Պարսկական բառէ մը և Հայկական տառէ մը, ու կը գտնուի ճանապարհի վերայ և ունի 40 տուն Հայ բնակիչ, մի եկեղեցի, մի քահանայ և մի անուանական ծաղկոց, ուր կը խամրին փթթած սիրուն ծաղիկներ թըւով 35–40 ։ Տեղւոյս կայտառ և աշխոյժ մանկիկներն, առաւօտ կը գան զուարթ, իսկ երեկոյ կը վերադառնան թօշնեալ և գունատեալ ։

Գիւղս ունի գեղեցիկ տեսարան, լաւ հող, կենսատու օդ, և պատուական ջուր, զորս ամեն ոք անխտիր կրնայ վայելել ։ Ժողովուրդն ալ հասարակ ուսումնասէր և ջերմեռանդ է և նիւթապէս բարւոք, սակայն խորապէս ցաւ ըզգալով պէտք է ըսել թէ չ'կան հայրենասէր հոգիներ և գործելոյ ՆԵՐՊԻՆ ՀՄՈՒՏ գործաւորներ, որք կարող լինին ժողովրդեան սրտի մէջ ունեցած այդ երկու գոհարեղէններուն տեղւոյս նոր սերնդեան ապագայն պատրաստել, կրթական տեսակէտով ։ Մեր Հասփստանի դասատուն արդարև բաւական ճարտար և աշխատասէր է և սոնց 'ի պաակ, մաքուր բարոյականի տէր մի երիտասարդ է, բնաւորութեամբ ազնիւ և երկիւղած, սակայն ո՛ւր ուղղութիւն և ո՛ւր դպրոցական հրահանգ, որովք կարենայ օգտակար լինիլ և ըստ Տաճկական առածին «յօնք չինելոյ ա-

տեն աչքեր չ՚հանէ » . դարձեալ պէտք է կրկնել ուրեմն այս խօսքն թէ « գործ կայ գործող չ՚ըկայ » ։ Ասկէ ելնելով ուղինիս շարունակեմք և գնամ հետեւեալ գիւղը ։ ԽԱՌԱՏՈՒՆՈՒ (հարուստ տուն) . գիւղիս անուան նկատմամբ երկու խօսք ընեմ և ապա շարունակեմ տեղագրութիւնս . խառա բառն, տեղական առմամբ, կը նշանակէ հարուստ, որում կցուած է տուն, և ասով յառաջ եկած իւր անունն, որոյ վերաբերութեամբ կաւանդեն թէ « տեղւոյս նախնի հայերն մեծատուն լինելով այդ անունն տրուած է իւրեանց գիւղին » ։

Խառատուն ունի 45 տուն բնակիչ, յորմէ 25 տուն Հայ և մնացեալն Քուրդ է ։ Հայք ունին յանուն Ս. Աստուածածնայ շինուած մի եկեղեցի տաճարաւոր, սակայն կառուցեալ է գիւղական ճաշակաւ և հազիւ 15 տարուան չէնք կը լինի . իսկ տաճարն 600 տարուան է, կառուցեալ կոփածոյ քարերէ և հաստատուն ։ Սոյն գիւղն այժմ ո՛չ քահանայ ունի և ո՛չ դպրոց ։

Երբ աստ ամառուան Սրբեւու կիզմանէն ներղուած՝ ծառոյ մը շուքին տակ հանգիստ կառնէի, մի քանի գիւղացիք առընթեր ինձ կային և որք հոգւոց հանելով կը պատմէին թէ « գիւղիս երախայք երբեմն ամիսներով կը մնան անկնունք, որով մեր Ս. Եկեղեցւոյ մկրտութենէն և հաւատքէն կը զրկուին ժամանակին մեր ճժեր» ։

Տեղւոյս մերայինքն շատ դժբաղդ են թէև

բնութիւնն լինի հարուստ և արգասաւոր, հան-
դերձ իւր սիրուն տեսարանովն ։ Ինձ պատմե-
ցին դարձեալ կրօնական մի շատ թթու պատ-
մութիւն, որմէ ինքեանք էին խիստ դժգոհ,
որպէս նշմարեցի, չգտայ արտաքին մի գլխա-
ւոր պատճառ իւրեանց հարստահարութեան,
բայց եթէ տգիտութիւն որ առիւծի նման կը տիրէ
իւրեանց մտաց և սրտերուն վերայ ։ Անձամբ
շօշափեցի գիւղիս ներքին կեանքն, որով Երկնից
առաջ, ցորեկուան ամբողջ Արեգական ներքև
և գիշերուան նորածին լուսնոյ ընդդէմ կրնամ
վկայել թէ իւրեանց միակ մխիթարութիւնն ընդ-
միշտ կը փնտռեն ԵԿԵՂԵՑԻՈՅ չորս պատէն ներս ։

Իւրեանց տնական կամ որ նոյն է ըսել ըն-
տանեկան կենաց մէջ չգիտութեան, ՛ի բնէ սև
երեսէն կենսական ուժերնին սպառած է, ու
սրտերնին լքեալ և յուսահատ ։ Գիւղիս մէջ ծաղ-
կոց մը բանալն իւրեանց բարոյապէս, որով և
նիւթապէս կեանք տալ է, սակայն չիք ոք ՛ի
միջի՝ որ խորհի առ այդ և յաւելու ուղղակի
փառքն Օսմանեան՝ կրթել տալով նորա սոյն օ-
րինակ դարաւոր հպատակներն, որոնց նեղու-
թեանց և տառապանաց գլխաւոր պատճառն ե-
ղող, որպէս յիշեցի, տգիտութիւնն բարձուի ։ Ես
սիրտ ունիմ մարմնեղէն որ չկարէ լինիլ քարե-
ղէն, ուրեմն բնականէն պարտաւորեալ եմ խո-
րին վիշտ զգալով ըսել թէ, ուր շունչ կենդա-
նի և օդնող ժողովրդեան, ուր բանին քարող և

տնտես եկեղեցւոյ, աւաղ չիք աստ ի միջի և ոչ մի, որ գոնէ 'ի պահանջել հարկին, ժողովրդեան կրօնական պիտոյք մատակարարէ, որով հոգեպէս փոքր ինչ մխիթարուին և գոյզն ինչ մեղմանան իրենց մարմնական ցաւերն և վիշտերն, յորս ընկղմած կը հեծեն յերեսաց ադխատութեան, որպէս ասացի կանխաւ։

Ահա Խառատունի ծերուկի կարճիկ պատմութիւն, զոր Ուղեւորիս պատմեց իւր տախտըկած կուրծքն գաւազանին վերայ կռթնցուցած «առաջին ժամանակը մեր աննման գիւղն՝ այս նէ-ղաւըր Խառատուն 80 տուն մաղաքաժին ունեցած է, շատերն գնացին էն փափկէ երկիր, տէս ու տէն կորան, լմնցան, իմ աչքի լռս »։

Գիւղիս նախնի բազմահայութեան նշան տըւող կը տեսնուին աւերեալ եկեղեցւոյ մը հիմունք, զորս ինձ հպարտ զգացմամբ մը ցոյց տըւաւ տեղւոյս երիտասարդներէն մին, որ գիտես թէ մեծ չքաղարդ թագաւորի մը պալատ մնացորդ կընէր իրեն անծանօթ Ուղեւորիս և իւր անհամբերութեամբն միշտ 10 քայլ ինէ աւելի յառաջ կը գտնուէր դէպ ի յայդ աննշան, այլ ՊԱՀՊԱՆԻՉ տեղին։

Խառատունէն ճամբայ ելնելով 1 ժամէն կը հասնիմք ի Մալգաւա, որոյ վերայ յաջորդով։

## ԳԼ. ԻԱ.

ՄԱԼԳԱԻԱ ԵՒ ԻՒՐ ՀԵՌԱԻՈՐ ՇՐՋԱՊԱՏ

Գիւղս ունի 30 տուն Հայ և 2 տուն Քուրդ։

Հայք ունին Ս. Խաչ անուամբ մի եկեղեցի, 25 տարուան նորոգուած, մի քահանայ երկայնահասակ, այլ կարճամիտ, իսկ դպրոց ունին ոչ, հակառակ իւրեանց ուսումնասիրութեան։

Տեղւոյս բնութեան միճակն շատ լաւ է, որ իրապէս կեանք կըտայ տեղացւոց, որք արդարապէս գժգոհ են իրենց կեանքէն, որոնց առողջութիւնն տեղական կլիմային պարտական է թէև իրենք լինին այժմ պարտատէր։

Գիւղիս ծառերն չեն պտղատու, այսու ամենայնիւ կընան արևակէզ գիւղացւոյ բաց կուրծքին շուք տալ և քաղցրացնել նորեկի մը վայրկենական հանգիստը։

Ասա երբ գիւղիս բնակութեանց թիւն կըհարցանէի, մի ծերունի շատ զգայուն տեսակէն, մարմնով ուժեղ և կեանքով խիստ փորձառու, ինձ պատասխանեց հառաչանք մ՚արձակելով իւր սրտէն՝ որ պահուըտած էր իւր լայն և մազոտ կուրծքի տակը. «Է՜յ պարոն, իմ աչքի լոյս օտարական, հեռու աշխարհի Հայ Մըլքէն ինչ խապար, դուն ինձ ղէդ (այդ) ասա՛ հերիք է»․ այս ըսաւ թէ չէ յաւելցուց «Է՞ր եկած ես մեր ցաւեր և հոգիներ կըքրքրես, ես տեսած եմ մեր այս գիւղակին մէջ 120 տուն, որ պակսելով մնացած է 30 գուլիպէ (ողորմելի խրճիթ), ամենքն գնացին ու կորան, քէշկէ (երանի թէ) այս տեղ կենային ու չերթային պէլքէ անոնք էլ Օսմանցու հողին վրայ մեզ նման կապրէին, յայս բան ծե-

րունույն լճացեալ աչերէն , նման մարգարտի , կլորեցան զոյգ մ'արտասուաց կաթիլներ , ընդու-նելով իւր թոռանց և աղջկանց անմոռօրէն գաղ-թելուն , որոնց վերաբերութեամբ կ'ասէր թէ «երթացողաց մէջ իմ արեան կտորներ ալ կային» ։

Այս պահուս Արեգական միջօրէի տաքու-թիւնն սկսաւ խեթիւ հայել յիս և իմ ալեւորն մինչ լինձ աւելի հովանիք ունեցող ուռենւոյ շու-քին տակ առաջնորդելոյ վերայ էր , ճաշի կոչ-ուեցայ Մալգաւայիս գիւղապետի տունը , ուր հացկերութի նստած ատեն յիշեալ ծերունին իւր հաստ գաւազանին վերայ կրկին կռթնած՝ հան-դէպ Ուղևորիս ընկերին կը կենայր ոգեւորեալ դի-մօքն և ճնշող հոգեկան վիճակի մը ներքև . իւր պահ մ'առաջ բրած խօսքերն սիրտս նոր Սե-լովմայ աւազան դարձուցած էին և միտքս տա-կաւին կորոճար իւր տխուր պատմութեանց վե-րայ . վերջապէս մի տարօրինակ ճաշ ըրի գրե-թէ փակուած կեռեկովս (ախորժակ), որ այս օ-րինակ պարագայից մէջ զգայուն սրտերու շատ բնական մի բան է ։

Մալգաւայի հեռաւոր շրջապատը

Գիւղիս Հարաւային Արևելակողմն 1 ժամ հեռու է Խոնջալիս գիւղն , որոյ վերայ նախորդ-էջերէն միոյն մէջ արդէն խօսուած լինելով՝ թո-ղումք զայն և անցնիմք 'ի Պատկան գիւղ ։

ՊԱՏԿԱՆ . — Մալգաւայի դարձեալ Հարա-ւակողմն կը գտնուի , ուր մի քանի տուն Մա-

բական թոռներ կը բնակին, իբրև աւատառու՝ գլխաւոր մահմետականի մ'իրաւասութեաններ-քեւ. աստ կը տեսնուի մի անկեալ եկեղեցի չրջապատեալ կանգուն տապանաքարերէ:

Մալգաւայի Հիւսիսային Արևմտակողմն 1½ ժամ հեռաւոր կը գտնուի հետևեալն:

ՀԵՐԵՍԱՆ. — կը բաղկանայ 43 Հայ տներէ, ունին եկեղեցի, քահանայ, այլ ոչ դպրոց, ժողովրդեան նիւթական վիճակն բաւական լաւ է. տեղւոյ բնական դիրքն, օդն և ջուրն պատուական, երանի թէ կարենան օգուտ քաղել:

ԲԱՂ. — Սոյն գիւղն կը գտնուի նախորդի Հարաւային Արևելակողմն 1 ժամ տարակայ: Ունի 60 տուն բնակիչ, յորոց 42ն Հայ է և մնացածն Քուրդ: Հայք ունին պարզ եկեղեցի մը, քահանայ մը, այլ դպրոց ունին ոչ: Աստ կայ արհեստական բերդ մը, զոր տեղացիք «պարոնաց բերդ» կանուանեն, որոյ մէջ այժմ կը բնակին, 'ի հնումն հռչակաւոր, Իսահ փաշայի թոռներն: Գիւղիս արօտատեղիք չատ ընդարձակ են և գաւառիս դեռն իւր քովէն կանցնի:

Բաղի մէջ ուրիչ երկու աւերեալ եկեղեցիք ևս կան, յորոց առաջին կը կոչուի ԿԱԹՆՈՎ Ս. ԽԱՉ, ուր խաչի տօնին երբեմն կը գան յուխտ այս կողմերու Հայ գիւղացիքն, իսկ երկրորդ, որ տաղաւարեկ մի է, կանուանի ..........: Տեղւոյս սոյն նուիրական աւերակաց հետաքըրքիր անուններու չարժառիթներն Տեղագիր-Ու-

ղեւորիս մնացին անծանօթ, թէպէտև անհետամուտ չ'գտնուեցայ առ այնս ։

Այժմ կը թողում տեղէս բաւական հեռու Շամանէ և Քէլակօ (քեռի Յակոբ) կոչուած աւերեալ Հայ գիւղերն, որք հայութենէ ամայացած են, այլ կը պահեն տակաւին յիշատակութեանց տխուր հետքեր ։ Զեմ յիշեր նաև Լուկան գիւղն, զի արտասուելոյ ժամանակ չունիմ, և այս պահուս արդէն սիրտս մարմարինէ քար է կտրած ։

Մալգաւայէն մեկնելով կը կորեմք բազմաթիւ արտօրայք, խոտնոցներ ու մարգեր, և գրեթէ 2 ժամէն կը հանիմք 'ի Պաշգալէ ։

## ԳԼ. ԻԲ.

### ՊԱՇԳԱԼԷ (ՀԻՆ ԲԵՐԴԱՔԱՂԱՔ)

Պաշգալէ Հէքեարինահանգի (Աղբակ, Անձրեւացիք, Նորտուզ, Ճուլամերկ, Գեաւառ) կուսակալանիստ տեղին է և կը գտնուի Աղբակ գաւառի Արևմտահարաւը, Ս. Բարթուղիմէոս Առաքելոյ վանքէն 4$^1/_2$ ժամ հեռու, որոյ յԱրեւելակողմն է Պարսկաստան, 10 ժամ հեռաւորութեամբ. յԱրեւմտահիւսիս Վան, 16 ժամու հեռաւորութեամբ. Հիւսիսէն Խօշապ (Մահմուտիէ), 6 ժամ հեռաւոր և Հարաւէն Ճուլամերկ ։

Քաղաքս շինուած է մի ընդարձակ լեռնաբլրոյ կողերուն վերայ, որ երեւն կը նայի լայնատարած դաշտի մ'ի Հարաւ ։ Ունի պատուական կլիմայ, հաղուագիւտ ջուր և արգաւանդ

հող, որմէ ծնած են բայց զայն չեն ճանաչեր։

Տեղւոյս բնակութեանց թիւն է 450, յորմէ 140 տուն Հայ, 130 տուն Տաճիկ և 180 տուն Հրէայ։ Հայք ունին, յանուն Ս. Երրորդութեան, 26 տարուան կառուցեալ (հնոյն տեղ) մի եկեղեցի, 2 քահանայ և մի նախակրթարան, չէնքովն բաւական յարմարաւոր, ուր 50-60 աշակերտներ կուսանին և ընդհանրապէս անչափահաս։ Ժողովրդեան ուսումնասիրութիւնն և եկեղեցասիրութիւնն ց'արդ զարթուցանող մը չէ եղած, որով իրենք կը կենան տակաւին գրեթէ նախնի պարզութեան մէջ, ահա գործաւորի համար բարոյապէս գործելոյ ընդարձակ ասպարիզատեղի, որ չ'պակսիր շատ տեղերը։

Հայք կ'զբաղին առ հասարակ երկրագործութեամբ և մանաւոր վաճառականութեամբ. սատ կան մի քանի ճոխ խանութպաններ Վանէն եկած, որք տեղւոյս գլխաւոր վաճառականներն կրնան համարուիլ և ունին մեծ յարգ։

Մահմետականներն ընդհանրապէս ունին սեպհական հողային կալուածներ։ Հրէայք ամբողջովին կը պարապին մանր ու մունր առևտրով, որպէս իւրեանց յատուկ է և են շատ ճարպիկ ու ճարտար։ Սոքա երբեմն կ'զբաղին նաև առ և կուլով (անշուշտ բացառութիւնք ընդունելով հանդերձ) որպէս ինձ պատմեցին։ Հարստութեան կողմանէ Տաճիկներն՝ առաջին, Հրէայք՝ երկրորդ և Հայք երրորդ տեղին կը գրաւեն։

Պաշգալէի առեւտուրն բաւական բանուկ է, թէեւ խանութներն լինին աննշան թուով և չինուածքով ։ Նորեկի մը համար շատ դժուար է քաղաքիս զառիվայրներէն ելեէջ ընել, մանաւանդ ձմեռ ատեն, ուր բնականաբար մարդս միշտ իյնալոյ կամ սահելոյ ենթակայ է . աւելորդ է ըսել որ պատճառն երկրի դիրքն է ։

Տեղւոյս բնակիչքն կրնան հայհոյութեանց նշանաւոր բանաստեղծներ համարուիլ, վասն զի յանկարծական հայհոյութիւնք կընեն երբեմն այնպիսի մտօք և չարադրութեամբ, զոր լսողին մեծ զարմանք կը պատճառեն ։ Աստ Տաճիկ ըսելով պէտք է հասկնալ Նախնականէն մնացեալ Քուրդ աղայից զաւակներն կամ թոռներն ։

Պատմական

« Ներկայ թուականէս 55–60 տարի յառաջ աստ կը նստէր, ըստ տարեւոր մարդոց տեսութեան և ասութեան, Նուրրուլլահ անուն Քուրդ պէկն, որ ինքնագլուխ կիշխէր և իւր գերիշխանութեան տակն ունէր Ճուլամերկ, Գեաւառ, և Անձրեւացեաց գաւառն ։ Նոյն թուականին Իսմայիլ փաշան Օսմանեան զինուք կառնու սոյն քաղաքը, որոյ բերդն և պարիսպները մեծագոյն մասամբ քար ու քանդ կընէ, որ ցարդ կիսակործան կը տեսնուին ։

*
* *

Պաշգալէի տուներն աղիւսաշէն են, քիչ ճաշակաւ և համեմատաբար կը բարձրանան դէպ

'ի Բերդ, որ այժմ անբնակ է։

Բերդաքաղաքս ունի հեռագրաթել, որով յարաբերութեան մէջ է Ծուլամերիկի, Գեաւառի, Պարսկաստանի և Վանայ հետ։ Տեղէս տակաւին չ'մեկնած՝ փոքրիկ պտոյտ մի ընեմք իր շըրջապատն և ապա շարունակեմք մեր նկարագրական և տեղագրական ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆՆ։

Քաղաքիս յԱրեւմտակողմն $1^1/_2$ ժամ հեռու Հնուդ վան (Հնուդ վանք) Ս. Խաչ անուամբ աւերեալ սրբավայր մի կայ, որոյ հիմերն հազիւ նշմարելի են. երբեմն սոյն անհետացեալ վանուց փլատակաց մէջէն խաչեր գտնուած են, որպէս ականատեսք իսկ քանիցս Ուղեւորիս պատմեցին ախորժանօք, այլ տխրագին դիմօք տեղւոյս նախնի բնակչաց հետքերն արդէն իսպառ անհետացած են, միայն թէ բաւական թուով խաչաքարինք թաղուած են ի գետին, որմէ երբեմն տիպուածով դուրս կելլեն ԱՐԵՒ տեսնելոյ։ Աստ այժմ 15–20 տուն Քուրդ կը բնակին, որոց աստ գալուն թուականն չ'գիտեմ։

* * *

Պաշգալէի յԱրեւմտակողմն 2 ժամ հեռու է Փաւոյէ (որոյ Փէ. ալ անուն կըտան) գիւղն, ուր 8–10 տուն Հայ և 2 տուն Քուրդ կը բնակին։ Աստ կան 2 եկեղեցիք, յորոց մին Հայոց և միւսն Ասորւոց վերաբերեալ։ Գիւղիս անուան վերաբերութեամբ կ'աւանդեն թէ « հին ժամանակ տեղւոյս Հայն և Ասորին իրարու հետ տա-

ըններով դատ վարած են հողային ինչ ինչ խնդրոց համար և յաղթուողն միշտ նորանոր փաստեր ճարելով կրկին դատարանին կը դիմէր զիւր դատն շահելու նպատակաւ, ահա այս պատճառաւ գիւղիս անունն մնաց Փաստէ գիւղ։

Այժմ փաստերն, փաստափանաց հետ, անհետացած են անյիշատակ։

*
* *

Բերդաքաղաքէս 'ի Ս. Բարթուղիմէոս Առաքելոյն վանք վերադարձ ըրած լինելով՝ յաջորդ գլխոյս մեկնիմք աստի և դարձեալ ազնիւ ընթերցողիս անծանօթ վայրեր տեղագրելով ուղեւորեմք դէպ ի Վան-Տոսպ գաւառ, բռնելով մեծագոյն մասամբ Արեւմտեան Հիւսիսային գիծն, որոյ վրայ դողդողուն պիտի քայլեմ։

## ԳԼ. ԻԳ.

### Ս. ԲԱՐԹՈՒՂԻՄԷՈՍԷՆ ԻՄ ՎԵՐՋԻՆ ՀՐԱԺԵՇՏ

Աղբակ գաւառի սոյն հռչակաւոր և եղական վանուց Ս. ՏԱՃԱՐԻՆ, Առաքելոյն խնկելի ՏԱՊԱՆԻՆ և եկեղեցւոյ ՀԻՄՆԱՔԱՐԻՆ իմ վերջի հրաժեշտի քաղցր և սրտաբուխ համբոյրս դրոշմելով ճամբայ ելնեմք և վերոյիշեալ ուղղութեամբ $1\frac{1}{2}$ ժամէն ընդարձակ դաշտօրայք և արտօրայք կտրելով կը հանիմք հետեւեալ գիւղ։

ԵՐԸՆԿԱՆԻ. —Ունի 60 տուն բնակիչ, որոյ $\frac{1}{4}$ Քուրդ։ Հայք ունին կոփածոյ սեւ, այլ ըն-

տիր քարերէ շինուած խաւար եկեղեցի մը , ո-րոյ մթութիւնն յառաջ եկած է նախ պատուհանաց տարօրինակ փոքրութենէն , երկրորդ պարըսպաց քարերու գոյնէն : Եկեղեցին կառուցեալ է յանուն Ս. Ստեփաննոսի , և կը կրէ Ռ Ճ Թ Հայոց Թուականն : Ունին 2 քահանայ , մի ծաղկոց 25 աշակերտով և մի ուսուցիչ , դպրոցի զարգացման վիճակն շատ խեղճ է և այս խեղճութիւնն դասատուին վերագրելն՝ անարդար :

Տեղւոյս մանուկներն թէև լինին գեղջուկ , մերկ , և բոկոտն , այլ ժիր են և կայտառ :

Երընկանի մէջ Ս. Սարգիս և Ս. Ծիրանաւոր անուններով երկու հին եկեղեցեաց տեղիք կը տեսնուին , յորոց իւրաքանչիւրն իւր գերեզմանատան ընդարձակ տապանաքարներէն շրջապատեալ է , որոց գլուխներն մարմնոյ զանգուածի ծանրութենէն ստիպեալ՝ ծռուած են յԱրեւմուտըս : Տապանաքարանց վերայ 6-650 տարուան անյիշատակագիր Թուականք կը նշմարուին , այս առթիւ տարեւոր անձինք կ'աւանդեն թէ « 200 -250 տարի յառաջ գիւղիս բնակչաց թիւն էր 500 տուն , սոյն կարճիկ , այլ բաւական որոշ աւանդութիւնն ըստուգութեան կը մերձի երբ ի նկատ առնուի գիւղիս ընդարձակ շրջապատն իւր հինաւուրց տներու փլատակներովն :

* * *

Երընկան ունի հողային ընդարձակ կալուածներ և խիստ արգասաւոր , պատուական

վայրեր ոչխար սնուցանելոյ համար , միայն թէ ջրոյ փոքր ինչ նուազութիւն կայ ։ Տեսարանն լաւ ու երեք կողմանէ հեռաւոր և մերձաւոր լեռներէ շրջապատեալ է ։ Զմեռն սաստիկ ցուրտ կը փչէ լերանց միջավայրերէն , այնպէս որ գիւղէս 10 վայրկեան հեռու երբեմն մարդ կը սառի կամ ձեան փուքի բռնուելով կը խեղդուի , որպէս ինձ պատմեցին մի քանի ցաւալի օրինակներ գիւղիս ականատեսքն ։

### ՄԱՅԱՅ ԵՒ ՄԱՅՏԱՆՈԿԱՅ ՍԱՐԵՐ (ԼԵԱՌՆ)

Երընկան գիւղի յԱրեւմտակողմն $1/2$ ժամ հեռու կան երկու լայնայատակ լերինք , յորոց մին Մայայրաս կը կոչուի , որոյ գլուխը կը գտնըուի անծանօթ սրբոյ մը կամ ճգնաւորի մը գերեզման և Մայտանոկայ սար ։ Սոյն երկու լերանց Արեւելեան ստորոտը շինուած է ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ անուամբ մի փոքրիկ , այլ կոկիկ և գեղեցիկ կաթուղիկէով վանք , որ այժմ դեռ հաստատուն և կանգուն կը կենայ անվնաս ապրելով երկդարեան ամայութեան և խորին լռութեան մէջ ։ Առ այս մեր ալեւորաց աւանդութիւնն կըսէ « 260 տարի յառաջ այս սիրուն մենաստանիկ ունեցած է կանոնաւոր միաբանական ուխտ և ՀԱՑԻ համար մեծամեծ ամբարներ » , որպէս իւր ձեռագիրներն ցոյց կըտան պահուած 'ի Վանս վարագայ ։

Յիշեալ անմարդաբնակ վանքն ուխտատեղի է այս կողմերու Հայ գիւղացւոց , որոնք Ս.

Աստուածածնայ տօնին խուռն բազմութեամբ հոն կը դիմեն և միահամուռ ուրախութեամբ կը յիշատակեն դորա Ս. անունն իւր սգաւոր ժենաստանի տխուր փառաց մէջ։

## ՄԵԿՆՈՒՄՆ

Երզնկանէն մեկնելով փոքր ինչ ուղինիս յառաջ տանելէ ետքը՝ կը հանդիպիմք «Կարապուլի» կոչուած գիւղը, որ մեր ճանապարհէն 3 քարընկէց հեռու կը գտնուի. բնակիչք 20 տուն, կիսով չափ Հայ և մնացեալն Քուրդ։

Տեղւոյս Հայք ունին կիսակործան եկեղեցի մը, որ այժմ անգործածելի է, ուրիշ գիւղերու դիմելոյ ստիպեալ են, երբ անհրաժեշտ հարկ լինի կրօնական մատակարարութեանց համար. զի ո՛չ քահանայ և ո՛չ դպրոց ունին։ Երզնկանի քահանայն կայցելէ աստ, հոգին բերան եկած։

Կարապուլի գիւղիս Հայ բնակիչներէն միոյն պատահեցայ, ում երբ ԴՊՐՈՑ կամ ՎԱՐԺԱՐԱՆ կը հարցունէի, այդ աշխարհի ողորմելին և դժբաղդ արարածն չ'կրցաւ գտնալ յիշեալ երկու բառերու ամենապարզ նշանակութիւն, զոր հասկնալի լեզուաւ մ'իւրեան տալէս յետոյ խեղճ մարդն Ա՜խ ՄԸ քաշեց, որ յանկարծական ցնցում պատճառեց իմ ճիղերուն, որոնք գիտես թէ ելէկտրական շանթէ մը զարնուեցան վայրկենապէս. այս պահուս իմ աչքերն թէև լեցուած էին, այսու ամենայնիւ

անկշտօրէն կը դիտէին զՀԱՅՆ , որ ունէր ազնիւ բնաւորութիւն , դարով հաւատարիմ հոգի և սիրտ մը խոնարհ անվեհեր , սակայն մեր կարծածը ՀԱՅՆ Արեգական լուսէն զատ ուրիշ լոյս մը չէր տեսած և ոչ իսկ անոր վերաբերութեամբ բան մը լսած , որով կարենար ճանաչել զաշխարհս ։

Այս միջոցին ես կը ջանայի դպրոցի , թըղթի , գրչի և մանաւանդ ԳԻՐԻ վերայ խօսիլ և ինձ մտիկ ընել տալ , իսկ նա (գիւղացի ՀԱՅՆ) կամէր խօսիլ Պօանկօլէին վերայ , որ Երընկանիին և Կարապուլիին միջավայրը կը գտնուի և լեռնային տեղի մի է , ուր ճանապարհորդաց համար երբեմն վտանգներ անպակաս են ։

Մեր այն Պղտօն ( Պաղտասար ) ինձ պատմութիւն ըրաւ նաև Կարապուլիէն մի քանի քարընկէց հեռու ի Հիւսիսակողմն Մէրտա կոչուած ձորին վերայ , ուր մէջ դարձեալ շատ անգամ մարդոյ սիրտ կուտայ և չ'առնէր ։ Մեր վերջի բարեւն բարեմիտ Պղտօյին տալով շարունակեմք մեր ՈՒՂԵԻՈՐՈՒԹԻՒՆՆ ։

## ԳԼ. ԻԳ.

### ՊԱՊԿԱՇԷՆ ՀԱՅ ԳԻՒՂ ԵՒ ԻՒՐ ՍՐԲԻԿ

Միրաւայէն մեկնած՝ բաւական ճանապարհ կըտրելէն զկնի կը ժամանեմք Պապկայ–Շէն անուանեալ գիւղն , ուր երբեմն Հայ , այժմ կը բնակի Քուրդ ։ Ասա Հայոց վերաբերեալ յիշատակի նշմարանաց կամ բեկորներու չիք նշմար ,

միայն փոքրիկ մատուռ մի կայ, զոր կը կոչեն Սրբէկ, անունն անծանօթ՝ թէ ինչ սուրբ է չգիտեն ։ Հայ գիւղացիք աստ ուխտի կըգան ըսելով թէ ՄԵՐՆ է, իսկ Քուրդերն աստ կաղօթեն հաւատալով թէ իրենց բուրէխրաֆ Շեխի գերեզմանն է, որ նկատմամբ բաւական հետաքըրքիր եղայ տեղեկութիւն մ'առնելու կամ լոյս մ'այդ խաւար տեղէն . սակայն ոչ գտայ մի նշան և ոչ իսկ լսեցի մի աւանդութիւն, որովք կարենայի ինքնին դատաւոր մի լինիլ, թէ ում կը վերաբերի այդ մատուռն, որ իւր անյիշատակ վիճակուն երկու մեծ Ազգերէ յարգանք ընդունելու բողտէն հանդիպած է ։ Ինչ որ է թէ առաջնոյն լինի ազգական և թէ վերջնոյն, նա մնաց ինձ անծանօթ, ես տեղէս շտապօրէն մեկնեցայ՝ նեղսրտութենէ մը պաշարուած ։

Պապկայ–Շէն գիւղէն յուղի ելնալով կէս ժամու չափ յառաջ երթամք և կը հանիմք հետեւեալ գիւղը ։

* *
*

ՁՈՒԽ. — Սոյն գիւղն ունի 21 տուն բնակիչ, յորմէ 10 տուն Հայ և մնացեալն Քուրդ է ։ Հայք ունին մի նորաշէն եկեղեցի պարզաճաշակ, կառուցեալ ծախիւք գիւղիս Ռէս (րէյէս կամ գիւղապետ) Օհան (Յովհաննէս) աղայի և աշխատութեամբ իւրայնոցն ։ Քահանայ և դպրոց « Աստուած տայ » . իւրեանց կրօնական պիտոյից մատակարարն 3 ժամ հեռու տեղէ քահա-

նայն կը հոգայ, քրտնքի մէջ խղդուած :

Աստ կայ մի ազնիւ երիտասարդ, յիշեալ անձի զաւակն, որ աշակերտն է Վարագայ ժառանգաւորաց վարժարանին. սա իւր թղթովն և գրչով գիւղիս մերայնոց ՅՈՅՍՆ և ԼՈՅՍՆ կըկազմէ : Տեղւոյս ժողովուրդն միտադիր էր յիշեալ բարի երիտասարդն ձեռնադրել 'ի քահանայ՝ դիմելով առ Ամեն. Խրիմեան Հայրիկ 'ի Վարագ :

Գիւղիս մէջ մի գիշեր հիւր եղայ մեր Ռէս Օհան աղայի տունը, որ ցորեկուան համար, նըման Հայր Աբրահամու, կանանչադեղ դալարեայ վերայ պատրաստ ունի մի ընդարձակ վրան հիւրընկալելոյ զճանապարհորդս անխտրաբար :

Նոյն վրան գործուած էր Օհան աղայի տան ոչխարաց բուրդերէն և այծերու մազերէն, հաստ և դիմացկուն : Այժմ քեզ կ'ասեմ ուշիմընթերցող և մեկնամիտ վերծանող, գիտե՞ս, ո՞վ էր գործողն այդ հիւրընկալ վրանին — տան մեծ ՄԱՅՐՆ կամ ՄԱՄԻԿՆ, որ նման Սառայի, նըստած էր առընթեր իւր վրանին, այլ չէր ծըպտեր հանդոյն Սառայի, թէև ինքն շրջապատեալ լինէր յորդոց, և 'ի թոռանց :

* * *

Մայրենի ու Հայրենի երկրի կեանքն իմաստասիրելոյ հետամուտ Հայ Ուղեւոր մը չ'կրնար մեծ հաճոյք և բերկրանք չզգալ ու միանգամայն չ'ոգեւորիլ, երբ սոյն Հայր Աբրահամու հիւրընկալ վրանի դռնէն սիրողաբար կը դիտէ

լեռներն ու դաշտերը, որք պճնեալ են գոյնզգոյն ծաղիկներով, յորս մեխակի սիրուն տեսքով, բազմաճղի և պատուական հոտով, բարձր ի դլուխ կը պանծայ և կը շօրօրայ (հպարտօրէն շարժիլ) մեր Աշխարհի ծաղկանց Թագուհին՝ գեղեցկատեսիլն ԳԻՆԱՐԲՈՒՆ, որ իւր անունն առած լինել կը թուի գոյնէն, որ յար և նման է ընտիր գինւոյ կամ գինարբու փոքրիկ մանկան կարմիր դէմքին ։ Այն ծաղկի անմահական հոտն տեղւոյս դաշտն ամբողջապէս բռնած էր, որոյ մէջ կը բարձրանայր մեր Օհան աղայի հիւրընկալութեան վրանն ։

* * *

Չեմ կրնար իմ համարիւն եղբարց առջև սատ չ՚դնել դարձեալ Նահապետական տան մը սոյն օրինակ կենդանի պատկերն, զոր տեսի Զուխի մէջ, որ ինձ պահ մը յիշեցնել տուաւ մեր հին Նահապետի անմեղ դրութիւնն և հաւատարմութեան հոգին, որոյ վերայ, ՚ինչպէս երախտագիտութեան, սատ գեղեցիկ առիթով մը պէտք է յիշել թէ երբեմն Նուպար–Տահնազարեան՝ Խաս–գիւղի գիշերօթիկ վարժարանին մէջ նշանաւոր Պատմաբան և Հայրենախօս Մեծ. Մ. Էփէնտի Աղաբէգեանէն դասեր լսելոյ բաղդ ունեցած էի, այն ազնիւ, ծանուցեալ և ծաղկեալ Հայրենասէրէն կըսեն, որ ինչպէս առաջին հատորիս մէջ տեղ մը յիշած եմ, Տեղագրութիւնքս և Կենագրութիւնքս ՃՇՏՕՐԷՆ կ'ընթեռնու ։

Նախ գիւղիս գլխաւորն է , ուրպէս վերև յիշեցի , մեր Ռէս Օհան , որ տարեօք ալեխաւորն , հաւատալու միջակ և սրտիւք արի մի անձ է ։ Ինքն է բացարձակ տանուտէրն և հրամայողն իւր մեծ Գերդաստանին , որոյ անդամոց թիւն 40 էն անցաւ , ինչ ատեն իմ թախանձանաց վերայ՝ ինձ թուեցին մի առ մի ։

Քանի հետաքրքրական և քաղցր էր Տեղագիր—Ուղեւորիս , երբ կը տեսնէի ինձ հանդէպ նստած երկու գեղջուկ [illegible] , որոնք, փոխանակ զմարդիկն համրելոյ , Նոցա դրդալներ կը թուէին և ինձ կը տային գումարման հաշիւն , զոր ի վերջոյ գոցեցին ասելով թէ « մեր Ռէս Օհանի տունը մէկ ամանի մէջ 42 կտէլ (դրդալ) կը չարժի կամ մէկ [illegible] պիլորը (բոլորտիքը) 42 կ'տէլ կը չարուի ընթրելու » ։

* *
*

Գիւղիս յԱրեւմտահարաւ $^3/_4$ ժամ հեռու Զուխայ Գօտեոր լերանց բարձր և լայնանիստ գլուխներէն միոյն վերայ վիթխարի քար մի կայ միակտուր և լեռնատեսիլ , որոյ գլուխը փորուած է խոր մը 2 մեթր տրամագծով և 4–5 մեթրը խորութեամբ ։ Սոյն քարն կը կարծուի թէ երբեմն բերդի տեղւոյ ծառայած է , որը վերաբերութեամբ հետևեալ աւանդութիւնն պահուած է ժողովրդեան մէջ ։

« Հին ժամանակ Հէքեարու պէյերէն մին , որոյ տիրապետութեան ներքև եղած կը լինին

այս կողմերն , զիւր ազդեցութիւնն ցոյց տալոյ նպատակաւ այս ահագին լեռնակարկառն ուղխայով կը պատէ փորձելոյ համար թէ կա՞յ մէկն , որ համարձակի զայդ չուխան գողնալ․ կանցնին տարիներ եւ ո՛չ ո.ք կը համարձակի ադոր մօտենալ , յետոյ ձիւնէն եւ անձրեւէն կ՚սկսի փտտիլ այդ ասուին . 'ի վերջոյ մերձակայ հասարակութիւնն մի կարդացուոր կը խրկէ առ յիշեալ պէկն ասելով թէ « հրաման տուր , որ քարին վերայ ձգուած ասուին վար առնեմք , վասն զի փտտած լինելով մի օր հովն կրնայ զայն փչել տանել եւ դուք պիտի գիտնայք թէ գողցուած է , որով մեր օձիքէն պիտի բռնէք , իբրեւ գող , ձեր այդ ապրանաց , որ կը կենայ տեղն 'ի տեղ ։

Պէկն առ այս հրաման կը տայ եւ գիւղացիք կը համարձակին զայն վերցնել․ ահա այս պատճառաւ գիւղիս անունն ալ «Զուխ» է , որ չուխայի կրճատեալն պէտք է լինի ։

Սոյն աւանդութեան վերայ նայելով աղնիւ ընթերցողք անշուշտ այդ վայրենի դարն իւր ապահով վիճակաւն պիտի բաղդատութեան դնեն ներկայ լուսաւորեալ եւ քաղաքակրթեալ դարու նմանօրինակ վիճակին հետ , եւ շատ պիտի զարմանան երբ իրարու հակապատկեր գտնեն զայնս ։

## ՄԵԿՆՈՒՄՆ

Զուխէն ենելով չարունակեմք մեր ուղին դէպ 'ի յԱնձրեւացեաց գաւառն , որոյ մի մասին

վերայ արդէն բաւական խօսուած է սոյն Բ. Մասի սկիզբը և որոյ մի այլ գիծն բռնելով նկարագրեմք և տեղեկագրեմք գնալով Վասպուրականի նշանաւոր գաւառներէն՝ 'ի Վան-Տոսպ ։ Նախ մեր ուղղութեան գիծն կը դառնայ Ջուխ գիւղին Հիւսիսային Արևմտակողմն , կանցնիմք «կարմիր» քարերն , ուր նուազ չէ պղնձէ հանքըն և գնամք « Ալեր Խան » ըսուած տեղին , որ երբեմն ծաղկեալ և այժմ անմարդաբնակ է և միայն կիսակործան պարիսպներն կան տակաւին կանգուն և յուշարար ։

Անկէ յետոյ կը գայ Խարամկայ ձոր (Խարամիկն նշանաւոր աւազակապետ մի եղած է 'ի Հայս) ։ Աստ ճանապարհորդք աներկիւղ չեն կարող անցնիլ , այս պատճառաւ մեր բարեխնամ կառավարութիւնն 5-6 հոգի ոստաւոր պահապաններ կարգած է յապահովութիւն ուղեւորաց , որք յաճախ տեղէս կերթևեկեն ։

Ճանապարհնիս յառաջ տանելով կը կտրեմք քիչ դաշտեր և երկայն ձորամէջեր ու կելնեմք Նշանկեաց կոչուած ընդարձակ բլրոց վերայ , ուր 2 հատ քարէ նշաններ տնկուած են , որք են ուղեցոյց ճանապարհորդաց , մին գնացողին և միւսըն եկողին համար ։ Սոյն նշաններն շատ պէտք են մանաւանդ ձմեռ ատեն ձիւն և փուք եղած պահուն և երբեմն խիկ կեանքեր ոչնչանալու առիթ կը լինին այդ քարերն , վասն զի սոյն տեղը բըլրագլուխ և միանգամայն բազմաթիւ ձորեր լի-

նելով, ճանապարհորդք շատ անգամ դիւրեանց ուղին կրնան կորսնցնել։

Այս տեղէն մեր ուղին յառաջ տանելով կը ժամանեմք «Զառխայ Կէօփրուկ» կոչուած երկայն լեռներու և ձորերու յատակը, որք Աղբակ գաւառի դրեթէ Արեւմտեան սահմանը կազմելով՝ զայն Անձրեւացեաց գաւառէն կը զատեն։

## ԳԼ. ԻԵ.

### ԱՆՁՐԵՒԱՑԵԱՑ ԳԱՒԱՌԻ ՄԻ ԱՅԼ ՄԱՍՆ ԿԱՄ ԴԱՐՁԵԱԼ ՎԵՐԻՆ ԽՕՇԱՊ

Մեր ուղին շարունակելով կրկին 'ի վերին Խօշապ, այս անգամ տարբեր գծով մը կ'իջնամք մի երկայն ձորոյ մէջ, որոյ սկզբնագլխէն կը բղխի պաղ և ընտիր ջուր մը, որոյ առընթեր իմ ցորեկուան ճաշն ընել սիրտս ուզեց, թէև տեղին լինէր իմ կանաչ Արեւուն փոթորկալից ռուզգեր, զոր գիւղացի կարապետս տեղւոյ բնութեան և հանգամանաց մասին հմուտ՝ ստիպեց զիս չկենալ աստ և մենք փութանակի կէս ժամճանապարհ եւս կտրելով պատահեցանք մի այլ տեղւոյ, որ կը գերազանցէր քան զառաջինն։

Տեղին դարձեալ Յօրտաջէ էր, ուր մեծ և ճերմակ քարի մը տակէն, արտասուքի նման, վճիտ և պայծառ ջուր մի կը բղխէր պատուական, որմէ անշուշտ այս անգամին հեռանալ չէր կարելի։ Աստ վերի ճաշիկս ընելոյ փափաքս յիս արթընցաւ բռնօրէն, որպէս բնական է ամառուան

ճանապարհի հոգնութենէն խոնջեալ ուղևորի մը համար ։ Սոյն պահուս վերի աղբիւրի անհաճոյ հանգամանքներն միտքս չուզեց յիշել, զի յափրշտակուած էր շատ հեռուն ։ Տեղս թէև լինէր երկրային, այլ մարդկային մտքի առջին կը պատկերացնէր երկնային մի դրախտ իւր ծաղիկներովն և կարկաջասահ առուակներովը, որք օձապտոյտ սողոսկելով կ՚ընթանային կանաչագեղ դալարեաց մէջէն ։ Աստ այն ինչ իմ հաւատարիմ ձին, (ում կը պարտիմ ես շատ բան) մի ծառայլից քարի կապելոյ վրայ էի զիմ ցանկալի ճաշն ընել. ահա հնարագէտ կարապետս անուշ ջրովն փորը ոկռեցուցած (ուռեցուցած) առ իս փութաց հապճեպօրէն և յաջողեցաւ կրկին զիս համոզել, չեմ յիշեր թէ ինչ խօսքերով, որ աստ ևս չ՚յապաղեմք ։ Քաղցիս սաստկութեամբ փութանակի տեղէս հեռացանք օրուան գալիք չարէն ազատ մնալոյ համար, մանաւանդ յանկարծ միտքս ինկաւ այս իմաստուն խօսքն թէ « չափազանց փափաքն շատ անգամ իւր վտանգաւոր կողմերն կունենայ » ։

* * *

Անկէ յետոյ ժամանեցանք յաւերակ կեօշկ, որ փոքրիկ գետակի մը քով խոտաւէտ տեղւոյ մը մէջ է, ուր 4 կիսակործան աղիւսաշէն պարիսպներ տակաւին կեցած են, որը համար պատմեցին թէ « երբեմն « Եղտի աղա » կոչուած Պէկն կը նստէր 'ի պահպանութիւն այս կողմերուն » ։

Այսուհետև բարձրաբերձ և լայնածաւալ բլուրներէ, ձորերէ և քիչ դաշտերէ անցանելով հասանք ի Կասըր գիւղ, որ Զուխէն 5 ժամ հեռու է և որոյ վերայ նախապէս խօսուած լինելով, առանց ատ կանգ առնելոյ շարունակեմք մեր ուղին Արեւմտեան Հարաւային գծովն 'ի Խօշապ' հին բերդաքաղաք, ուր կարող եմք հասնիլ 3 1/2 ժամէն անցանելով ընդարձակ բլրոց ստորոտներէ, ձորերու բերաններէ և մանաւոր դաշտերէ:

## ԽՕՇԱՊ ԲԵՐԴԱՔԱՂԱՔ

Սոյն հին և պատմական կեանք ունեցող բերդաքաղաքն կը գտնուի համանուն գաւառի (Վերին Խօշապայ) կեդրոնական Արեւելը, Վանայ յԱրեւելահարաւ և անկէ 7 ժամ հեռաւոր:

Քաղաքիս անուան ծագումն յառաջ եկած է գաւառիս գրեթէ Արեւելեան սահմանագլուխը կազմող Զուխայ և Քարահիսարի լեռներէն բղխող ջրերու ամբողջութենէն: Յիշեալ լեռներէն բազմաթիւ վտակներ և աղբիւրներ կը վազեն և որոնք երթալով կը միանան ու երկու գըլխաւոր ճիւղեր կը կազմեն, և յետոյ նոքա ևս միանալով մեծ գետ մը կը ձեւացնեն, որոյ ջուրն բարեհամ (անուշ) լինելով' 'ի նախնեաց Խօշապ կոչուած է, որ տեղական առմամբ կը նշանակէ քաղցր ջուր, որոյ եզերաց վերայ շինուած է քաղաքն, որ քովէն գետն կանցանէ, կամարա-

կապ, հին և գեղեցկաշէն կամուրջի տակից յառաջ խաղալով դէպ 'ի յԱրեւմուտս կը դնայ 'ի Հայոց ձոր, ուր զՃամիրամն կ'ողջունէ և Անգղայ գիւղի անուամբ մկրտուելով կը թափի Վանայ ծովը, չափելով ամբողջ Հայոց ձորը, 6 ժամուան երկայնութիւնն Արեւելէն յԱրեւմուտ ։

Ահա սոյն գետոյ անուամբն կոչուած է Նաեւ գաւառս · և արդէն բերդաքաղաքս իւր շուրջըն ունի բնական հետաքրքիր դիրքեր և լեռնակարկառներ, յորոց ոմանք մարդուս ահ և սարսափ կազդեն իւրեանց բարձրութեամբ և ահաւոր տեսքով ։

Սոյն քաղաքն 'ի հնուց քրդական Պէյից կամ Պարոնաց իշխանանիստ տեղին եղած էր և դրեթէ եռանկեան ձեւով կառուցեալ ընդարձակ ձորոյ մը մէջ, որոյ Արեւմտակողմն 'ի բաց առեալ, ամեն կողմերէ բարձրաբերձ լեռներէ շրջապատեալ կամ սահմանեալ է ։

Քաղաքիս բերդն բնական լերան մը վերայ շինուած և այժմ քայքայեալ է · իւր աշտարակներն միայն կը կենան, ընդ որս նաև մէկ կողման վերայ քանի մը կիսակործան սենեակներ, անգործածելի վիճակի մէջ. սենեակներէն երկուքի առաստաղներն Արաբական ճաշակաւ պատկերազարդեալ են ։ Երկաթեայ դուռն փակեալ կը կենայ, որոյ քովեր Արաբական մանաւոր յիշատակագրեանք կը տեսնուին, յորոց ոմանք անընթեռնելի եղած են ։

## ՊԱՏՄԱԿԱՆ

« Ասկէ 50–55 տարի առաջ, Պաշգալէի պարոնութեան ատեն, սոյն բերդաքաղաքին մէջ կը նստէր Ամին Պէկ անուն Քուրդ պարոն (զոր տեսնողներն տակաւին գաւառիս մէջ պակաս չեն), որոյ տիրապետութիւնն բաւական տեղեր կընդարձակուէր և էր բոլորովին անկախ, նման իւր բազմաթիւ նախորդաց:

« Ցետոյ Թամիւր փաշան Կառավարութեան հրամանաւ կը գայ և Ամին պէկի ձեռքէն կառնու այս քաղաքը, ուր ինքն փոքր ժամանակ մը նստելէն ետքը Իսահ փաշայի որդի Թաֆուր աղան իւր փոխանորդ կամ քաղաքապահ կը կարգէ և ինքն 'ի Վան կը վերադառնայ փաշայութեան պաշտօնով: Այս ատեններ Խօշապ քաղաքիս մէջ 1500 տան չափ բնակիչներ կային, յորոց 1000 տուն Հայանական ազգէն և մնացեալ 500ն Քրդական եղած են: Տեղւոյս Հայքն ունեցած են 2 եկեղեցի և 4 քահանայ »:

Բերդաքաղաքս իւր նախնի բազմահայութիւնն կորուսած է և այժմ 40 տուն Քուրդ և մի քանի տուն Տաճիկ հագիւ մնացած են, իսկ մերայնոցմէ և ոչ մի հատ: Հայոց եկեղեցիք այժմ կիսակործան կերևին, յորոց մին բերդի ստորոտը խոնարհուած և ուր երբեմն շինուած է, հոն տակաւին կը պահէ իւր գեղեցկաշէն կամարն, և Աստուծոյ փառք նուէր իւր ամբող-

ջուլթեամբն ։ Իսկ Հայ տանց դալով՝ թէև կխականդուն են, սակայն առանց Ադամորդւոյ մը կամ շնչաւորի մը կը կենան . . . Խօշապայ բերդին վերայ հին սենեկաց հետքերն փոքրաթիւ չեն և տեսարանաւն սիրուն և սքանչելի ։ Գետն արդէն մասնաւոր չքեղութիւն մը կընծայէ քաղաքիս դիրքին և տեսքին ։

Այժմ տակաւին վերին Խօշապէն (գաւառակէն) չ'մեկնած հետևեալովն ընդհանուր հայեացք մը ձգեմք Ներքին Խօշապայ վերայ, որոյ մի քանի կարևոր գիւղերուն մասին պէտք եղած տեղեկութիւնք տալէս և զայնս նկարագրելէս ու տեղագրելէս յետոյ մեր արդէն ընտրած ուղղութեամբ նորէն տեղէս ճամբայ ելնեմք շարունակելոյ մեր ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ դէպ 'ի Վան-Տոսպ գաւառն ։

## ԳԼ. ԻԶ.

### ՆԵՐՔԻՆ ԽՕՇԱՊ (ԳԱՒԱՌԱԿ)

Ներքին խօշապ կը գտնուի վերջնոյն ուղղակի Հիւսիսակողմն ։ Իւր բնական նկարագիրն (դիրք) Վերին Խօշապէն մեծ տարբերութիւն մը չունի, միայն թէ կրնայ ըսուիլ որ Վերինէն աւելի լեռնային է, մանաւանդ Արևելակողմերն ։

Խօշապայ սոյն մասն 33–35 Հայ գիւղեր ունի մեծադոյն մասամբ անդպրոց, որով կապրին առանց ԳՐԻ և հետևաբար առանց մտաւոր ղօրութեան և կենդանութեան ։ Իւրաքանչիւր

գիւղն միջին հաշուով 35 տուն բնակիչներէ կը բաղկանայ . չմոռնամ ըսելու , որ դպրոց ունեցող գիւղերու կրթական վիճակն այնչափ յոռի է , որ չեղեալ համարելու տխուր հարկին մէջ կը գտնուիմ :

Ուղեւորիմք ուրեմն ներքին Խօշապայ կարեւոր գիւղերն այցելել :

* *
*

ԱՐՃԱԿ . — Այս գիւղն կը գտնուի դաւառին կեդրոնական հարաւը , շինուած մի ընդարձակ դաշտի վերայ շրջապատեալ մեծամեծ ջըրարբի արտերէ և մարգերէ , բաւական ծառաստան ( անպտուղ ) , լաւ տեսարանաւ , օդով և ջրով :

Գիւղս կը բաղկանայ 120 տուն Հայերէ , որոնք ունին Ս. Գէորգ անուամբ գեղեցիկ եկեղեցի մը , 16 տարուան կառուցեալ , զոր կցած են 450 տարուան հնութեամբ տաճարին , ունին 2 քահանայ : Աստ մխիթարական , որով և ուրախալի պարագայ մի է յիշել , որ Ամեն . Խրիմեան Հայրիկին գեղեցիկ վարժարան շինել տուած է , ուր 50 էն աւելի գիւղական մանուկներ հաւաքուած ուսանին կրկին Վարագայ վանուց ժառանգաւոր աշակերտաց միոյն դասատուութեամբ : Գիւղս Վարագայ թէմն է , որմէ կընդունի ԼՈՅՍ և ՅՈՅՍ :

Արճակ՝ գիւղաքաղաք ըսուելու արժանի է, ունի ընդարձակ և բարեբեր գիւղեր , սակայն

իրենք տգիտութեան պատճառաւ միշտ աղքատ մնալոյ դատապարտուած են, վասն զի այսուհետեւ առանց մտաւոր կարողութեան, չիք այլեւս ճար եւ ճամբայ մարդուս համար, կենաց այս ծուռ ու մուռ աշխարհի մէջ՝ ուր ամեն ատեն չեն ծնանիր Րաֆֆիներ՝ ազգին ու հայրենեաց փառքն աւելցնող անհատներ։

ԵՐԵՔ ԹՈՒԽ ՄԱՆՈՒԿ ԵՒ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ՄԵՆԱՍՏԱՆ

Գիւղիս մէջ 3 հատ Թուխ մանուկներ կան, որոնք շաբաթ իրիկուններ կուրախանան մոմով եւ խնկով, զորս առած կը գան մամիկներ։

Արեւելեան Հարաւային կողմն կէս ժամ տարակայութեամբ Հարաւէն 'ի Հիւսիս ձգուած երկայն բլրոյ մը ստորոտը Աստուածածին անուամբ մենաստանիկ մը շինուած է քարուկիրով, այլ ոչ տաճարաւոր, որոյ շրջապատը չիք շինութիւն, բայց եթէ մի քանի ուռենւոյ ծառեր՝ շուք տըւող այդ ամայի մենաստանին եւ իրենք կը սնանին մի անուշահամ աղբերակաւ։ Սոյն վանքն Վարագայ վանուց իրաւասութեան տակն՝ տարին 2–3 անգամ յատուկ վարդապետ եւ տիրացու կը խրկուին աստ եւ Ս. Պատարագ տեղի կունենայ, ուր շրջակայ գիւղերէն եւ նոյն իսկ Վան քաղաքէն (որմէ 5 ժամ հեռու է) ուխտաւորներ կը գան ու այսպէս խուռներամ եկած՝ ուրախութեամբ կը տօնախմբեն Ս. Աստուածածնայ անունն իւր տրտում բնակարանին մէջ, զոր բնակելի ընելով բարեզարդելոյ համար Ամեն. Խրի-

մեան Հայրիկ յատուկ վանահայր կարգած է, որ այժմ շէնք և շինութիւնք ընելով զվանս իւր բազում տարիներէ հետէ ունեցած ամայութեան վիճակէն հանելոյ վրայ կը գտնուի ։ Սոյն վանքն լուսաւորութեան միջնորդ պիտի հանդիսանայ շրջակայ Հայ գիւղօրէից նոր սերնդեան համար ։

Արճակու յանմիջական Արեւմտակողմն կը գտնուի իւր համանուն ծովակն, որոյ ընդարձակութիւնն է յԱրեւելէն յԱրեւմուտ 2–2½ ժամ և Հարաւէն 'ի Հիւսիս 1½ ժամ ։ Սոյն ծովակն Վանայ ծովէն (որոյ վերայ 'ի կարգին կը խօսուի) աւելի աղի է, որով համեմատաբար անկէ աւելի քանակութեամբ բորակ (սալփէթր) կրնայ տալ, սակայն դժբաղդաբար գիւղացիք ջուրն պատրաստել և հանել չգիտեն, որպէս կընեն Վանայ ծովուն առընթեր Աւանցիքն ։

Ծովակս շրջապատեալ է Հայ և Քուրդ գիւղերէ, որոնք ոչխար շատ կը պահեն, մանաւանդ սոյն վերջինքն ։ Ամառ ատեն ոչխարաց որոշեալ ժամանակին, ըստ սովորութեան աղ տալոյ փոխան, հովիւք հօտերնին կը բերեն և ծովակիս ջրէն կը խմցնեն, որով ոչխարներն թէ առատ կաթ կը տան և թէ միանգամայն շուտով կը պարարտանան ։

Արճակ գիւղն իջեւան է Պարսկաստանի կարաւանաց 'ի Վան և յայլուր երթևեկութեան, այս առթիւ քաղցր և թթու շէրպէթներու յաճախ

ենթակայ կընայ համարուիլ ։ Ես քաղցըն խօսելով և թթուն 'ի մեկնութեան պահելով կը շարունակեմ զիմ ուղին ։

## ԳԼ. ԻԷ.

ԽԱՌԱԿՈՆԻՍ ԵՒ ԻՒՐ ԱԶԳԱՅԻՆ ՀՆՈՒԹԻՒՆՔ

Սոյն գիւղն կը գտնուի նախորդի հիւսիսակողմն 1 ժամ հեռու, գրեթէ Արճակու ծովակի յԱրեւելակողմն, շինուած ընդարձակ դաշտի մը վերայ հորիզոնական գրիւք և է անծառաստան, այլ տեսարանաւն հրապուրիչ ։

Տեղւոյս դրից պատճառաւ օդն շատ անդամ կռուոյ մէջ է և ես կարեմ ըսել թէ հանդարտ վայրկեաններ շատ քիչ կընար ունենալ ։ Հողերն ընդարձակ և արգաւանդ են. ամենամեծ մասամբ անջրդի. խոտաւէտ են դաշտերն ու մարգերը ։

Գիւղս կը բաղկանայ 170 տուն Հայերէ, որք ունին Ս. Թադէոս անուամբ հաստատաշէն եկեղեցի մը՝ կառուցեալ վանքի ձեւով կոփածոյ քարերէ ։ Իւր թուականն անյայտ է, սակայն 400 տարեկանէն չ'պէտք է պակաս լինի ։ Գերեզմանատան տապանաքարանց մէջ 350 տարուան յիշատակագիրներէն աւելի տարէոր չ'տեսնուիր ։

Ըստ աւանդութեան՝ սոյն եկեղեցին շինել տուողն է տեղւոյս Աչըղ–Չինակ մականուանեալ «բանաստեղծ» Հայն, որոյ գերեզմանի կապոյտ տապանաքարն, եկեղեցւոյս առընթեր, մեծէն և

փոքրէն ցոյց կը տրուի, որ այժմ կը ծառայէ ջերմ և դող ունեցող հիւանդաց 'ի բժշկութիւն։

Քանի՜ անզուգական երախտագիտութիւն մեր այս Հայ գիւղացւոց սրտի և հոգւոյն մէջ։

Գիւղս ունի Նախակրթարան մը, ուր ձմեռըն 40-45 աշակերտք կուսանին, իսկ ամառը 8-10 հոգի հազիւ։ Սոյն Նախակրթարանն Միացեալ Ընկերութեանց տեսչութեան ներքև կը կառավարուի և կը հոգացուի ծախիւք մեծանուն Սանասարեանցին։ Շէնքն է միայարկ և անառողջապահիկ։ Աստ դասատու կարգուած է Ռուսաստանցի մի ազնիւ երիտասարդ։

* * *

Տեղւոյս Ազգային Հնութիւնք

Ա. — Ս. ՍԱՐԳԻՍ աղբիւր մը, որ երեք կողմանէ ծածկեալ մատուռ մի է, շրջապատը մի քանի ծառեր, ուր տարին մի անգամ Ս. Յարութեան առաւօտը և Համբարձման տօնին գիւղիս բնակիչներն կը գան յուխտ և ուրախութիւն կընեն մերձակայ այլ գիւղացւոց հետ։

Բ. — Ս. ՍԱՆԴՈՒԽԻ (Սանդխտոյ) բլուր, որոյ վերայ կայ մի խաչաքար։

Գ. — Գաղան Քէլլէսէ կոչուածն տեղի մի է գիւղիս սահմանին մէջ, որոյ նախնի բնակիչներն «250 տարիէ 'ի վեր աներևոյթ եղած են», առանց յիշատակարան թող մը տալոյ, որմէ մենք այժմ կարող պիտի լինէինք գոնէ փոքրիկ լոյս մ'առնուլ։ Եկեղեցւոյ հիմնատեղին նշմարելի է

մի քանի տապանաքարանց տեսանելիութեամբ ։

Դ. — ԳՈՒՇԱՑ ԵԿԵՂԵՑԻՆ, որ ըստ աւանդութեան « Նոխ եկեղեցի մի եղած է » սոյն լակոնական աւանդութիւնն ստուգութեան կը մերձի, երբ կը տեսնեմք՝ որ յիշեալ քարանց չրջապատի հողերն երկրագործելոյ ատեն գետնի տակէն գլուխնին դուրս կը հանեն գերեզմանատան մեռելոց քարերն, որոց դէմքերն յար և նման են Ղազարոսի կերպարանաց ։

Գիւղիս հին և բազմաթիւ բնակչաց մէջ կը պատմեն թէ « բանաստեղծներն միշտ պակաս չեն եղած, յորս Նշանաւորն է վերոյիշեալ Աշըղ-Զինակն, որոյ գրական գործերն կորած են » ։ Տեղւոյս այժմեան բնակչաց արական սեռն թոյլ և անուժի է, իսկ իգականն նորա հակապատկեր՝ հանդերձ անվեհեր ոգւով . ահա մի միանուր պարագայ, որ գեղեցիկ սեռին իրաւանց հաւասարութեան դատի պաշտպաններուն նիւթ մը կրնայ մատակարարել՝ի պահանջել հարկին ։

*
* *

Ներքին Խօչապայ սոյն նշանաւոր գիւղերէն զատ երևելի են նաև Սարա, ուր կը նստի գաւառիս Գայմագամն, որ 3-4 տարի առաջ կընըստէր 'ի Խօչապ (բերդաքաղաքն) . նոյնպէս Ախուռիկ, Բապապիկ և Պօղազքէսէն գիւղօրայքն ։

Գաւառիս ընդհանուր վիճակին վրայ այսչափ բաւ համարելով՝ դարձեալ սկսիմք ճիշդ այն կէտէն, ուր պահ մը կանգ առնելոյ հարկ

եղաւ՝ Ներքին Խօշապայ վերայ անտեղեակ Թող չտալոյ Նպատակաւ զուշիմ ընԹերցողս ։

# ՄԵԿՆՈՒՄՆ

Խօշապ բերդաքաղաքէն յԱրեւմուտ մեկնելով 'ի Վան-Տոսպ գաւառ, $2\frac{1}{2}$ ժամուան ճանապարհ ընդարձակ լեռնահովիտ մի է, որոյ մէջէն կընԹանայ ծանուցեալ գետն. սորա երկու եզերաց վերայ գարնան եղանակին ջուրն յորդուԹեամբ կը կոխէ և ապա տեղատուուԹենէն զկնի տեղական քուրդերն կը վարեն, կը ցանեն և առատօրէն կը հնձեն։ Տեղւոյս գետական ափունքներն Եգիպտական Նեղոսի ափանց արգասաւորուԹիւնը կը յիշեցնեն ուղեւորաց. խոտաւէտուԹիւնն ևս նշանաւոր է այս տեղերուն ։ Այսպէս ուղի առնելով $2\frac{1}{2}$ ժամէն հասանք Կէ-Լէ-Տխաբուն կոչուած տեղին, ուր ճանապարհորդք ինչ ինչ երկիւղի տագնապներէն կը յուզուին, ըստ որում գետի երկու կողմերը լերանց բազմաԹիւ ծործորներ և լայն ծերպեր կը գտնուին, որք լաւ կը ծառայեն պէտք ունեցող կարգ մը Տուբդոյ, որք զինուորական կանոնաւոր հրամանատարէ մ'աւելի քաջ գիտեն բնական դիրքերէ օգուտ քաղելով Նպատակի հասնիլ ։

Սոյն զուարճալի, այլ անբնականէն աւելի ահարկու տեղն ցորեկուան ճաշերնիս ընելոյ աբիուԹիւնն ունեցանք, սակայն արդարուԹեան դէմն գործած չըլլնելոյ համար պէտք է խոստովանիլ նաև Թէ հացի կտորուանքն, առանց

ծամելոյ , շատ անգամ ողջ ողջ կուլ տալն մեր առաջին քաջութիւնն էր , որպէս զի շուտով վեր-ջանայր , որով մենք շարունակէինք անփորձ՝ մեր ՏԵՂԱԳՐԱԿԱՆ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆՆ ։

Այսպէս ահա տեղէս մեկնեցանք ու մի և նոյն գծովս ճանապարհնիս յառաջ վարելով ան-ցանք հետզհետէ աւելի լեռնային քան թէ դաշ-տային տեղերէ եկանք Երուանդունեաց Արեւե-լեան սահմանը , յորմէ ուղինիս մասամբ մը ծռե-լով դէպ 'ի յԱրեւմտահիւսիս մտանք 'ի Տոսպ՝ գլխաւոր գաւառն Վասպուրականի և գրեթէ 4 ժամու չափ ուղի կտրելէն յետոյ հասանք 'ի Վան քաղաք , զոր մեզ կեդրոն ընտրելով պիտի սկը-սիմք Վան-Տոսպ գաւառն կանոնաւոր եղանա-կաւ տեղագրել , նկարագրել , պատմագրել , հը-նագրել , աւանդագրել և ՄՏԱԳՐՈՇՄԵԼ . . . ։

## ԳԼ. ԻԸ.

### ՎԱՆ-ՏՈՍՊ

Գաւառիս սահմանն է Արեւելքէն Խօշապ , (Մահմուտիէ) , Արեւմուտէն Վանայ կամ . . . Աղ-թամարայ ծով . Հարաւէն Երուանդունիք (Հայոց Ձոր) . Հիւսիսէն Առբերանի կամ Նոր անուամբ Բերկրի գաւառ ։

Սոյն գաւառի բնական դիրքն մեծագոյն մասամբ դաշտային է , մանաւանդ Հիւսիսային Արեւմտակողմերն , մնացեալքն լեռնային , ձո-րային և հովտային են ։ Լերանց մէջ նշանակելի

է Վարագայ լեառն յԱրեւելից կողմէն, որ կը ձգուի Հիւսիսէն 'ի Հարաւ 1½ ժամուան երկայնութեամբ։ Այդ լերանց մէջ անպակաս են վայրի կենդանիք, ինչպէս երխվար, արջ, գայլ, աղուէս, նապաստակ եւ ուրիշ վայրի փոքր կենդանիներ։ Վարագայ այս հսկայ լեռն, որ 10,000 ոտք բարձրութիւն ունի, բաժնուած է երկու ճիւղերու երկայն եւ ընդարձակ լեռնահովտով մը, որոյ Արեւելակողման «Վարագայ լեռ» եւ Արեւմտակողմանն «Շուշանից լեռ» կանուանի (սոցա վրայ տակաւին ունիմ խօսելիք)։

Վան-Տոսպ գաւառի օդն բարեխառն է եւ հողն բաւական բարեբեր. ժողովուրդն առ հասարակ երկրագործ է. Հիւսիսային Թչմուչ կոչուած ընդարձակ մասի հողերն ամենամեծ մասամբ անջրդի են եւ հետեւաբար այդ խեղճ գիւղացւոց բաղդն Երկնից կամարէն կախեալ է, յորմէ երբ ժամանակին անձրեւք չ'ցօղեն, գաւառիս այս մասի ժողովուրդն ամենամեծ թշուառութեանց կ'ենթարկուի, որով եւ կը մարի։

Գաւառիս գլխաւոր ջուրն է «Սեւ գետ» կամ «Մամռու գետ» կոչուածն, որ իւր վերջի անունն առած է համանուն գիւղէն, որոյ քովէն կ'անցանէ, երբ կը մօտենայ Բզնունեաց ծովուն, որոյ մէջ կը թափի արդէն։

Սեւ գետն ամբողջ Թիմարը յԱրեւելէն յԱրեւմուտ կը չափէ, սակայն շատ քիչ օգուտ կընծայէ այդ բազմակարօտ ժողովրդեան։ Սոյն

գետոյ ժլատ ընթացքին կարելի է այնպիսի ուղղութիւն մի տալ, որով բազմաթիւ արտօրէից ջուր չզլանայ. բայց ո՛չ ոք կայ և չիք 'ի միջի, որ այս օրինակ աշխարհաշինութեան վերայ մըտածելոյ գլուխ հոգնեցնէ կամ Նէ-ն զոհէ։

Վան-Տոսպ գաւառն կը պարունակէ 50 գիւղ, որոց բնակչաց ընդհանուր գումարն 22,000 հոգիէն պակաս չէ(*) միջին հաշուով, յորոց 17,000 Հայ են և մնացեալ հինգ հազարն Տաճիկ, Քուրդ, Ասորի, Եզտի (Արեւապաշտ), Չէրքէզ և Գնչու են։ Այս վեց տարազգիներէն վերջինքն համեմատաբար փոքրաթիւ են, յորս Գընչուներն աստանդական են, իսկ մէկալներն նըստական՝ որք կրնան զիրենք համակրելի ցոյց տալ Հայոց և Հայերն շատ հաւատարիմ և անկեղծապէս սիրող են իրենց ՏԻՐՈՋԸ։

Երկրիս ազնուութիւնն այն աստիճան շօշափելի է, որ ժողովուրդ անզգայութեան դատապարտած է նոյն իսկ իւր ընտանեկան կամ տընական ամենաանձուկ շրջանակի մէջ, ուր գոնէ ազատ է ներմուծել ՎԵՐԱՆՈՐՈԳՈՒԹԻՒՆ և ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԻՒՆ։

Այս ընդհանուր տեղեկութիւնք տալէս զկնի գաւառիս ամենակարեւոր տեղին, զՎան քաղաք մեզ կեդրոն բռնելով ուղեւորիմք իւրեան

(*) Վան քաղաքն, որոյ վերայ ընդարձակօրէն խօսուած է իւր տեղագրութեան մէջ, սոյն հաշուէն դուրս նկատելու է։

չորս կողմերը և տեղագրեմք, կարելի եղածին չափ, զկարեւորն, զօգտակարն և զզուարճալին, զորս բազմաչարչար ՈՒՂԵՒՈՐՈՒԹԵԱՄԲ յաջողած եմք ուսումնասիրել և ոչ թէ նստած տեղ հանգիստ՝ հարց ու փորձ ընելով գործ յօրինել։

## ԳԼ. ԻԹ.

### ՎԱՆ ԲԵՐԴԱՔԱՂԱՔ

Սոյն քաղաքն Վասպուրական Աշխարհի ամենամեծ և գլխաւոր քաղաքներէն մին է և կը գտնուի յիշեալ նահանգի յԱրեւմուտ՝ Տոսպ գաւառի մէջ, շինուած մի ընդարձակ ու տափարակ դաշտի վերայ լայնածաւալ նստուածքով՝ մի ահարկու և բնական որձաքար լերան հարաւային ստորոտը, համանուն ծովու յԱրեւելակողմն կէս ժամու հեռաւորութեամբ։ Կլիմայն բարեխառն է և ջուրն բաւական լաւ ու տեղ տեղ պատուական տեսարանաւ։ Ձմեռն 6 ամիս սաստիկ ձիւն և ցուրտ կընէ, այնպէս որ երբեմն կը ճայթեցնէ նոյն իսկ պղնձէ սափորներ (կիւյիւմ), այլ եւս խօսք չըլլայ հողէ ամանին։

Ըստ Ազգային Պատմութեան՝ քաղաքիս նախակառուցանողն եղած է Ասորեստանի Շամիրամ թագուհին, որ տեղւոյ դիրքն և կլիմայի բարեխառնութիւնն սիրելով զայն իւրեան ամարանոց ըրաւ, զարդարելով նշանաւոր շինութեամբք և արքայական պալատներով։ Աստ չը մոռնալ պէտք է Գերմանական հնագիտաց կար-

ծիքն, որ զՎան քաղաքն շինուած կը նկատեն յառաջ քան զՇամիրամն ։

## ԲԵՐԴ

Զբօսասէր Թագուհին յիշեալ քարալեռն տաշել և կանոնաւորել տալով՝ կը պատրաստէ մի ականաւոր բերդ, որ այժմ ուղղահայեաց դիրք կամբառնայ դէպ 'ի յերկինս ահարկու բարձրութեամբ, մանաւանդ Հարաւային կողմանէ ։ Բերդն ձգուած է յԱրեւելէն յԱրեւմուտ կէս ժամ երկայնութեան և մէկ քառորդ ժամ լայնութեան վերայ ։ Հիւսիսային և Հարաւային կողմերն 7–8 բաւական ընդարձակ քարայրներ կան, յորոց ոմանք, կաւանդուի թէ «քաղաքիս նախնի հիմնադրի օրէն կը գան» և անհընարին աշխատանաց գործ են, յատուկ մուրճով քարափոր պատրաստուած ։

Բերդիս այլ և այլ կողմերն կը տեսնուին ԲԵՒԵՌԱԳԻՐ արձանագրութիւնք, յորոց կան եղծեալներ և կան անեղծներ, որ գրեթէ 2 տարին անգամ մը միշտ Եւրոպական ուղեւորներէ կընդօրինակուին ։ Բեւեռագիրներէն փայլուն մասն կը գտնուի բերդի Հարաւային ճակտի վերայ, ուր անեղծ մնացած են իւրեանց բարձութեան և հնութեան մէջ ։

*
* *

Վան քաղաքն նախապէս «Շամիրամակերտ» (Շամիրամէն շինուած) կոչուեցաւ Թագուհւոյն անուամբ, որոյ յիշատակն տակաւին

անկորուստ կը մնայ քարաշար վիմխարի պարիսպով (*) մը և յանուն Շամիրամայ կոչուող մի քանի փողոցներով, յորս այժմ կը բնակին մեր Տաճիկ դրացիներն ։ Յետոյ ՎԱՆ . . . . կը գայ զքաղաքն կրկին կը զարդարէ և յանուն իւր կը մկրտէ, որով ց'արդ կ'անուանի ՎԱՆ ։

Այս քաղաքն, որպէս պատմութենէն յայտնի է, անհնարին փոփոխութիւնք և պատահարք տեսած լինելով ինկած է երբեմն Թաթարական, Յունական և երբեմն իսկ Պարսկական լծոյն ներքեւ, զոր աստ կրկնել աւելորդ է և մանաւանդ ՏԵՂԱԳՐՈՒԹԵԱՆՍ նպատակէն դուրս լինելով կրնայ ներկայ շրջանակիս ընդարձակութեան հետ խոտոր համեմատիլ և անծանօթն չ'գտնուիլ ։

Վանայ ամենահին նախանձելի փառքերէն թերեւս ծագումն առած լինի հետեւեալ թըրքական առածն թէ « Տիւնեանէ ՎԱՆ, Ախիրէթտէ իման » ։

Քաղաքիս նկատմամբ ակնարկած փառքերըն ու ճոխութիւնքն կորուսած լինելով այժմ ենթարկուած է մի տեսակ անշքութեան և պիտի արժանանայ մի տեսակ փառաց, որոց անուանքն այն ժամանակ պիտի տամ, երբ առիթ ունենամ

(*) Քաղաքի յԱրեւմտակողմն «Իսկալի Տեարկախ» (նաւահանգստի դուռ կամ տաճիկ. իսքէլէ գաբուսու) կոչուած հին եւ աւեր մեծ դրան քովի հսկայ քարաշէն պարիսպն է, որ կը թուի լինել Շամիրամայ գործըն կամ ժամանակակից ։

ՀԱՅԱԲՆԱԿԻ մերայնոց ներկայ վիճակին վերայ իմ փորձառական տեսութիւններն ընել կամ հրապարակական ճառերս խօսիլ։

*

* *

Վան իւր ամբողջութեամբ երկու գլխաւոր մասերու կը բաժնուի, որոնք իրարմէ շատ տարբեր բնական վիճակ ունին և մենք խօսիմք կարգաւ իւրեանց տարբերութեամբն ։

Ա. ՔԱՂԱՔ

Քաղաքն, որպէս վերև ասացի, շինուած է յիշեալ բերդի Հարաւային անմիջական ստորոտը. բերդի Արևելեան և Արևմտեան ծայրերն կցեալ են պարսպաց և խրամներու ծայրերուն, ըստ որում քաղաքի, 'ի բաց առեալ Հիւսիսակողմն, ուր արդէն բերդն է, միւս կողմերն կրկին պարիսպներով պարսպեալ են, թէև այժմ պարիսպներն և խրամներն լինին կիսակործան ու բարձի թողի վիճակի մէջ. աւելորդ իսկ է ըսել թէ նոքա իւրեանց նախնի կարևորութիւնն կորուսած են և այժմ փառք Նախախնամութեան, որ մեր Օսմանեան մեծազօր պետութիւնն այդ օրինակ պարիսպներու և խրամներու պէտք չունի ։

Քաղաքն ունի երեք հատ հսկայ դուռներ Ա. Արևելակողմանն՝ որ կը կոչուի «Դավրէզ (Դավրէժ*) դափու». Բ. Արևմտակողմանն՝ որ

(*) Պարսկաստանի Դավրէժ քաղաքէն եկող կարաւանաց դուռն լինելուն համար, 'ի հնումն Դավրէժ կոչուած է, այժմեան անունն նախորդի աղաւաղեալն է, որպէս կը տեսնուի։

կ'անուանի «Իսկալլի Տարկեալ» (իսկելէ գափու կամ Նաւահանգստի դուռ), վասն զի բացուած է դէպ 'ի ծովն և չ'մոռնամ ըսելոյ որ սոյն դը-րան հիմերն միայն կապրին ներկայիս մէջ : Գ. Հարաւակողմանն՝ «Օրթա գաբու» (միջնադուռն:

Բերդի Հարաւակողմն կը գտնուին չուկայք (կրպակներ) և բնակութիւնք (քաղաքին միայն), վերջինքն առաջիններէն զատուած են նեղ փո-ղոցներով : Չուկայից ընդհանուր կրպակներու թիւն 1,500 էն պակաս չէ, յորոց մեծագոյն մա-սը կոկիկ ճարտարապետութեամբ շինուած է և են ոմանք երկայարկ և մնացեալ փոքրիկ մասն բաց և ողորմելի վիճակի մը մէջ կը գտնուի :

* * *

Վան Կուսակալանիստ քաղաքն ունի կա-ռավարութեան քաղաքային և զինուորական պաշտօնատունք, ընդարձակ զօրանոց, հիւան-դանոց, մթերանոց, ամբարատեղիք, բաղնիք-ներ և ժողովրդական այլ և այլ շինութիւնք ու զբօսավայրք, իւրաքանչիւր կեդրոնատեղին ու-նի իւրեան յատկացեալ աղբիւրներ և մասնաւոր ջրեր, յորս պատուական և նշանաւորն է «փոս-աղբիւր» կոչուածն, որոյ ջուրն իւր անուշու-թեան հետ ունի նաև կաթի համ : Սոյն անուա-նի աղբիւրն չուկայէն 10 վայրկեան հեռու է :

## ԳԼ. Լ.

### ՎԱՆԱՅ ԲՆԱԿԻՉՔ ԵՒ ԲՆԱԿՈՒԹԵԱՆՑ ՎԻՃԱԿՆ

Վանայ ընդհանուր բնակչաց թիւն է 5,500

տուն միջին հաշուով, յորմէ 3,000 Հայկական են և 2,500 Թրքական: Տուները առ հասարակ միայարկ, երկյարկ և քիչ եռայարկ են, շինուած անեփ աղիւսէ պատերով քարահիմն և բաւական գեղեցիկ ճաշակաւ: Մասնաւորները ունին ամենապատուական շէնքեր, որ մեծագոյն մասամբ պատշգամաւոր են և քարաշէն: Տուները ծածկեալ են աճագին դերաններով, խիստ ամրատանիք, որ հրդեհէ բնաւ երկիւղ չունին, միայն թէ բնակութեանց տարիքները հորիզոնական դրիւք շինուած լինելով, բնակիչք պարտաւորեալ են ձմեռ տանեն տանեաց վերայ նըստած ձիւներն սրբել (վար տալ), որ յիրաւի քիչ չարչարանք չէ, մանաւանդ երբ սովորականէն աւելի քանակութեամբ ձիւն նստած լինի և մի և նոյն տանեն ձիւն սրբող քառ-ճըն ծոյլ:

*

* *

Մասնաւորապէս քաղաքի տանց փողոցները նեղ, ոլորապտոյտ և անյարմար են (բացառութիւնք չ՚մոռնալով), մեզ կը յիշեցնեն Պօլսոյ նեղիկ սօխախներ: Մեր խօսքն Այգեստանի վերայ չէ. քաղաքն անծառաստան լինելով չունի լաւ տեսարան. տուները խիտ առ խիտ իրարու վերայ շինուած են: Բերդի լայն երեսն, որ անմիջապէս կը նայի փոքրիկ հեռաւորութեամբ, շուկայից վերայ, Հիւսիսային հովերուն դէմն զօրաւոր արգելք մի է, որ ձմեռ եղանակին իւր օգուտն ունի և ամառ տանեն՝ իւր վնասն, ըստ

որում քարերն տաքցած ժամանակ տաքու-
թիւնն կանդրադառնայ բնակութեանց վերայ և
կը նեղէ զբնակիչս առ հասարակ, որք սոյն բը-
նական երեւոյթին համբերելոյ պարտաւորեալ
են ։ մանաւանդ ծօփաւոր բնակիչներն ։

Քաղաքի միւս կողմերէն ևս, որպէս յիշած
եմ արդէն, այլ և այլ պուրխաղներն կարգելուն կեն-
սատու ՕԴԻ հոսանքները, որմէ բացարձակա-
պէս կախեալ է, ժողովրդեան ՇՆՉՈՑՆ տուր և
առըն, որով պիտի պահպանէ իւր կենսական զօ-
րութիւն, այս պատճառաւ կրնայ ըսուիլ որ
մասնաւորապէս քաղաքի օդն նախանձելի չէ,
որով յառաջ եկած է բնակչաց նիհար կազմու-
թիւնն (քիչ բացառութեամբ) և յառաջ կը գան
շատ անգամ այլ և այլ հիւանդութիւնք, յորոց ո-
մանք մահացու են, մանաւանդ [illegible] ման-
կանց համար ։ Նոյնպէս քաղաքացւոց աչաց հե-
ռատեսութիւնն աւելի կարճ է քան թէ այդեւ-
տանցւոց, վասն զի առաջինքն չունին աչքի ըն-
դարձակ հորիզոն, (խսկ մտաց՝ չգիտեմ, զի տա-
կաւին չեմ ուղևորած մտային վերնագաւառնե-
րը) տնէն դուրս ելած ատեն չեն տեսներ դէ-
մերնին լայնածաւալ դաշտօրայք կամ արտօ-
րայք, կամիմ ասել թէ զուրկ են դեռ զգալի
հորիզոնէ և իմանալին ևս գրեթէ ոչինչ ։ Իմ
այս 'ի բնուստ ըրած տեսութիւնս ակնոց գոր-
ծածելոյ պարտաւորեալ մասին խիստ չօշափելի
կրնայ համարուիլ 'ի Մայրաքաղաքիս ծնած բը-

նակչաց, որոց մէջ բազմաթիւ են կուրճարեանն:

Վանայ երկու մասի բնակչաց մէջ մին եղած վերոյիշեալ տարբերութիւնն ուղղակի արդիւնք կրնայ համարուիլ ուրեմն տեղական օդին և բնական կլիմային:

*
* *

Բերդի գլխէն երբ թնդանօթ որոտնդոստ կ'արձակուի մերձակայ տներն բնական մի ղարհուրանքէ կը բռնուին և բնակութիւնքն, կարծես թէ, երկրաշարժի ցնցումներ կզգան, սակայն մեղք իրենց, որ հարիւրաւոր տարիներէ 'ի վեր այդ ձայն կը լսեն և տակաւին չեն ընտելացած նորա բնութեան և ոճին:

Մեր Մահմետական դրացեաց բնակութեանց թիւն 200 էն վեր չանցնիր բուն քաղաքի մէջ: Քաղաքէն դուրս ամենքն ալ ընդարձակ տեղերը բնակութիւնք հաստատած են թէ քաղաքին մերձ և թէ Այգեստանի Հայ բնակութեանց շրջապատը մանաւանդ:

Գլխաւոր արտածութիւն (էքսփօրթասիօն). — բուրդ և ԲԻՖՐԷԿ (բուրդի նուրբ և ազնիւ տեսակըն, զոր նէօրժ կանուանեն և զայն կրող ոչխարին ալ շալ անուն կըտան): Ընտիր մանիսայի նման շալեր և գոյնզգոյն աբաներ, նուրբ և ճաշակաւոր գործուած, յորոց ոմանք մեր Պօլսեցնակ եղբարց անծանօթ չեն և երբեմն իսկ կը հագնին, մանաւանդ ձմեռ ատեն: Կարեւոր պարագայ մի է յիշել, որ Եւրոպական ապրանաց նոյն

օրինակ զգեստեղէններէն չորս անգամ աւելի կը դիմանան և գինն ևս համեմատաբար շատ աժան, ուստի քաջալերութեան արժանի ։

Անասուններէն դուրս կը տարուին ստուար թուով ոչխար, տաւար (կով և եզ), ձի ։ Նշանաւոր է Վանայ կատուն՝ իւր առատաբուրդ ճերմակ գոյնովն և սիկութեամբն (ճարտարութիւն կատուի) ։ Դուրս կը տարուին մեծ քանակութեամբ այծու, եղան և գոմէշի կաշիներ ։

Ներածութիւն (էմփօրթասիօն). — Պօլսէն Եւրոպական ամեն տեսակ ապրանքներ, Պարսկաստանէն մեծ քանակութեամբ բամպակ, մետաքսին շալէր (գօտի), չիթ, կտաւ ։ Նոյնպէս քիշմիշ (չամիչի մանր և անկուտ տեսակն), պաղլեղ, կլաքար, տորոն (որմէ տեղս ալյառաջ կը գայ, այլ նուազ քանակութեամբ)։ Բերիայէն (Հալէպ) այլ և այլ գործուածքներ, բամպակէ մանաւանդ, յորս նշանաւորն լլինայ համարուիլ մանիֆան ։ Նշանաւոր է նոյնպէս կանանց տնական ձեռագործն ։

* *

Վանայ Հայ բնակիչք (Մահմետականաց մասին 'ի կարգին կը խօսուի) առ հասարակ արհեստներով կզբաղին, կան նաև բաւական թուով վաճառականներ և մասնաւոր առ և տուր ընողներ, վերջնոյն մէջ կան և Տաճիկներ ։

Տեղւոյս գլխաւոր արհեստներն են, ոսկերչութիւն, կօշկակարութիւն դերձակութիւն,

հիւանութիւն (իւրեանց տեսակներովն) պղնձագործութիւն, դարբնութիւն, պայտառութիւն, թամբագործութիւն, ոսկերչութիւն. կը գտնուին նաև մանաւոր արհեստաւորք, ինչպէս խաղաղորդ, ժամագործ, ձուլիչ, թիթեղագործ ևն: Տեղւոյս արհեստաւորքն Հայերն են:

Թելի վերաբերեալներն են կտավագործութիւն իւր հաստ և նուրբ տեսակներով, որոնք նշանաւոր են իրենց դիմացկունութեամբ, որպէս են Լէր և «տարբէնղ», որոց ներկն և նախշուննութիւնն դարձեալ իրենք կըտան, ինչպէս և իրենք կը գործեն, զորս մեծագոյն մասամբ շրջակայ գիւղացիք կսպառեն:

Բրդեղինաց գործուածքներն աւելի նշաւոր են, զորս վերև յիշեցի արդէն:

* *
*

Վանայ 3,000 տուն Հայք 5 գլխաւոր թաղերու բաժնուած են ազգայնապէս, յորոց իւրաքանչիւրն իւր ստորաբաժանումներն ունի. մենք այժմ խօսիք գլխաւորաց վերայ կարգաւ, համաձայն մեր արդէն ընտրած ՈՒՂՂՈՒԹԵԱՆ:

1. Քաղաքամիջի Թաղ

Քաղաքի Հայք 500 տուն են, որք ունին 7 եկեղեցի, յորս նշանաւորն է յանուն Ս. Պօղոս և Պետրոս Սրբազան Առաքելոց կառուցեալն, որ մէկ յարկի ներքև բաժանեալ է երկու ընդարձակ մասերու. այս առթիւ կը կոչուի նաև «Ջխտակ ժամտուն» (տեղական առմամբ զոյգ եկեղեցի):

Նոյնպէս երեւելի է Ս. Նշան կոչուած փոքրիկ, այլ գեղեցկաշէն եկեղեցին, որոյ տաճարի յաջակողմն առանձին խորանի մը մէջ խնամօք կը պահպանուի ԿԵՆԱՑ ՓԱՅՏԻ ՄԻ ՄԱՍՆ, երբեմըն գերութենէ բերուած Պարսկաստանի մերձակայ տեղերէն ։

Սոյն եկեղեցւոյ մէջ, սովորական եօթնեկի օրերէն զատ, ամեն ուրբաթ օրերը (՚ի նշան ուրբաթու խաչելութեան Թերեւս) Ս. Պատարագ մատուցանելոյ նախնական սովորութիւնն տակաւին կը պահեն, բազում բարեպաշտ անձինք և մանաւանդ ջերմեռանդ կանայք աստ կը գան յուխտ այլ և այլ կողմերէն ու Թաղերէն. կանանցմէ ոմանք բոկոտն կը գան, որպէս զի ուխտերնին ընդունելի լինելով՝ Ս. ՆՇԱՆ իրենց սրտի մուրատ տայ. Թէպէտեւ իրենք բացարձակապէս արգելեալ են տաճարի դռնէն ներս ոտք կոխելոյ և ըստ սովորութեան տաճարի դրան առջև կընեն աղօթքնին, հոն կը ծեծեն կուրծքերնին և հոն կընեն կրկին խնդրուածքնին, որոց տեսակներն իւրեանց Թող տալով, դուրս կելնեմ տաճարէս, զոր մշտական հիւր կը պահեմ սրտիս և հոգւոյս մէջ ։

*

* *

Եկեղեցւոյս կից է Հայոց Առաջնորդարան. միւս եկեղեցիքն ևս առ հասարակ կանոնաւոր են կառուցմամբ և մեծագոյն մասամբ տաճարաւոր ։ Քաղաքին մէջ 2 վարժարաններ կան ։

մին արական և միւսն իգական սեռին յատկացեալ. առաջին կը կոչուի «Յիսուսեան Վարժարան», որոյ անուամբ անցեալ տարի շինեցին մի շէնք երկյարկ և դասարանական դրութեամբ կառուցեալ, ուր այժմ կ'աշակերտին 180–200 ուսանողներ, որք բաժանեալ են երկու մասերու այսինքն ուսումնարանի և ծաղկոցի աստիճանաց: Վարժարանիս ուսմանց ծրագիրն սովորական ուսանելի առարկայներէն աւելի տեսակ չ'պարունակեր ներկայիս մէջ (*):

Յիսուսեան սոյն վարժարանին համար, ուրախ եմ ասելոյ, որ Կարինէն յատուկ հրաւիրմամբ եկած է Զմիւռնիացի Մեծ. Այգեվարդէֆէնտի Ալանեան, որ վարժարանիս մէջ պաշտօն կը վարէ իբրև մանկավարժ և ձայնագրութեան (Նօթա) ուսուցիչ: Սոյն ազնիւ և աշխոյժ երիտասարդի համեստութիւնն, կը վախեմ, որ չ'ներէ ինձ իւր պաշտօնի նկատմամբ ունեցած մանկավարժական հաղուագիւտ ձիրքերն դըրուատել, որոց քանիցս ականատես եղած եմ անձամբ և ուսանողաց հետ զգացեր եմ ամենամեծ հաճոյք իւր դասախօսութեան եղանակէն, որմէ մեծապէս օգուտ քաղած են և կը քաղեն վարժարանիս մանուկներն, որոց վերայ

(*) Վարժարանաց ուսումնական կողմերն ղատ զատ երկարօրէն նկարագրելն աւելորդ կը համարիմ. ըստ որում Վանի քաղաքիս տեղագրութեան վերջը ար-ձէն կը յաւելում նաև փոքրիկ ամփոփում մը:

յիշեալ ուսուցիչն կը նայէ իբրև ՁԱԻՆԻ վերայ և փոխադարձաբար ուսանողքն իրեն վերայ կը նային իբրև հօր վերայ, երկու կողմանէ ևս կաթոգին համակրանօք, ահա դաստիարակութեան մի ԳԱՂՏՆԻՔ, զոր վարժարանիս մէջ տեսած՝ կը մեկնիմ յերկրորդ վարժարանն։

Քաղաքիս երկրորդ վարժարանն է «Տուշանեան» օրիորդաց վարժարան, ուր 80–100 աշակերտուհիք կուսանին, վեց կարգերու բաժանուած և սովորական ուսմանց հետ կուսանին բաւական օրինաւոր ձեռարուեստ և ասեղնագործութիւն, որոց մասին գոհ եմ ասելոյ, որ լաւ հեռատեսութեամբ աւելի խնամք կը տարուի և պէտք է տարուի, զի ՀԱՅԻ ԽՆԴԻՐ կայ իւր մէջ։ Վերոյիշեալ երկու վարժարաններն ունին 7 պաշտօնեայ, որոնց տարեկան թոշակներու ընդհանուր գումարն է 90–100 ոսկի, որ կը հոգացուի եկեղեցւոյ կալուածներէն։

Այժմ նորանոր ջանքեր կը լինին թոշակի դրութիւնն ներմուծելու, որով թերևս բարձրացնեն վարժարանաց դիրքն. չմոռնամ ըսել որ ոմանք արդէն թոշակի դրութիւնն ընդունած՝ կը վճարեն իւրեանց պարտքն, թէև իրենք լինին թուով շատ նուազ։

Հետևեալ գլխոյս՝ մեր ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆԸ շարունակեմք և քաղաքէն յԱյգեստան մեկնելով նկարագրեմք և տեղագրեմք, և եթէ հարկ լինի տեղ տեղ խմտապատկերներ մեղմօրէն։

# ԳԼ. ԼԱ.

## Բ. ԱՅԳԵՍՏԱՆ

*Քաղաքի պարիսպներէն դուրս ելնելով, ընդհանուր տեղեկութիւն մը տալոյ համար կարեւոր կը համարիմ փոքրիկ կանգ մ'առնուլ տակաւին մեր ՈՃՆ յառաջ չտարած դէպ 'ի յԱյգեստան, որ ՎԱՆ քաղաքի ամենապատուական, գեղեցիկ և զուարճալի մասն կը կազմէ իւր հորիզոնական և ընդարձակ դիրքովն, օդովն, ջրովն, պտղատու և անպտղատու բազմաթիւ ծառաստաններովն ու խաղողի մեծատարած այգիներովն, որք ամառ ատեն, Երկնից արդար հոգիներու դրախտն երկրի վերայ, այգեկութի ժամանակը Ճըղտու Վանցիներուն ԿԸ ՅԻՇԵՑՆԵՆ: Վանայ սոյն մասի անուան ծագումն արդէն յայտնի է և բացատրութեան անկարօտ:*

* *
*

*Այգեստանի փողոցներն ամենամեծ մասամբ ծառաստան են, երկու կողմերէն այլ և այլ հաստութեամբ բարդի և մանաւանդ ծեր և երիտասարդ ուռենիներով զարդարեալ՝ կը կազմեն զուարճալի ծառուղիներ, որոց տարածեալ չուքերու տակէն 'ի քաղաք կերթեւեկեն այգեստանցւոց մեծագոյն մասն, որ ամառուան եղանակին Արեգական կիզիչ ճառագայթներէն ապահով կը ճանապարհորդեն:*

*Քաղաքն Այգեստանէն* 1/2–11/2 *ժամ հեռու*

է և կը գտնուի նորա յԱրեւելակողմն ։ Քաղաքի մէջ կրպակ, վաճառատուն և կամ որ և իցէ առ ու տուր ունեցող Այգեստանցիք առաւօտ կանուխ կերթան և երեկոյ ուշ կը վերադառնան 'ի տուն, ուր կը մտածեն օրուան առն և տուրը ։

Ամառ եղանակին աստ է տեսանել այն հաճոյք և զուարճութիւն, զորս խումբ խումբ Այգեստանցիք կզգան այս առթիւ, և ես ինքս Այգեստանցի լինելով անհուն բերկրութեամբ սիրտս կը լեցուէր, երբ այդ հովանեաց ներքեւէն ընկերներուս հետ կը ճանապարհորդէի՝ մեզ խօսքի առարկայ ընելով ազգային խնդիրներ ու գործեր և այս հաւատարմութեան գաղափարներով ծնած և սնած Հայրենասէրի մը համար միթէ բնական չէ՞ ։

Ճանապարհի յիշեալ ծառուղեաց մէջէն աղբերց ջուրերն զուգահեռական առուակներէն կարկաջասահ կընթանան յԱրեւելից յԱրեւմուտս ։

Քաղաքիս Թօվրէզ-Գափուէն յուղի ելնելով 5 վայրկենի տեւողութեամբ տափարակ տեղեր կորելէ զկնի կը հանդիպիք ՀԱՑԿԱՑ ՎԱՆՔ կոչուած տեղը, որոյ անմիջական մերձ Արեւմըտեան Հարաւային ընդարձակ տեղիք դարաւոր գերեզմանատանց հետքերով կամ մարդկային ոսկրոտիքներով լի էին, որոց երեսը երբ կը դիտէի՝ յանկարծ Եզեկիէլի տեսած դաշտն և անոր փչած ՇՈՒՆՉՆ միտքս ինկան, սակայն չկայր և ոչ մի կողմանէ կենդանատու ՕԴ փչող հով մը,

ես ինքզինքս մի մեղմ և հանդարտ բնութեան մէջ գտայ, ըստ որում այդ հինաւուրց մեռեալներու ոսկրոտիքն այնչափ տխրութիւն չէին պատճառեր Տեղագիր–Ուղեւորիս սրտին, որ ըստուգիւ խօսելով՝ նման ժամացոյցի շարունակ Թաք, Թըք կը զարնէր և միշտ կ'սպառէր իմ գարուն կենաց վայրկեանները, այս պահուս իմ խելք կը դառնայր և հազիւ ինքզինքս գտած, կարող եղայ մօտակայ կամուրջէն անցնելով հասնիլ անձկաս հետեւեալ տեղին:

2. Հայկայ Վանուց Թաղ

Թաղիս հետաքրքրական անուան վերայ հաւանականագոյն աւանդութիւնն է և կարծիք թէ « Թերեւս Հայկ իրեններովն աստ հանգիստ մ'առած կամ իջեւանած լինի, երբ յուղի ինկած կը գնայր 'ի Հայոց Ձոր Բելայ կամ Ներբրովդայ դէմքին 'ի մարտ » :

Սոյն Թաղն ունի 274 տուն Հայ բնակիչ, որք ունին յանուն Ս. Աստուածածնայ հաստատուն շինուածով եկեղեցի մը, որ կը պարունակէ ԼՈՅՍ կրօն մը և ինքն դժբաղդաբար մութ է պատուհանաց նեղութենէն : Եկեղեցւոյ կից է տեղւոյս նորաշէն և երկյարկ վարժարանն, ուր ձմեռատեն 100–120, իսկ ամառ եղանակին 50–60 ուսանողներ կ'աշակերտին, որք բաժնուած են դըրեթէ այնչափ կարգի որչափ որ դասագրոց տեսակներ կը գտնուին աշակերտաց ձեռքը (*) :

---

(*) Աստ աւելորդ չեմ համարիր սոյն երկտող դի-

*Վարժարանիս համայն ուսանողքն յանձնըւած են երկու պաշտօնէի, որոց տարեկան թոշակաց գումարն է 25–30 ոսկի, որ կը հոգացուի եկեղեցւոյն եկամուտներէն ։*

*Հայկայ Վանցւոց այժմեան վարժարանի շինութեան համար տարած ջանքերնին արդարև գնահատելի են, թէպէտև առանց մասամբ մը արտաքին նպաստներու շինուած չը լինի ։ Ցուսալի է որ վարժարանիս դրից յարմար և օդաւէտութեան համաձայն վիճակի մը մէջ պիտի դըրուին նաև ուսանողներն, վասն զի խնդիրն հոս է թէ չէնքի գեղեցկութիւնն զուսանողս յառաջ կընայ մղել, եթէ օրինաւոր դաստիարակ, ուսուցիչ և կանոնաւոր հսկողութիւն չլինի, միթէ յարմարաբար պատուհաններէն փչող օդին մէջ սուրբ հոգի կայ, զոր ուսանող մանուկներն ընդունելով, նման Առաքելոց, վարժարանի վերնատան մէջ Հոգւով Սրբով լեցուին, որով և իմաստնանան, զարգանան և վերջապէս սկսին այլ և այլ լեզուս խօսիլ ու գրել զհին և զնոր և մասնաւորապէս Վանցի հայրենակցաց հասկցնել ։*

*
* *

*Այսչափ բան համարելով տեղւոյս նկատ-*

---

*տողութիւնս ընել թէ փոխանակ դասագիրքերն աշակերտաց կարգերուն յարմարցնելոյ, կարգերն դասագրեանց տեսակներուն յարմարցուցած են. պարագայ մը, որ չ'կրնար կրթական պաշտօնէի մ'ուշադրութենէն վրիպիլ ։*

մամբ խօսիլն , ապագայի յոյսերով ծանրաբեռ-
նեալ մեկնիմք մի և նոյն ուղղութեամբ ։

Այսպէս զիմ ուղին շարունակելով՝ կանգ-
նիմ բազմաթիւ ընտիր արտօրայք , ամենքն ջր-
բարբի և մեծագոյն մասամբ Տաճկաց վերաբե-
րեալ և կամ անոնց վերաբերեալ։

Սոյն ճանապարհամիջոցին վերայ բաւական
տեղեր չկան բնակութիւնք և ծառուղիք , ո-
րոնք աւելի Այգեստանի միւս ճանապարհաց կը
պատկանին , այլ միայն կան մասնաւոր ծառեր
և մի դարաւոր ուռենի , որ՝ նման կամուրջի՝
ջուքերէ կամար կապած է և որոյ տակէն պար-
տին անցանել այս ճանապարհէն երթևեկողքն ։
Զայս ուռենին Ս. Ծառ կ՚անուանեն Հայերն , և
Տաճիկներն ևս նմա կը տան նմանօրինակ մի ա-
նուն , որ իգական սեռերէն ոմանց մէջ աւելի
ընդհանուր է ։ Սոյն երկու տարասեռ և տարա-
րիւն հայրենակիցք մի և նոյն ծառին կընծայեն
մի հաւատք բղխած տարբեր սիրտերէ և զգա-
ցումներէ ։ Հաւատացեալ կիներէն իւրաքանչիւր
տեսակն, համաձայն իւր ներքին համոզման, թող
կապէ մի կտոր լաթ ուռենւոյն ճիւղերէն միոյն
վերայ 'ի նշան , և մեք շարունակեմք վերստին
մեր ուղին. և վերջապէս բաւական Հայ և Տա-
ճիկ բազմաբնակութիւններէ անցնելով կը հաս-
նիմք բուն Այգեստանի «Արարք» անուանեալ
թաղը , որոյ վերայ տակաւին չխօսած՝ հետե-
ւեալ ընդհանուր տեղեկութիւնն տամ և ա-

պա չարունակեմ հասած տեղէս ։

Այգեստան, աննշան բացատութեամբ տա-փարակ դիրք մ'ունի, և քաղաքի դիրքէն 80 -100 մեթր բարձր ։ Երկայնութիւնն է յԱրեւե-լից յԱրեւմուտս 1 1/2 ժամ, իսկ Հարաւէն ի Հիւ-սիս 1 ժամ ։

ՎԱՆ, ընդ հանուր առմամբ, կրնամք եռան-կիւնաձեւ համարել, որոյ գագաթն է Այգես-տանի Արեւելակողման նորատունկները (որոց վերայ ի կարգին կը խօսուի) մէկ մասն, և եր-կու կողմերն են Հիւսիսէն Ակ-թէ կոչուած եր-կայն լեռն իւր յարակիցներովն ու Հարաւէն Տաբրամայ Թաղն իւր Արեւելքէն յԱրեւմուտս եր-կայնութեամբն, իսկ խարիսխն Բզնունեաց ծովն ։

Այգեստանի մերձաւոր շրջապատը և նոյն-պէս իւր ոլորտը կը գտնուին ընդարձակ արտօ-րայք և դաշտօրայք ։

*
* *

Վանայ Այգեստանի ամենէն բազմահայ թաղը հասած լինելով՝ այժմ խօսիմք իրեն վրայ մեր արդէն ընտրած կարգաւն ։

3. Արարուց (այր յարոյց) Թաղ

Սոյն թաղն ունէր 850 տուն Հայ բնակիչ «այր յարոյց Ս. Աստուածածին» կոչուած հնաշէն եկեղեցի մը, որ այս տարի քակուելով 'ի հիմ-նանէ շքեղօրէն նորոգուեցաւ ։ Սոյն եկեղեցին ունի ծխական երկու հատ երկայարկ վարժա-րաններ, որոց վերի յարկերն ուսանողաց յատ-

կացեալ են, որք ունին գեղեցիկ դիրք և տեսարան ։ «Ս. Մատթէոսեան» անուանեալ այս վարժարաններէն առաջին ուսումնարան է և երկրորդն նախակրթարան ։ Առաջնոյն մէջ կաչակերտին 126 ուսանողք, որք բաժնուած են Զ կարգերու. երկրորդն, որ նախակրթարանի մասն կը կազմէ, ունի 158 ուսանողք, որոնք երկու մասերու բաժնուած են, յորոց 103 ծաղկոցին և 55 նախակրթարանին կը վերաբերին ։ Վերջի մասին մէջ 40 հոգի աղջիկ են և մնացեալ 15 մանչ, որք թաղիս նոր սերունդ կը կազմեն և չունին պատճառ մը չպակել բանաւոր ջանքեր ։ Մէկ յարկի մէջ խիտ առ խիտ բնակուած և որ ցաւալին է այդ յարկն իւրեանց կը ծառայէ դասարանի, ճաշարանի, ձմեռ ատեն զբօսարանի և սերտարանի, ուր ձայներու ժխորէն ոչ թէ մանուկն կարող է ուսանիլ, այլ ընդհակառակն գիտցածն ևս մոռնան ընելոյ դժբաղդ և անզգայ հարկին մէջ կը գտնուի ։ Այս վարժարանի համայն ուսանողք յանձնուած են երկու կառավարիչ դասատուաց, որոնք օրական մի դաս հազիւ կրնան աւանդել, զի այդ խեղճ մանկավարժներն ուսանողաց դպրոցական ՈՒՂՂՈՒԹԻՒՆ ալ տալոյ պարտաւորեալ են. մանուկներն իւրեանց ընթերցանութեան դասերն կընդունին երբեմն ՚ի լաց և երբեմն ՚ի խաղ, այլ յաճախ ՚ի կաղ ։ Ուսումնարանն ունի գրասեղան, իսկ ծաղկոց ոչ ։

Խօսքս ամփոփելով՝ Արարուց թաղի այս

երկու վարժարանաց ուսանողներու ընդհանուր թիւն է 284 և երբեմն իսկ 350ի կը բարձրանայ ։ Պաշտօնէից թիւն է 10 և տարեկան ծախուց գումարն 130–140 Օսմ. ոսկի, որ կը հոգացուի եկեղեցւոյ կալուածական եկամուտներէն, որ ծախքէն աւելի կը գոյանան, սակայն տնտեսագիտաբար պէտք եղած տեղւոյ գործածութեան մէջ չիք մատակարար, վասն զի դըրամն մէկ աստիճան կարեւոր է, իսկ զայն գործածելոյ կերպ ԳԻՏՆԱԼՆ երկու ։

Վերոյիշեալ Մաթէոսեան կրթարաններն կընթանան անորոշ ուղղութեան մը ներքև, առանց կանոնաւոր ծրագրոյ մը ։ Առ այժմ պէտք է մխիթարուիմք, վասն զի զվարժարանսն օր ըստ օրէ բարեկարգելոյ ջանքերնին գործադրելոյ վերայ են և կը յուսամ յաջող ընթացքով ։

Արարուց եկեղեցին իւրեան մերձ ունի 200էն աւելի խանութներ, յորոց մեծագոյն մասն նպարավաճառ են ։ Տեղւոյս գրեթէ ամեն անկիւնները գինետունք անպակաս են և խանութներն ընդարձակ հրապարակի մը շուրջ շինուած են բացօթեայ ։ Կիւրակէ օրերն առաւօտեան դէմն 3–4 ժամու տեւողութեամբ մասնաւոր տօնավաճառ կը լինի, մօտակայ գիւղերէն և մանաւանդ Թաղերէն առ և տրոյ համար մարդիկ աստ կը դիմեն ։ Տեղւոյս կրպակաց մեծ մասն Հայոց ձեռքն է և են բաւական կարեւոր ։

*
* *

Արարք թաղի մէջ մի մաս կայ, որ երկրագործութեամբ կ՚զբաղի գիւղական կենօք և բնակութիւննին թէև դարձեալ թաղերու մէջ, այսու ամենայնիւ ինքնուրոյն գիւղ մի է ունենալով իւրեանց մէջ գիւղական բոլոր կարգադրութիւնք և տեղական կառավարութիւնն ըստ այնմ կը նկատէ զանոնք, որոնցմէ երբ հարկ լինի սայլի և ուրիշ բաներու աշխատանաց պահանջումն, զոր ունին Վասպուրականի համայն գիւղօրայքն։ Գիւղիս հողային կալուածներն, ամենամեծ մասամբ Այգեստանի Արեւելեան Հիւսիսակողմն 2–3 ժամ հեռաւոր սարերու և դաշտերու մէջ կը գտնուի։

Արարքէն մեկնելով յԱրեւելահիւսիս 20 վայրկենէն կը հասնիմք հետեւեալ տեղը։

4. Նորաշէնու թաղ

Սոյն թաղն ունի 476 տուն Հայ բնակիչ, պայծառ կառուցմամբ և ճաշակաւոր մի եկեղեցի յանուն Ս. Աստուածածնայ։ Ունին մի վարժարան գրեթէ երկսեռ, ուր կաշակերտին 130 ուսանողք, յորոց 30 ի մօտ աղջիկ են, որք մի մասնաւոր սենեկի մէջ կը դաստիարակուին և միացեալ հարիւր մանչերն բաժանեալ են նախակրթարանի և ուսումնարանի՝ երկու գլխաւոր բաժանումներու, որք 'ի միասին կուսանին մի յարկի տակը։ Վարժարանիս դիրքն շատ լաւ է, սակայն արդարութիւն է չ'մոռնալ որ այդ կայտառ և աշխոյժ ուսանողքն օրն ի բուն կը

նոտին տախտակամածի վերայ առ 'ի չգոյէ դրասեղանի և ոմանց կռնակներն, խորին վիշտ զգալով դիտեցի, որ նման 80 տարուան ծերունւոյ, աղեղ դարձած են այդ ծաղիկ հասակին մէջ ։

Վարժարանիս պաշտօնէից թիւն է 7 և որոնց տարեկան թոշակաց գումարն՝ 120 ոսկի ։ Դպրոցական շրջանն 8 տարուան բաժնուած է․ կայ Տեսուչ քահանայ մը, որ բաւական ջանադիր կերևի օր ըստ օրէ աւելի բարեկարգելոյ տեղւոյս նոր սերնդեան կրթական վիճակն և այս առթիւ կըյուսամք որ Արժ. Տեսչի ուշադրութենէն չպիտի վրիպի նաեւ վարժարանիս ուսանողաց առողջապահական աննախանձելի վիճակն, զոր կանոնաւորելոյ չի.ք դժար ։

Նոյն թաղի վարժարանէն դուրս ելնելով ուղեւորեմք դէպ 'ի յԱրեւմտեան Հարաւ, 2/3 ժամէն կարող եմ ժամանել 'ի Ս. Յակոբ, կտրելով գեղեցիկ ծառուղիներ և անցանելով ջրոց կարկաջասահ առուակներ ։

### 5. Ս. Յակոբայ Թաղ

Տաճկական բնակութեանց դրացի եղող այս թաղն ունի 450 տուն Հայ բնակիչ, յանուն մըծբնայ Ս. Յակոբ Հայրապետին կառուցեալ մի եկեղեցի և « Ս. Ղուկասեան վարժարան » կոչուած կրթարան մը, որոյ ուսանողաց ամբողջ թիւն է 140, որք ԺԱ կարգերու բաժնուած են, յորոց մեծ մասն ուսումնարանի և փոքր մասն նախակրթարանի ընթացք ունին ։

Վարժարանիս ուսումնական և առողջապահական կողմերն չեն կրնար զգայուն այցելուաց միշտ չպատճառել ներկայիս մէջ, որոյ յաջորդն փայլուն յոյսերով բեռնաւորեալ է սակայն։

Զօրս պաշտօնեայ կայ, որոց տարեկան թոշակն է 50 ոսկի վճարելի եկեղեցւոյ սնտուկէն։

6. Ցանկոյս Զօրոյ Բոսը

Այս թաղն կը գտնուի նախորդի Արևելակողմն և անկէ $3/4$ ժամ հեռու. ունի 450 տուն Հայ բնակիչ և յանուն Ս. Աստուածածնայ կառուցեալ գեղեցիկ եկեղեցի մը, գրեթէ լեռնահովտի մը մէջ հեղեղատի մը Հիւսիսակողմն։ Կայ ՚ի հնուց շինուած մեծ կամուրջ մի, որոյ վրայէն ժողովուրդ կանցանէ գնալոյ համար յեկեղեցին, որ, միւս եկեղեցեացնման, բնակութիւններէ չըջապատեալ չէ և իւր բոլորտիքը համարեա թէ կը տիրէ ամայութիւն, ուր կայ սիրուն անտառակ (*) մը, եկեղեցւոյն վերաբերեալ։

Եկեղեցին ունի իւրեան կից երկու վարժարան, մին արական և միւսն իգական սեռին յատկացեալ. առաջնոյն մէջ կան 200 ուսանողք և երկրորդին՝ 50։ Մանչերն վեց և օրիորդներն երեք կարգերու բաժանեալ։ Սոյն վարժարան-

(*) Երանի թէ սոյն անտառակն, որ լաւ հեռատեսութեամբ օր ըստ օրէ աւելցնելոյ վրայ են, օրինակելի գործ մը լինի ՎԱՆԱՑ համար, ո՛ւր փայտ սուղ է համեմատաբար։

ներն բաւական բարելաւ վիճակի մէջ կերեւին . սակայն զայնս աւելի բարեկարգելոյ և զարգացընելոյ պէտքն ալ անուրանալի է ։ Վերոյիշեալ 250 (մանչ և աղջիկ) ուսանողաց համար ունին 7 պաշտօնեայ , որոց թոշակաց տարեկան գումարն է 80–90 ոսկի , որ դարձեալ Աստուծոյ ՏԱՆ լումայէն կը գոյանայ և սնտկէն կ'անգոյանայ ։

Տեղւոյս ուսուցչական խմբին մէջ կը գըտնուի մի դաստիարակ ուսուցիչ 35–36 ամբողջ տարիներու , դա Աւետիս վարժապետն է՝ ՆԱՀԱՊԵՏ Վանայ համայն վարժապետաց դասուն ։ Սոյն անձն 57–60 տարեաց մէջ ոտք կոխած է , այսու ամենայնիւ ֆիզիքապէս իւր ունեցած կազմութիւնն շատ նախանձելի է , նոյն իսկ 30–35 տարեկան երիտասարդաց համար . ինքն միջահասակ է , ունի մեծ և կապոյտ աչկունք համեմատական դէմք , բարետիպ և հեղահայեաց, լայն կրծիւք և թիկամբք , պատկառելի և համեստ բնաւորութեամբ ։

Վանայ մասնաւոր վարժարաններ

Տեղւոյս վերոյիշեալ 6 արական և 4 իգական սեռերու պատկանող ծխական վարժարաններէն զատ կան նաև հետեւեալները . Ա. Մկըրտիչ էֆ. Փորթուգալեանի ԿԵԴՐՈՆԱԿԱՆ վարժարան ։ Բ. Խնամատար Ընկ. ՈՐԲԱՆՈՑ ։ Սոյն երկու կրթարաններն միջնակարգ վարժարանի ուսումնական դիրքն ունին ( մասնաւոր տարբե-

քուլթեամբ ) և են կանոնաւոր ուղղութեան մը ներքև և պատիւ կը բերեն իրենց անձնանուէր հիմնադրաց և եթէ ինէ անկախ պատճառներ չունենայի . . . . . . մտադիր էի սիրայօժար մի քանի էջ նուիրել յիշեալ վարժարանաց և հըրապարակաւ դրուատել անոնց ԾՆՈՂՆԵՐԸ , որոց մասին թերեւս բացէն արտօնութիւն ունենամ նոցա բուն ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆՆ ցոյց տալ այդ Երկրի տակաւին խաւար մթնոլորտին մէջ ։

Գ. «Բարաղամեան» . Դ. «Յովհաննեան» նախակրթարաններ, որք թէպէտև երկու տարի հազիւ կը լինի բացուած լինելնին , սակայն ապագային համար այժմէն յուսալից նշաններ սկսած են ցոյց տալ ։ Ե. Սուրբ Սանդխտեան Ընկ . օրիորդաց վարժարան , որոյ ԲԱՐԵՐԱՐՆ է մեծահամբաւ Սանասարեանց , որ իւր ծախքովն անցեալ տարի Խրիմեան Հայրիկի տրամադրութեան ներքև գեղեցիկ և օդաւէտ վարժարան մը , կառուցանել տուաւ , որոյ շինման մասին Ամեն. Խրիմեան Հայրիկն յատուկ խնամք տարած է և այժմ գերմանական ճաշակաւ կանգնած զայն ։ Սոյն վարժարանն 14 տարիէ 'ի վեր կը շարունակի ։

Անցեալ տարի կրկին ծախիւք յիշեալ մեծանուն աղա Մկրտիչ Սանասարեանցի Սանդըխտեան վարժարանն եղաւ երկյարկ, որոյ անունն փոխուելով այժմ կը կոչուի «ՄԱՐԻԱՄԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ » «յանուն Մարիամայ Գէորգեան Վանեցւոյ Սանասարեան , շինեցաւ արդեամբ որդ-

ւոյ նորա աղա Մկրտչի Սանասարեանի » :

Ազգի հանրածանօթ այդ բարերարն 10,000 ռուպլիի տոկոս մը եւս մշտնջենապէս յատկացուցած է, 'ի յաւերժ յիշատակ իւր հանգուցեալ լուսահոգի մօր անուամբ նոր մկրտուած սոյն վարժարանին, որոյ աշակերտուհիք պարտին յաւէտ երախտապարտ լինիլ Սանասարեան ազնուատոհմ գերդաստանին, որոյ պատուաբեր ՇԱՌԱՒԻՂՆ է այժմեան ԲԱՐԵՐԱՐՆ, զոր աստ տեղագրութեանս մէջ գեղեցիկ առիթով մը կը յիշեմ զինքն՝ 'ի գովեստ իւր արժանաւոր անուանըն, որ ամեն Հայ սիրտերու մէջ մեծ տեղի մը գրաւած է և այս ամենամեծ իրաւամբ :

* * *

Վանայ մասնաւոր վարժարանաց համայն ուսանողաց թիւն 400 ի կը հասնի, որոց համար համեմատաբար աւելի ծախք կը լինի ծխական վարժարաններէն : Տեղագրութեանս նպատակէն չշեղելոյ համար աստ աւելի գրել չեմ ուզեր, որք կրնայ գործիս յառաջադիմութեան ուղին փակել, որպէս վերև ակնարկեցի :

## ԳԼ. ԼԲ.

Վանայ մեր դրացի Մահմետականաց կրօնական, կրթական, արհեստական կողմերն և կացութիւնն :

Վանայ մեր դրացի տարակրօն Հայրենակիցք քաղաքի մէջ ունին 4 հատ գլխաւոր մզկիթներ, յորս նշանաւորն է Ղուրշուն ճամիը կոչուածն, իւրաքանչիւրն ունի իւր նախակրթա-

րանն . կայ և մի رشدیه ( ուսումնարան ) , որոյ պաշտօնէից ծախքերն տեղական կառավարութեան կողմանէ կը հոգացուին ։

Այգեստանի մէջ տաճիկներն ունին բազմաթիւ աղօթատեղիներ , սակայն շինութեանց և դրից կողմանէ ոչ նշանաւոր , մեծագոյն մասամբ ունին իրենց առընթեր կամ կից [illegible] յատկացեալ բնակավայրեր , ուր [illegible] կը դասախօսեն կարդացուորներն ուսանողաց ։

*

* *

Քաղաքիս Մահմետականքն առ հասարակ կալուածատէր են հողային և տնային . ունին մեծամեծ և ջրարբի պտուղական արտօրայք ։ Իրենք շատ քիչ արհեստով կզբաղին , ոմանք պաշտօն ունին կառավարութեան դուռը ։ Միջին և ստորին դասերէն փոքրիկ մաս մը կզբաղի նըպարավաճառութեամբ և կենդանեաց առ և տըրով , արհեստաւորքն շատ հազուագիւտ են , միայն պարտիզպանութիւնն և պախեզպանութիւնը ( սեխ և ձմերուկ հասցնելն ) դրեթէ իւրեանց յատուկ են ։ Կը պահեն էգ ( մանտայ ) և կով , որոց կաթովն ու մածունովն երջանիկ կապրին , որպէս և այգեաց պտուղներովն , զորս առ հասարակ Հայերն ծախու կառնուն ։ Վանայ մեր դրացի այլակրօն Հայրենակիցքն , ընդհանրապէս մտածելով , պալատներ և տներ շինելոյ բնաւ հետամուտ չեն երբ դրամներն վխտայ իսկ , այլ ընդհակառակն կուզեն ամեն ինչ ծախել և հողային

(տրտ մնաւանդ) կոլուածներ ձեռք բերել։ Իւրեանց բնտանեկան շրջանակին մէջ դարձեալ գովութեան արժանի պարզութիւն և չափաւորութիւն կը տիրէ թէ արանց և թէ կանանց վերաբերութեամբ։ Ազգասիրական զգացումներն չատերու նախանձն կրնայ շարժել իրենց ունեցած այս ազնիւ յատկութեանն վրաս պարտք դըրաւ, որ աստ անյիշատակ չ'թողում զիրենք, որոց մեր Հայոց հետ ունեցած յարաբերութիւնն ուրախաւիթ երեւոյթներէ չ'կարծուիր որ զերծ լինի. այս կենսական ԽՆԴԻՐ մի է այս երկու տարասեռ Հայրենակցաց յարաբերական վիճակի քաղցրութիւնն, զոր կը փափաքիմ տեսնել ամենու սրտին մէջ անխտրապէս։

Տեղւոյս Թուրքաց մի քանի սովորութիւնն

Քաղաքիս Թուրքերն մի գեղեցիկ սովորութիւն ունին, որ իւրեանց նախնիքներէն ժառանգած են և զոր ցարդ կը շարունակեն անփոփոխ, անարատ և անխափան։

Սոքա սովոր են, ձմեռ ատենը, 6 ամիսէ աւելի իւրաքանչիւր թաղեցին դիչերներն ընթրիքէն անմիջապէս յետոյ երկայն ծղօտախնիւ լեցուցած և կրակի բռնած՝ 'ի խորհուրդ կը գումարին՝ թաղի գլխաւորին փակախ (ախըռ), որոյ կեդրոնը յատուկ տեղի կայ որոշեալ, ուր ճէնճէրօյին նիստերնին կընեն, որ 5–6 ժամ կը տեւէ, դուն ուրեք կը վիճեն։ Սոյն ժողովոյ նիստն օթուրմաղ կանուաննեն, որոյ մէջ իւրաքանչիւր ան-

հատ, տանուտէրէն սկսեալ առաջնութեան կարգաւ, կը խօսին, նախ նոյն օրուան մէջ իւրեանց գլուխէն անցածներ, առած փորձառութիւնք, և դէպքեր կը պատմեն և երբ մեկնելոյ ժամն չհասած՝ օրական կենաց անցքերու պատմութիւնն վերջանայ, յայնժամ կ'սկսին զանցեալէն, զներկայէն և զապագայէն խօսիլ, խորհրդակցիլ, հեռատեսիլ . . . և անձնական կարծիքներն իրարու յայտնել իւրեանց կրօնական, ազգային և քաղաքական տեսակէտներով: Այս գումարման մէջ չ'կան ընտրեալ Ատենապետ և ատենադպիր, և ոչ նիստերն արձանագրելոյ սովորութիւն, այլ ամեն ինչ բերանացի և մտացի է:

Սոյն ժողովոյ մէջ կը տեսնուին զարմանալի լռութիւն, կարգապահութիւն և զիրեար յարգեցողութեան այլ և այլ ձևեր. մի քանի անգամ, որ ականատես լինելով՝ մարմնոյ և միանգամայն հոգւոյ աչօք դիտած եմ ժողովոյս դէմքն և վեհութիւնը իսկոյն Հռովմէական ծերակոյտներու պատկառանքն մտացս մէջ անդրադարձած են: Մեր Օսմանցի Հայրենակցած այս ԳԵՂԵՑԻԿ սովորութիւնն աստ յիշեցի իւր ունեցած օրինակելի բնութեան համար:

* *
*

Վանայ Հայերէն քիչեր հողային կալուածներ ունին. նոքա ևս աւելի 'ի գիւղօրայս՝ որոց հետ յատուկ շահեկանութիւն ունին:

Պատուաբեր բացառութիւնք ընդունելով

վանեցիներէն շատերն անհաչիւ կեանք կը վարեն և մեծ պէտք ունին իւրեանց դրացի տաճիկներէն օրինակ առնուլ իրենց ապագայն պատրաստելոյ համար, զի ընդհանրապէս նախանձելի հեռատեսութիւն և ապահով նիւթական վիճակ մը չունին ('ի բաց առեալ բացառութիւնք). շատերն հակամիտ են 'ի Պօլիս պանդխտելոյ, ուր շատ անգամ, փոխանակ յոյսերնին պսակելոյ, ափսոս կեանքերնին կը վերջանայ, այսու ամենայնիւ Վանեցին ունի ընտանեկան հարազատ կեանք մը և լաւ ձիրքեր (մասնաւոր բացառութեամբ) փայլելի մանաւանդ յապագային, ուր հասած աստեններս նոր սերունդն առած պէտք է լինի ԸՆՏԻՐ դաստիարակութիւն մը։

## ԳԼ. ԼԳ.

### ԱՅԳԵՍՏԱՆԻ ԲՆԱԿԱՆ ՎԻՃԱԿՆ

Վանայ «Այգեստան» կոչուած մասն, որպէս յիշած եմ, իւր անունէն յայտնի է, ամենափոքր բացառութեամբ իւրաքանչիւր տուն իւր յատուկ այգին կամ միրգաստանն ունի կամ գոնէ պարտիզակ մը և ոմանք ևս բնակութիւններէն դուրս Արևելահիւսիսակողմն ½–1 ժամ հեռաւորութեամբ ունին խաղողի պտուղական այգիներ ահագին ընդարձակութեամբ, յորս փոքրիկ աշտարակի կամ դղեակի նման հնձաններ կը բարձրանան, որոց վերի յարկին մէջ կը բնակին ամառ եղանակին և աւկէ խաղողի ժամանակը կը դիտեն տճկած (ուռեցած) ողկոյզները, որոց

Թշնամի են գիւղերաշրջիկ այլ և այլ կենդանիներ ։

Հնձանի վարի մասն կը բաղկանայ նմանօրինակ քառակուսի սենեկէ մը մաքուր և սալայատակ, որոյ ստորին կողմն 2 մեթր խորութեամբ և 1½ մեթր լայնութեամբ փոս մի կայ ։ Խաղողներն կթելէն (քաղելէն) յետոյ հնձանի ներքնայարկի վերնակողմն իրարու վրայ կը դիզեն և 4–5 օր կը թողուն, որպէս զի ողկոյզներն թառամին (թունան) կամ մեռնին, այնուհետև տան կտրիճներէն կամ հրաւիրեալ բարեկամներէն ոմանք ոտքերնին կը չլտեն (կը մերկացնեն) և ձեռան պէս ճերմկցուցած՝ կ'սկսին զխաղողն կոխել, որով քաղցուն (շիրան) կ'սկսի առուի նըման վազել և գլխիվար ուղղութեամբ գնալով կը լեցուի յիշեալ փոսը, յորմէ շափան կոչուած ամաններով դուրս կը հանեն զքաղցուն և երբ խաղողէն քաղցունը ամբողջապէս ցամքեցնելոյ անկարող լինին, կ'առիպուին մնացեալ խաղողներն 'ի մի ժողովել և վրանին մեծամեծ քարեր դիզել ։ Երկին ցամքեցնելոյ համար սոյն վերջի գործողութիւնն կ'անուանեն «Թերքամ» մեր Վանեցի հայրենակիցք ։

Վանցիք տակաւին անտեղեակ լինել կը թըլին մեքենայի զօրութեան, որով կարող կը լինին խաղողներն լաւ քամելով մեծ քանակութեամբ ստանալ քաղցուն. նախ որ խաղողն կթելէն յետոյ այլ ևս պէտք չ'կայ 4–5 օր ձգել, որոյ միջոցին խաղողն, բնականաբար, կրնայ ցամքելոյ են-

թակայ գտնուիլ, որով և քաղցուին քանակութիւնն պակսիլ. իսկ մամուլն (փայտէ) ընդհակառակն իւր զօրութեան տակ այնպէս կը սեղմէ ողկոյզները, որոց չանչն (մէջի կուտ) անգամ կը չորցնէ, որ ունիցի ականջս լսելոյ՝ լուիցէ։

Ինչ որ է, սպասեմք ժամանակին, ուր «պէտքն կը դրդէ զմարդն 'ի հանճար»։

Իմ Հայրենեաց վերոյիշեալ այգիներն ընդհանուր առմամբ կ'անուանեն «Նորատունկներ»։

Նորատունկերն ամառ եղանակին մէջ կը ծառայեն նոյնպէս ուրախութեան և զբօսանաց տեղւոյ՝ Վանեցւոց մի մասին համար, որք ծառոց հովանեաց ներքև պօռալ, կանչել, ցատկել, կոնծել (գինին մինչև 'ի յատակ պարպել) զկարմիրն և զճերմակն ու խորոված ուտել քաջ գիտեն, թող իմ այդ զուարթ Հայրենակիցներն աշխարհիս ներկայ մակերեւութի ՀԱՐՑԵՐՈՒՆ անտեղեակ չարունակեն իւրեանց «անզբաւական» ուրախութիւնն կամ քէֆ և ես Հայաբնակի դաշտերէն և լեռներէն, Սարերէն և Ձորերէն, Հիներէն և Նորերէն ժողոված ծաղիկներովս և հիւթերովը պատրաստեմ ՋԱԳՈՒՑ մեղր մեր ժողովրդեան և մեր ՀԱՑ ուսանողաց համար, որոնք հաւատարմութեան ԱՆԱՐԱՏ կաթն արդէն 'ի մանկութենէ կը ծծեն իւրեանց ՄՕՐ գրկաց մէջ, ուրկէ դուրս կեանք չունին, որպէս ճնճղուկն ՕԴէ զուրկ տեղւոյ մը մէջ։



Երբոր այգիներու խաղողներն կը հասնին կէսին այգեկութք և այգի ունեցողներն կը կոչեն յայգեկութ իւրեանց դրացիներն և բարեկամները , ընդ որս կէսին ողկոյզներն զմելիով կտրել ճութ ճութ (ողկոյզ ողկոյզ) և ճուաքաղն թողուլ ճանապարհորդաց , ըստ Մովսիսական պատուէրին ։

Վանայ այգեաց թիւն թէև մի առ մի չը համրեցի , այսու ամենայնիւ 2000 էն աւելի հաշիւ տուին ինձ . այս ընդարձակ այգիներէն յառաջ եկած գինիներն մի միայն Վանցիք կ'սպառեն , գրեթէ ամեն տուն իւր գինւոյ յատկացեալ կարասներն ունի մեծափոր , որոյ փոքր տեսակներն՝ զորս կուփիկ (փոքր կարաս) կ'անուանեն , հասարակ դաստւն յատուկ է ։

Վանայ այգիք յառաջ կը բերեն մի քանի տեսակ խաղողներ , զոր օրինակ սեւ խաղող , ճերմակ խաղող , առաջինն ունի իւր տեսակներն ինչպէս խէչըռայ խաղող , քիշմիշ խաղող , զոր տեղական բարբառով կ'անուանեն չօրէկ , որոյ ողկոյզներն շատ ցանցառ կը լինի և հատիկներն , նման հաւու աչաց , խիստ փոքր . սակայն ամենէն աւելի քաղցր կը լինի , և սոր բնական պատճառն իւր մէջն է արդէն , վասն զի Վանայ մէջ խաղողներն իւրեանց բոլոր տեսակներովն մի և նոյն ժամանակի մէջ կը կտրեն . բնական է որ մանր հատիկ ունեցողն (չօրիկ) շուտով կը հասնի և իւր կոճղին վերայ կը մնայ , որ այնուհետև երթալով Արե-

դական կիզմամբ տակաւ առ տակաւ իւր մէջ պարունակեալ հեղուկի (քարդուն) քանակութիւն կը պակսի շոգիանալով, հետեւաբար մնացեալ մասին մէջ կը մնայ աւելի շաքար, որով կը լինի աւելի քաղցր, մինչդեռ մեծ հատիկ ունեցող տեսակն նոյն միջոցին տակաւին հասնելոյ վերայ կը լինի. Ճերմակ տեսակն իւր մէջ աւելի ունի այծու-պտուկ (քէչի մէմէսի) կոչուածէն. սոյն վերջնոյն ուշ հասնելուն պատճառաւ զատէն կը քաղեն և փոխանակ քաղցու ըլլալոյ, որ թթու կը լինի, քացախի մէջ կը պահեն ձմեռուան համար պաշար (սօղուքլուք կամ թուռշու), զոր իրենք պաստուած կ'անուանեն. սոյն անունն թերեւս առած լինի այն պատճառաւ, որ մի քանի ամիս կարասի մէջ կը բանտարկուի կամ կը բռնուի մինչև որ գործածելոյ վիճակին հասնի: Դժբաղդաբար պէտք է ըսել որ տեղւոյս ժողովուրդն քաղցր խաղողէն տակաւին անուշեղէններ պատրաստել չ'գիտեր (քիչ բացառութեամբ):

*

* *

Վան քաղաքի այգեստանեայց մրգեղէն պտուղներն դարձեալ բազմատեսակ են, զոր օրինակ տանձ, խնձոր, ծիրան, սալոր, տամձն (սալորի երկայնահասակ տեսակն), դեղձ և այլն: Սոյն պտուղներն մեծ մասամբ տեղւոյ կլիմայի 4 եղանակաց վերայ բաժնուած են և նոյնովք կը կոչուին, ինչպէս ոմանք գարնան ատեն կը հասուննան և կը կոչուին շատրանոց կամ գարնանանոց,

ոմանք ամառ եղանակին կը հասնին (կը հասուննան) և կըսուին ամռնուկ, (ամառուան վերաբերեալ), ոմանք կը հասնին աշնան միջոցին և կանուանեն աշնանահաս, ոմանք ձմեռ ատեն կը հասնին և կը կոչուին ձմռենուկ (*) (ձմեռուան վերաբերեալ)։ Աւելորդ չեմ համարիր յիշեալ պտուղներէն կամ մրգեղէններէն մի քանի գլխաւորներու մանրամասնութեան վերայ խօսիլ, մանաւանդ իւրեանց հետաքրքիր անուանց համար, որպէս տանձն իւր տեսներումն, զոր օրինակ Դեղէ տանձ, որ շատ դեղին, փոքր և քաղցր կը լինի, որմէ իւր անունն ծնած է, մալաչէկ տանձ, որ է միջակ մեծութեամբ և երկայնապոչ. տղտղէկ, որ կլոր և շատ ջրոտ կը լինի, մալաղէ, որոյ մի հատն երբեմն կէս օխայէն աւելի կշիռ կունենայ և ամենէն աւելի քաղցրահամ կը լինի, այնպէս որ երբեմն մեղրի պատուղին կրնայ դպչիլ։ Վերոյիշեալ երեք տեսակներն ծառի վերայ պէտք եղածին չափ չեն հասուննար, ուստի զգուշութեամբ զայնս ծառէն վար կառնուն և պոչերն չկտրած՝ խումբ խումբ կը կապեն ու կը կախեն մասնաւոր զովութիւն ունեցող սենեկաց առաստաղներէն և այնուհետև 2–3 ամիսէն ինքնին հա-

(*) Գլխաւորաբար տանձէն եւ խնձորէն աւելի բաժնուած են այդ 4 եղանակաց վերայ, ձմեռուան վերաբերեալքն, որք ո՛չ թէ ծառի վերայ, այլ քաղուած կը պահեն մասնաւոր սենեակներու մէջ, ո՛ւր ինքնին կը հասուննան եւ կ'ստանան համերնին եւ հոտերնին։

սուննալով կը դեղնին աւելի, և՚կը քաղցրանան ։ Տանձերու այս խումբ խումբ կաղոցներն մելող կանուանուին ։

Խնձորներն նոյնպէս բազմատեսակ են, յորոց իւրաքանչիւրն իւր մասնաւոր անունն ունի, զոր առած են իւրեանց բնական վիճակէն, այսինքն դիրքէն, գոյնէն, համէն և հասուննալոյ ժամանակէն, ինչպէս կարմիր տելաւլէկ կամ կլոր ամենէն պատուականն է իւր բոլոր յատկութեամբն. սոյն խնձորն երբ կը հասնի և մերձ կը լինի ծառէն վար առնելոյ, յայնժամ իւր գոյն կը զարնէ ի դեղին և հոտն կը բուրէ ամեն կողմը, բնութեան այս կլոր պարգեւի ծառն հեռուանց դիտողի մը համար արեամբ ներկուած կը թուի. Ննուա—մաչխօչ միջակ թթուութեամբ խրխիր, կակուղ և փուխր է, որ ծերոց համար շատ յարմար կը գայ, վասն զի առանց ատամի կրնայ լմլելով (ըստերով ծամել) և վար խրկել դիւրութեամբ. սոքա ևս տանձերու նման տեսակներն ունին, ինչպէս և յատուկ ժամանակնին ։ Նմանապէս ծիրաններն և սալորներն բազմատեսակ են և մեծութեամբ ու համով նշանաւոր ։

Վանայ մրգեղինաց ծառերն, ի բաց առեալ, կան նաև բարդի, ուռենի, կաղամախի, թեղի, և այլ ծառեր, յորոց առաջինն ամենէն շատ կը գտնուի և սոյն վերջի տարիներն գովելի ջանիւք ամեն տեղ առուներու եզերքները և մասնաւոր տեղերը հարիւրաւոր և երբեմն իսկ հա-

զարաւոր տնկած են և կը տնկեն ։ Տանց շինութեան համար բարդի կը գործածեն ։ Գիւղացիք երկրագործական գործիքներու համար կը գործածեն թեղին, որ շատ դիմացկուն է. ուռենւոյն ծերացեալներն կը ծառայեն վառելելոյ, դուն ուրեք բնակութեանց շինութեան համար և երբեմն մէջ պարապ չեղող հաստ տեսակէն իւր երկայնութեամբ կը փորեն և խողովակի ձեւի մոցնելով կը գործածեն ջրաղացքի ճարխի տեղւոյ ։ Վաք ըսելով պէտք է հասկնալ այն խողովակային փայտն, որ ջրաղացի դըրսի կողմէն վերէն ի վար պառկած է գլխիվար, որոյ մէջէն ջուրն սաստիկ արագութեամբ իւր ընթացքն ուղղած է դէպ 'ի քարն դարձնող անիւը, որ վերայ ջուրն զարնելով կը դարձնէ. փորձուած է որ ընթացող ջրոյ մէջ ուռենին շատ կը դիմանայ ։

Նշանաւոր է ճլողի ծառն որ գարնան ատեն, նման համեստափայլ հարսի կը զարդարուի առատ և սիրուն ծաղիկներով ։ Նոյնպէս բազմատեսակ են պարտիզաց վարդերն, ինչպէս նուրպէր վարդ, ճերմակ վարդ, դեղին վարդ, թէաֆուր վարդ, են ։

*
* *

Այգեստանք, առանց բացառութեան, ջրարբի են և մեծագոյն մասամբ ունին իւրեանց սեպհական ջրերը և անոնց տեւողութեան ժամերը, որք ամառ ատեն ջրաչլի (ջրաբաշխ) ան-

ուամբ պաշտօնէից ձեռամբ կը բաժնուին կարգաւ, այնպէս որ 15 օր մի անգամ բոլոր այգիներ եւ ածուներ կը ջրուին կշտօրէն ։

Այգեստան 20 ի չափ աղբիւրներ ունի, յորս 4–5 մեծերն փոքրիկ վտակ ըսուելոյ արժանի քանակութեամբ կը բղխեն, ամենքն առհասարակ արհեստապէս հանուած են՝ ջրհորներ փորելով ընդհանրապէս յԱրեւելէն յԱրեւմուտ շինուած ականներու միջոցաւ բերած եւ հանուած են այլ եւ այլ թաղերու մէջ եւ զորս կանուանեն քահրէզ ։ Սոյն բոլոր ջրերն կը գան Վարագայ լերան ստորերկեայ խաւերէն, հետեւաբար Վանեցիք պարտին երախտապարտ լինիլ Վարագայ աւագ Ս. Նշանին, որոյ սեպհական լեռնէն կիջանեն այդ ջրերն, որք յետ այսու թերեւս իւր պատուանդանէն միայն կարենան բղխել, որով կժաբարձ Սամարացի կին կարենայ կենդանութեան ջրոյ երես տեսնել ։

Սոյն ջրերն իւրեանց, ընթացից շարունակութեան մէջ, մասամբ մ՚անուշութիւննին կը կորսնցնեն երբ յԱյգեստան հասած՝ ականերէն դուրս կը գան (կը թուի թէ ճանապարհին այլ եւ այլ աղային հանքերու վրայէն կ՚անցնեն) ։

* * *

Վանայ վերոյիշեալ քահրէզներն, որք գրեթէ Վանեցւոց կեանքն կը կազմեն, արդիւնքն են իւրեանց նախնիքներուն, որոնք իմաստուն հեռատեսութեամբ եւ անխոնջ ջանիւք բնութեան

դէմ մրցելով պատրաստած են յիշեալ ջրերը, զորս այժմեան, կարելի է ըսել, բաղդաւոր սերընդեան ժառանգ ձգած են։

Արդէն Բզնունեաց կամ Վանայ ծովը սոյն ջրերու աւազանն է, միշտ ծեր և միշտ նոյն։

Աստիճանական միջին հաշուով

Քաղաքիս Հայոց կրօնական և կրթական կողմանց վերայ համառօտութեամբ խօսելով կը գտնեմք Վանայ մէջ 12 եկեղեցի, 30 քահանայ, 10 վարժարան և 1650 ուսանող, յորմէ 300 հոգի իգական սեռէ կը բաղկանայ և մնացեալ 1350 արական։ Պաշտօնէից թիւն 40, տարեկան ծախքն 600–700 ոսկի. մասնաւոր վարժարանաց աշակերտաց և պաշտօնէից թիւն, ինչպէս նաեւ ծախքերն սոյն հաշուոյն մէջն են, սակայն արդարութեան դէմ ըրած չըլլալու համար պէտք է կրկնել թէ մասնաւոր վարժարաններն համեմատաբար աւելի ծախք ունին քան թէ ծխականներն, որոց ծախքերն եկեղեցեաց կալուածոյ եկամուտներէն կը հոգացուին ընդհանրապէս և դարձեալ մասնաւոր վարժարանքն շատ աւելի արդիւնաւոր են ծխականներէն։

*
* *

ՎԱՆԱՑ նկատմամբ ընդհանրապէս խօսելոյ պահուս զոհ եմ ըսել որ իմ հայրենակիցներն անմխիթարականէն աւելի մխիթարական կողմեր ունին և ես սոսկ չունիմ շատ տրտմելոյ զօրաւոր պատճառ մը։

Տեղւոյս ընտանեկան կեանքն պարզ և անարատ է, մարդիկն ջերմեռանդ, ժիր և գործունեայ։ Առ և տրոյ նուազութեան պատճառաւ դժբաղդաբար մեծագոյն մասամբ զուրկ են նիւթական բարւոք վիճակ մ'ունենալէ։ Գովելի են իւրեանց յառաջադիմական ձգտումներն, եթէ կրթական տեսակէտով գործադրեն 'ի պատիւ Ազգին և 'ի փառս Օսմանեան մեծազօր գահուն, որուն դարերով հաւատարիմ կեցած և հաստատուն համոզմամբ ց'արդ ուխտերնին պահած են ու պիտի պահեն ց'վերջ։

*

* *

Ներկայիս պատեհ առթիւն ինձ նուիրական պարտք կը համարիմ տեղւոյս ձեռնհաս մասի խորին ուշադրութիւնն հրաւիրել, որպէս զի կըրկնապատկեն իւրեանց ջանքերն, որովք միայն կարելի է քաղաքիս ծխական վարժարանաց բարոյական վիճակն իւր համեմատական աստիճանին բարձրացնել և ասոր համար անհրաժեշտ հարկ են ուսուցչաց և դաստիարակաց վերաբերութեամբ իմաստուն ընտրութիւնք ընել և մանաւանդ սահմանել Տեսչական (ընդհանուր և մասնաւոր) դրութիւնն, որով ժամանակիս պահանջման համաձայն ԴՐԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹԻՒՆ մը կամ ԲԱՆԱՒՈՐ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆ մը տալ Վանայ նոր սերնդեան, որոյ վերայ արդիւնաւորել ԻՐԱՊԷՍ տեղական կարգ մ'անձնանուէր

ուսուցչաց և դաստիարակաց ջանքերն , որք առ ի չ'գոյէ ԿՐԹԱԿԱՆ ՀՐԱՀԱՆԳԻ կը մնան ապարդիւն , այսու հանդերձ խոստովանիլ պէտք է , որ տակաւին ՎԱՐԺԱՊԵՏԻ սովն կը տիրէ 'ի քաղաքիս , որոյ համար, առանց երկմտելոյ, կը հաւատամ թէ մի օր Հայաբնակի լուսաւորութեան գլխաւոր կեդրոններէն առաջինն պիտի լինի , բաւական է միայն որ այժմեան մի քանի ծանուցեալ անձնաւորութիւնք ապրին ԿՐԹԱԿԱՆ ԳՈՐԾԻ համար և ապա ամենքն միահամուռ Տեղագիր–Ուղևորիս հետ , ներքին համոզմամբ , հաւատան ԼՈՒՍՈՅ ԵՒ ԳԻՏՈՒԹԵԱՆ ՀՐԱՇՔԻՆ կամ ընդհանուր առմամբ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԵԱՆ ԶՕՐԻՆ ։ Ես 'ի պահեստի ունիմ տակաւին Նազովրացի Երկնային վարդապետի կրօնի վսեմ ԲՆՈՒԹԻՒՆՆ , որ բացարձակապէս սահմանեալ է մարդկային կենաց ճիւղ՝ տգիտութեան դէմըն մաքառիլ և տիեզերաց մէջ անարդար մարդոց ընթացքն ուղղել ու մշտապէս հաստատուն պահել հետևեալ օրէնքն , այսինքն « տալ զկայսերն կայսեր և զԱստուծոյն՝ Աստուծոյ » ։

ՎԵՐՋԻՆ ՀՐԱԺԵՇՏՍ ԵՒ ՄԵԿՆՈՒՄՍ ՎԱՆԷՆ

Իմ վերջի հրաժեշտ կը մատուցանեմ մանկութեանս օրօրանին , մեր խոնարհ բնակարանին , իմ պապենական տան և տնակին , ազնիւ եղբայրներուս և մեր համայն գերդաստանին , սիրական չրթանց կրկնահամբոյր դրոշմն նոցա փոքրիկ, կլոր մլոր զաւակաց կարմրուկ այտերուն ,

իմ որդիական քաղցր համբոյր կաթոգին մայրիկիս խնամոտ ձեռաց կը կրկնեմ, չեմ մոռնար վերջի մնաս բարեաւս իմ անձուկ կարասին՝ թըղթով և մղթով (*) դրչով և մրչով, գրքով և մըրքով լի գրասենեակիս. սէրս առ համայն բարեկամս և հայրենակիցս և 'ի վերջոյ իմ Նուիրական, այլ տխուր յարգանք Կարապետ–Միրախորի՝ հանգուցեալ հօրս վերջին օթևանին կամ գերեզմանին յայտնելով կը հեռանամ աստի:

*
* *

Այսչափ բաւ կը համարիմ և հետևեալ գըլխովս կը թողում զԱյգեստան՝ զիմ հայրենեաց սիրուն դրախտ և տասնամեայ պանդխտութենէս թէպէտև վերադարձ ըրած՝ սակայն տակաւին ծերունի ՄՕՐՍ արտասուք չորցած, ահա Վահան Գողթնացւոյն զգացումներովս ալեկոծեալ՝ ճամբայ կելնեմ ՏԵՂԱԳՐԵԼ ԵՒ ՆԿԱՐԱԳՐԵԼ տեղւոյս Արեւելագծովս, որոյ վերայ կը յուսամ աւելի հանդիստ ՈՒՂԵՒՈՐԵԼ:

## ԳԼ. ԼԴ.

### ՎԱՆԱՑ ԱՐԵՒԵԼԱԿՈՂՄՆ

Դառնամք այժմ դէպ 'ի Վանայ Արեւելա-

---

(*) Այս տեսակ բառերն, որք ժողովրդային են, ըստ ինքեանս ո՛չ նշանակութիւն մը եւ ո՛չ իսկ առանձին գործածութիւն մ'ունին, սակայն իրենց նախընթաց որոշակի բառին հետ կցուած ժամանակն այդ բառին նշանակած նիւթի արժէքին կը տան տարբեր աստիճան մը: Մեր ՏԵՂԱԳՐՈՒԹԵԱՆՑ վերջի Գ. մասի լրմանը այս նկատմամբ կը յայտնեմ իմ կարծիքս լեզուաբանական դիտողութեանս մէջ:

կողմն Այգեստանեայց բնակութիւններէն դուրս ելած՝ ուղևորիմք 'ի Վարագ ։ Նախ կը հանդիպիմք [illegible] կոչուած 3–4 երկայն և արդարև աւազոտ արտօրէից, որք սոյն անունն առած են հողի անբեր վիճակէն ։ Աստ տարին մի անգամ նոր կիւրակէ օր ձիարշաւ կընեն, նախապէս մի քանի շաբաթ վարժութիւն ընելով ։ Սոյն ձիարշաւի հանդէսն Երկրի բնիկ ժողովրդեան նախաբարական հին ԿԵԱՆՔ մեզ կը յիշեցնէ և արդարեւ յիշեալ օրն աստ կը լինի աշխարհաժողով Վանայ ամեն կողմերէն, տեղական կառավարութեան աչալուրջ հսկողութեան ներքև ։

Այս տեղէն յառաջ երթալով, հարկ է կըտրել մի քանի ընդարձակ արտօրայք՝ ընտիր հողերով և ջրերով կը հասնիմք [illegible] առու կոչուած գետակը, յորմէ անկամուրջ անցնելով շարունակեմք ուղինիս ։ Այլ ևս այս կողմերը չ'կան բնակութիւնք և միայն կրկին ընդարձակ դաշտօրայք և արտօրայք են նուազ բարեբերութիւնք ունեցող հողերով, յորոց ոմանք մասնաւոր ձորակներէ շրջապատեալ են. այսպէս ահա փոքր ինչ ևս յառաջ երթալով կը մտնեմք Վարագայ վանուց սահմանը, որոյ վերայ 20 վայրկենի չափ շարունակելով ընթացքնիս կը ժամանեմք [illegible] աղբերակ, որ մեր ճանապարհի ձախ թևի վերայ բնական քարափի մը խաւերէն ([illegible]) դուրս հոսելով կը գնայ յԱրևմուտս ։ Սոյն աղբերակն զիւր անունն առած է իւր դիրքէն, ըստ

որում մէկ մեթրէն աւելի բարձրէն չ՚ալով (կարկաչասահ կամ ջրուխժաբար վար թափիլ) կանցանէ ։ Աղբիւրն ճանապարհի անմիջական եզերքը գտնուելով՝ խոնջեալ ուղևորք չեն կարող, ամառուան տաքուն, առկէ ջուր չ՚խմած ճանապարհնին շարունակել, վասն զի այդ բնական ջուրն, որ արտասուքի նման պայծառօրէն դուրս կը գայ, գիտես թէ կենաց կը հրաւիրէ ծարաւեալ հոգիներն և մրկած սիրտերը ։

Սկսիմք այս ջուրէն և ուղինիս շարունակեմք մեր սրտէն դէպ 'ի Վարագայ սիրուն վանքն, որ տակաւին չ՚երևիր, որոյ մի քանի ահագին և լայնատարած բլուրներ ծածկած են զիւր դէմքըն զՎան քաղաք ամբողջովին իւր առջև տեսնելէն ։ Առկէ յետոյ ձորակ մ՚ալ անցանելով, քայլ առ քայլ զգալի եղանակաւ պարտաւորեալ եմք աւելի դարի վեր ելնել 'ի Վարագ գնալոյ ։ Սոյն ճանապարհն պէտք է ըսել՝ որ չափազանց պարարտ (չիչման) մարդոց համար դժուարել է. սակայն իրապէս դեղեցիկ տեսարանաւ, մանաւանդ երբ կեցած տեղէդ ակնարկ մը նետես ոչ թէ 'ի Հիւսիս, ուր ահագին ՑՈՒՐՏ լեռներ կը պատեն և չունիս ոչ աչքի և ոչ իսկ մտքի հորիզոն, այլ 'ի ՀԱՐԱՒ, ուր ԿԵՆՍԱՏՈՒ ՕԴԻ ծաւալն ընդարձակ է և մարդս, եթէ հեռատես լինի, իւր իմանալի հորիզոնին հետ շատ դիւրաւ կարող է տեսնել նաև զգալին, որով կրնայ ազատօրէն ՇՈՒՆՉ առնուլ և չնեղուիլ ։ Հաւատա-

րիմ սրտէ մը և վարդապետութենէ մը բղխած սոյն անցողակի և համառօտ խօսքերս իրեանց ընդարձակին մէջ ամփոփելով՝ անցանեմք հանդարտ Վարագայ վանուցնորաշէն փակախներէն (ախոռ) և ոչխարատեղիներէն, ուր ոչխարներուն ևս այցելութիւն մը տալ հաճոյք զգացի. Հոն տեսայ բազմաթիւ սիրուն գառնուկներ մակաղուած, այդ հլու անասուններն գորովանօք շրջապատած էին Մահմտանցի (Խօշապցի) Օսման անուն կտրիճ Քուրդ հովիւն, որ զիս պատուասիրեց իւր յատուկ ոչխարաց կաթովն, որոյ համար իմ շնորհակալութիւնն իրեան յայտնելով՝ ելնեմք 'ի ճանապարհ և մտնեմք զուարճալի ծառուղին, որոյ հովանեաց ներքև յետ այսու կը քալեմք մի հարթեալ ճանապարհի վերայ, այն ջրոյ եզերքէն, որ կ'ոռոգանէ զծառուղին, զորս յատկապէս տնկել տուած է հայրենաշէն և վանաշէն Ամեն. Սրբազան Հայրիկ Խրիմեան։

Այսուհետև Ուղեւորն թէպէտև զիւր ուղին կէս ժամու չափ տակաւին պարտի շարունակել, այսու ամենայնիւ իւր բոլոր հոգնութիւնքն մոռացած՝ հանգիստ և ապահով յառաջ կը գնայ տեսնելով վանուց Արևմտակողման դրախտատիպ տեսիլն, շնչելով կենսատու օդն, ակնարկ մը նետելով գեղեցիկ լճակի մը վերայ, որ կը գտնուի Ուղևորիս յԱջակողմն՝ 2–3 քարընկեց հեռու։ Սոյն լճակն շրջապատեալ է անպտղատու ծառերէ և պատուական մարգերէ,

որոց մէջ, գալնան եղանակին, երփներփեան ծաղկունք չօրօր մօրօր (նազելօրէն կամ հարմնօրէն) կը ծածանին և գինարբուն՝ մեր Երկրի սիրուն ՏԱՂԻԿ՝ վեհ ԹԱԳՈՒՀԻՆ բոլոր ծաղկանց ամենուրեք կը տեսնի :

*
* *

Ահա ճանապարհի այս ծառուղեաց մէջ ուղեւոր մը բնականապէս հաճոյք և զուարճութիւն անտրտմական ուրախութեամբ խառնօրէն յինքեանս զգալով՝ չ՚կրնար երախտագէտ ըղձացմամբ չյիշել զԽրիմեան Հայրիկ, որ նախահոգ միջոցներով պատրաստել տուած է զայս ծառուղին գեղեցիկ :

Տակաւին վանքը չենք հասած՝ մեր դիմաց կելնէ իր նորատունկ անտառակն, որ վանուց Արեւմտեան դէմքն կը ծածկէ մեր աչքէն, սակայն կաթուղիկէն, լայնակամար աստղի նման, ծառոց կատարներէն 'ի վեր՝ բարձրէն կերեւի, որ ջերմեռանդ սիրտեր կ՚ստիպէ խաչահանութեան, որպէս սովոր են Հայաբնակի վանօրէից ուխտաւորք, խաչակնքել զերեսնին, երբ 'ի հեռուստ տեսնեն գնալիք վանուց տաճարի գըմբեթն կամ կաթուղիկէն :

Այսպէս ահա գեղեցիկ ծառուղեաց և հարթարեալ ճանապարհներէն շարունակելով մեր ՄՏԱԴՐՈՇՄ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆՆ կը ժամանեմք ի Վարագ՝ յայն հռչակաւոր մենաստան, որոյ համառօտ տեղագրութիւնը և նը-

կարգադրութիւնն ըրած պահուս իսկ զայն տեսած վայրկենին պէս հաճոյք և քաղցրութիւն կզգամ սրտիս և հոգւոյս մէջ աստ՝ 'ի Կ. Պօլիս:

## ԳԼ. ԼԵ.

### ՎԱՐԱԳԱՅ ՀՌՉԱԿԱՒՈՐ ՎԱՆՔ

Սոյն վանքն շինուած է համանուն լերան Արեւմտեան հիւսիսակողմն, Վանայ Արեւելակողմն ու անկէ 2 ժամ հեռու, 'ի հնումն եօթ հատ հոյակապ տաճարներ ունէր, յորոց երկուքն միայն մնացած են հաստատուն, միւսներէն ոմանք կարևորութիւննին կորսնցուցած են և ոմանք ևս 'ի հնուց անտի աւերեալ կը կենան: Սոյն վանքը Լուսաւորչաշէն է, բայց վերանորոգութիւնք շատ տեսած է դարերու և փոփոխութեանց ձեռամբ:

### ԱՒԱԳ ՍՈՒՐԲ ՆՇԱՆ

Այս եկեղեցին՝ այժմ փառաւոր և շէն, կառուցեալ է կոփածոյ քարերէ և կանգնած 4 քառակուսի սեանց վերայ, ուր Տրդատայ, Լուսաւորչի և այլ մեծ մարդոց պատկերներ նըկարուած են հնէն: Եկեղեցւոյս աջակողմեան դասի մէջ կը գտնուին Սեննքերիմ Արքայի և Պետրոս Գետադարձի պատկառելի շիրիմներն, որոնք կը պահպանուին յատուկ խնամօք: Տաճարն նոյնպէս հսկայ և գմբեթաւոր է: Վանուց եկեղեցւոյ դրան առջև (դրսի կողմն) գտնուած

երկու սիւներն ըստ աւանդութեան, «Տրդատ իւր երկու թեւերու տակն առած՝ Վերին Վարագէն բերած է»: Վանքն ունի ընդարձակ նստուածք և 50–60 հատ սենեակներ, որք երկայարկ են և կը շրջապատեն գեղեցիկ բակ մը, (ուր կայ լաւ աղբիւր մը) ու կը բոլորուին դարձեալ մեծամեծ այլ բակերէ և ապա բարձր պարիսպներէ: Վարագայ սոյն նշանաւոր մենաստանն ունի սքանչելի տեսարան, ընտիր կլիմայ և պատուական ջուր:

Վանքն իր մերձակայ բոլորտիքովն շրջապատեալ է պտղատու և անպտղատու ծառերէ, որոց հովանեաց ներքև Վանայ Հայ ժողովուրդըն, ամառուան եղանակին, և մանաւանդ Մայիսի ծաղկապսակ ամսոյ մէջ, ուրախութեան խնջոյքներ կը կատարեն չաբաթ երեկոյներ 'ի Վարագ ուխտի կամ զուարճութեան գալով:

Վանուց ծառաստանաց մէջ նշանաւոր տարիքով կան մի քանի ընկուզենիներ, որոց լեզուն բնութիւն կապած էր և բան մը չ'խօսեցան Ուղեւորիս, որ կը կարօտէր արդարև ՇԱՏ ԲԱՆԻ . . . : Վանուց յանմիջական Արեւելն է «Դրախտ», որպէս կ'անուանեն զայդ սիրուն պարտէզ:

Վանքիս հնոցէն (հին վիճակէն) այսչափ միայն գրելոյ խոհեմութեամբ՝ դառնամք խօսիլ նորոցէն (նոր վիճակէն):

*
* *

Վարագայ վանքն 1858 Թուականին Ամեն. Խրիմեան Սրբազան Հայրիկն իւր վանահայրութեան տակն առնլով ընտրեց զայն Հայաբնակի գաւառաց համար ուսումնապէս գործելոյ ասպարիզատեղի. յետ այնու վանքն այլ եւս դադրեցաւ Վանայ նոյն ժամանակի կարգ մ' իշխանաց Բէ++է լինելէ եւ եղաւ որբ եւ անտէր մանկանց ՄԽԻԹԱՐՈՒԹԵԱՆ ՏԵՂԻ եւ յայնժամ մեծահոգի Խրիմեան Հայրիկն վանուց երեք ահագին դրունք բանալով՝ Հայաբնակ աշխարհի ամեն կողմերու որբ եւ անտէրունջ մանուկներուն համար հրաւէր կարդաց թէ «Թոյլ տուք մանկտւոյդ գալ առ իս»։

Արծւոյ հզօր թեւոց տակ եկան եւ պատըսպարան գտան անտէր ու անտիրական մանուկներն, պատանիներ, փորձանաւոր երիտասարդներ, ծերեր եւ երբեմն իսկ անարդար աստուրիս դժբաղդութեանց ձեռքը խաղալիք եղող թշուառ Հայ արարածներ, որոց ամենուն տըւաւ անխտրապէս ԼՈՅՍ, որով եւ ԿԵԱՆՔ, հաստատելով նոր եւ կանոնաւոր միաբանական ուխտ, շինել տալով ժառանգաւորաց վարժարան մը՝ ժառանգել տուաւ զայն բազմաթիւ կարօտ ուսանողաց, պատրաստեց ճոխ թանգարան մը եւ բացաւ Հայաբնակի իւր առաջի մամլոյ թեւերն սկսաւ նորէն բուռն զօրութեամբ ԼՈՅՍ, որով եւ ՅՈՅՍ սփռել Հայաբնակի ամեն խաւարին խորշերը, ուր ազատութիւնն կը թագաւորէր։

Վանուցս բարոյական լուսոյ ճառագայթ-ներն հասան մինչև 'ի Պարսկաստան և 'ի Ռուսաստան Վասպուրական արծւոյն արագաշարժ թեւերովն, որ չուքն էր նաև արեւակիզելոց:

* * *

1880 թուականին Խրիմեան Հայրիկն երկրագործական դասեր մոցնել տուաւ վարժարանին մէջ և 30 էն աւելի ժրաջաղուկ ուսանողներ ըսկըսան Երկրի ՀՈՂԻՆ հետ գործ ունենալ, չինուեցաւ մի նոր վարժարան գերմանական դրութեամբ և ըստ այնմ ամեն ինչ բարեկարգեց և այժմ 25–30 ուսանողներ ձրի կաչակերտին համաձայն նախորդ տարիներուն:

Վարագայ վանքն Ամեն. Խրիմեան Հայրիկի վանահայրութեան օրովն բազմաթիւ գործիչներ ընծայեց Ազգին և որք այսօր պատիւ կը բերեն նոյն իսկ տիրող Կառավարութեան. վանքըն իւր ծոցէն դուրս տուաւ Եպիսկոպոս, վարդապետ, քահանայ և վարժապետ, որոնք ցորեանի նման Ազգին մէջ ցանուեցան և տուին ու կը տան պտուղներ, ոմն տասնաւոր, ոմն երեսնաւոր և ոմն հարիւրաւոր: Ահա այս անվիճելի իրաւամբ Խրիմեան եղաւ Ազգի ՄԵԾ ՄԱՐԴՆ և ես աստ սոյն գեղեցիկ առիթովս զՎարագ՝ «Վասպուրական աշխարհի ՎԵՆԵՏԻԿ» անուամբ մկըրտած՝ յարգանօք կը համբուրեմ Նորին Ամենապատիւ Սրբազնութեան շնորհաբաշխ Ս. աջը և կերթամ 'ի ճանապարհ ուղեւորիլ դէպ 'ի յԱրեւե-

լակողմն վանուցս և այսպէս կէս ժամ ընտիր տեսարաններէ ու ընդարձակ բլուրներէ անցանելով կիջնեմք 'ի մի երկայն լեռնահովիտ, որ Վարագայ ծաղկազարդ լերինք երկու գլխաւոր չերտերու կը բաժնէ, մին յԱրեւելակոյս և միւսն յԱրեւմտակոյս, որպէս յիշած եմ վերև։

Մեր ուղին շարունակելով դէպ 'ի Հիւսիս, այս բնական ծաղկոցաձորին մէջ կը կոխեմք գարնան ժամանակին անթիւ ծաղկունք, զորս բնութիւն ուղեւորաց ոտից տակ կը ձգէ և միանգամայն իւր ուղածին համաձայն զայնս տեսակած, գունաւորած և հոտաւէտած է։ Ծաղկանց ՆԱՁԵԼԻՆ՝ մեր գեղեցկատեսիլն գինարբուն սոսա եւս իւր ճղաւոր գլուխն մասնաւոր մարգերու մէջ բարձրացուցած՝ կը շօրօրայ և կը մօրօրայ յինքն գրաւելով զուշն և զուրուշն մըտադրոշմ Տեղագրողիս։

Այս ուղղութեամբ խոնջեալ ուղեւորք չեն կրնար սոյն տեղերը պարբերաբար հանգիստ չ՚առնուլ բնութեան տեսարանաւ զուարճանալոյ համար։ Կը բոլորուին մի աղբիւրի քով և այդ աղբիւրն Թող լինի «Ապարանջան», (ոյր վերայ ունիմ խօսելիք իւր յարմար տեղին), որ մեր դրեթէ կիսաճանապարհի վերայ կը գտնուի և յԱրեւելէն յԱրեւմուտ հանդարտօրէն դուրս կը գայ մի լեռնակարկառի տակէն, ջուրն ապակւոյ նման թափանցիկ է, արտասուքի պէս վճիտ ու պայծառ և անուշահամ, դու խմէ՛ ու խմէ

որչափ կամիս , ընդ միշտ կը ծարաւիս և մանաւանդ երբ քովդ լինի լօշ (անօսր) հաց և կիւրանդաշտայ (Տատախ գաւառի գիւղերէն մին) անոյշ պանիրն , դու յայնժամ կեր ու կեր որչափ կուզես , այլ միշտ կանօթենաս ։ Սոյն պահուս ճաշել , կոնծել (գործածողաց համար) , պօռալ , կանչել , երգել , բանաստեղծել և վերջապէս երգեցիկ թռչնոց ձայներու հետ մրցիլն շատ բնական են սիրտ ունեցող մահկանացուներու համար , մանաւանդ եթէ չունենան մտաց տանջ մը կամ հոգեկան ալեկոծ մը ։

* * *

Ճաշէն ետքը մեր ուղին շարունակելով կը հասնիմք 'ի վերին Վարագ , յայն հին երբեմն հռչակաւոր մենաստանն , որ աչք բացած պահուն կը տեսնայ զԼուսաւորիչն և զՏրդատ , որոց միջոցաւ կը կառուցուի արդէն և աւելի 120 —130 տարի յառաջ տակաւին Շէն էր ։ Սոյն վանքն այժմ գետնատարած կը կենայ լայնապարիսպ հիմքերով և տակաւին ներքին մի քանի կամարներովն . ամեն կողմանէ զուարճալի վայրերէ և տեսարաններէ շրջապատեալ է , դըրացի են իւրեան բարձրէն . . . և մօտէն թօդիկ սրբազգեաց հին կրօնաւորի ճգնարանը , ուր մտնելոյ համար հարկ է , որ մարդս պահ մը ծռուելով աղեղ դառնայ , եթէ չէ գոռոզ ։

# ԳԼ. ԼԶ.

## ԳԱԼԻԼԻԱՆ

Վարագայ լերան Արեւելեան չերտի ամենաբարձր կատարի նեղ գագաթան կիսակարմիր տեղւոյն մէջ ամփոփուած և ապա յայտնուած է Հոփսիմէի պարանոցէն կախեալ ԿԵՆԱՑ փայտըն ։ Լերան յիշեալ կատարն ուխտատեղի է. բայց հոն ելնելոյ համար կենաց ամեն վտանգներն պատրաստ են ուխտաւորին համար, այս պատճառաւ ոչ ոք կը համարձակի այդ վտանգաւոր եղ և էջ ունեցող տեղին ելնել կամ ելնողքն հազուագիւտ են ։ Աւանդութիւնն կըսէ թէ « ով որ մի օրուան մէջ ծոմ (առանց բան մը ուտելոյ) 40 անգամ վարէն ելնէ Գալիլիային գլուխը և անկէ իջնայ անվտանգ, նորա գործն միշտ յաջող կը գնայ ինչ բանի որ ձեռնարկէ »։

Ասկէ 15–16 տարի յառաջ Մ. Մալխաս անուն վանցին այդ համոզմամբ ձեռնարկեց մի օր ելն և էջն, սակայն դժբաղդ մարդն, որ 38 անգամ ելանել և իջանել կը յաջողի և երբ կը մնայ 2 անգամ միայն, որով իւր մուրատն պիտի առնոյր, վերէն յանկարծ կիյնայ՝ այդ գրեթէ պատի նըման ահագին ժայռերէն և կլորուելով կիյնայ ու մարմնոյ ոսկորներն կաշիին մէջ խուրտ խաշ (մանր ու մունր կտորուանք) կամ նոյն է ըսել փշուր փշուր կը լինին և հոգին անմիջապէս կաւանդէ, առանց գոնէ վերջին բառ մ՚արտասա-

նելոյ . իսկ ինձ գալով ամբոխին հետ ներկայի-նելոյ դժբաղդութեան արդէն հանդիպած էի և այժմ այս տողերը գրած պահուս իսկ արդարեւ մտքիս առջև կը պատկերանայ այդ ցաւալի դէպքի տխուր երևոյթն ։ Յիշեալ եղուէջական ուխտաւորն թաղուեցաւ Ներքին Վարագայ գերեզմանատան մէջ . նոյն օրը համայն Վանեցւոց սիրտերն լեցուեցան տրտմութեամբ , վասն զի մեռնող նշանաւոր և բարեսիրտ մի անձ էր , որ զոհ գնաց իւր մտաւոր անհաշիւ կարողութեան . ինչ որ է թող նա 'ի հոգեկան աշխարհ անդառնալի ճանապարհորդէ և ես կը շարունակեմ զիմ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ 'ի մարմնական աշխարհս դառնալի ։

* * *

Մի և նոյն տարին 2 գերմանացի նշանաւոր ուղեւորներ 'ի Վան եկած էին , որոց առաջնորդ եղած՝ վախվլխելով կամ դողդղալով հասուցի զիրենք 'ի գլուխն Գալիլիայի , ուր ուխտերնին կատարելէն ետք տեղւոյն կարմրագոյն քարէն մէկ մէկ կտոր փրցնելով պահեցին հետերնին տանելոյ 'ի Գերմանիա ։ Սոքա էին ջերմեռանդ գիտնականներ և ըստ իւրեանց բանի պաշտօնով բժիշկ , որք Վանէն 'ի Վարագ եկած էին այցելութիւն տալ Ամեն . Խրիմեան Հայրիկին և այս պաշտելի Գալիլիային , յորմէ անմընաս վար իջնալոյ համար սոսկալի երկիւղէ մը բռնուած՝ հոգիս կը յուզուէր և մարմինս կը դո-

ղար, մանաւանդ որ երկու պատկառելի մար-դոց եւ միեւնոյն ժամանակի տղայական յանդըգ-նութեամբս առաջնորդ եղած էի: Գալիլիային գը-լուխը 5 հոգւոյ նստելոյ հազիւ տեղի կայ և մենք էին երեք հոգի. երկու անծանօթներն երրորդ Ուղեւորիս նման լեռան գագաթը կըղ-զիացած՝ և երկինքի տագնապներէն երեսի գոյ-ներնին նետած՝ ինձ կընայէին սառնօրէն և ես ամօթէն 'ի գետին. վերջապէս սաստ ամփոփեալ Քրիստոսի խաչի ԹԵՒԷՆ կախուելով՝ անվտանգ երեքս մէկէն 'ի վար իջանք, որպէս 'ի վեր ելանք անվնաս: Այս յաջողութեամբ յիմ պատանեկու-թեան ես տեսի խաչի զօրութիւնն վտանգաւոր և նեղ վայրկեաններուն համար և այսօր՝ երիտա-սարդութեանս մէջ, նուիրական պարտք մը կամ լաւ եւս է ըսել պէտք մը զգացի այդ քառա-թեւին կարողութիւնն վարդապետել, թէև ես չլինիմ կրօնաւոր կամ վեղարաւոր:

Մեր անցողակի սոյն պատմութիւնն և վար-դապետութիւնը առ այժմ վերջացուցած՝ շարու-նակեմք մեր ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆՆ:

Գալիլիայէն վար իջած՝ վերին Վարագայ աւերեալ վանուց մնացած փոքրիկ կամարի ՏՈՒ-ՔԻՆ տակն, ուղեւոր կիզմանէն ապահով նստած եմք, տեղւոյս օծեալ քարերուն դրացի ամեն կողմերը անծանօթ սրբոց անուամբ աղբիւրներ պակաս չեն, որոնցմով պահ մը զովացայ:

* * *

Վարագայ սոյն լերան Հիւսիսային մասի յԱրեւելակողմն կը գտնուի ՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ կոչուած վանքն, որոյ տաճարն եւս լուսաւորչաշէն է, սակայն այժմ լուսաւորութիւնն վանքէն փախ տուած՝ խաւար կը տիրէ ամեն կողմն և մութն 'ի ԼՈՅՍ տաճարն:

Սոյն մենաստան շինուած է կոփածոյ քարերէ ընդարձակ լեռնահովտի մը մէջ, ունի զուարճալի վայրեր և ծառաստանաց հովանիք, ջուրն լաւ և օդն առողջ, այլ ափսոս որ զայնս վայելող մենաստանցիք կը պակսին:

Վանուցս յԱրեւմտակողմն զառիվայր անտառակին մէջ կայ աղօթատեղի մը, զոր Երուսաղէմայ Դուռ կանուանեն տեղացիք:

Սուրբ Գրիգորի վանքն շատ անշքացեալ է, Թէպէտև վայելած լինի փառաւոր անցեալ մը. Ներկայիս մէջ ամայի չը մնալոյ չափ միայն բնակիչ ունի, խեղճ և ողորմելի կացութեան մ'ենթարկեալ և չունի իւրեան կարեկից մը:

Ս. ԳՐԻԳՈՐՆ խիստ քիչ ունի տափարակ արտօրայք, ուր կարենայ ամառ ատեն ցորեան ցանելով ձմեռուան պաշարն պատրաստել, սակայն և այնպէս ունի ընդարձակ լեռներ, որք հարիւրաւոր ոչխարներ կարող են սնուցանել: Այժմ ոչ ոչխար կայ և ոչ սնուցանելոյ հետամուտ, ահա դարձեալ գործ, զոր գործող կը պակսի և ականջ խօսի մեր ուղեւորաց:

Մտաց խաւարն և անոր արդիւնք եղող անտարբերութիւնն այս գեղեցիկ մենաստան հասուցած են սոյն օրինակ ողբալի դրութեան, որուն Երեմիաս լինիլ չեմ ուզեր ։

*
*   *

Վերին Վարագէն կրկին մեր նախորդ ճանապարհաւն 'ի Ներքին Վարագ վերադարձ ըրած՝ տամք մեր վերջի համբոյր կամ չըթամբ որտի դրոշմն տաճարի մի սուրբ կողին և ելնեմք յուղի դէպ կորկոտ խուլ կոչուած բլուրն ։ Վանուցս Արեւմտեան հիւսիսային գիծն բռնելով՝ պէտք է հեռահետէ չեղիլ 'ի հիւսիս ։ Վանքէն 5 վայրկենի չափ հեռու է յիշեալ բլուրն, որ նկատմամբ կաւանդեն թէ « հոն խաչի կոյտ մը պահուած է » նոյն բառն ստուգաբանելով « կայ անդ կոյտ խաչ » ։ Սոյն տեղին երբեմն հետաքրքրութեամբ նայուած և բաւական փորուած է, սակայն ոչ ինչ գտնուած ։ Ինչ որ է, տեղէս յոյսերնիս կտրած՝ մեր ճանապարհ յառաջ վարելով 1 ժամու տեւողութեամբ կըկտրեմք բազմաթիւ բլուրներ, կանցնիմք ձորերէ, և անանչան լեռնակներէ կը ժամանիմք հետեւեալ տեղին, որ քիչ հետաքրքիր չէ ։

## ԳԼ. ԼԷ.

### ՇՈՒՇԱՆՑ՝ ՊԱՏՄԱԿԱՆ ԳԻՒՂ

Սոյն գիւղն կը գտնուի Վարագայ լերան Արեւմտեան չերտի ստորոտը, փոքրիկ և բնակա-

նէն բերդանման քարաժայռի մը առընթեր ։ Ունի 40–45 տուն Հայ բնակիչ, յորմէ 2 տուն Տաճիկ է ։ Հայք ունին յանուն Ս. Գէորգայ շինուած եկեղեցի մը, կառուցմամբ շատ պարզ և մութ, 180 տարուան հնութեամբ ։

Ճուշանց Վանայ Այգեստանի յԱրեւելակողմըն է և անկէ մէկ ժամ հեռաւոր ։ Բնակիչք երկրագործ են և կը ցանեն միայն ցորեան, տարեկան և գարի ։ Տեղւոյս գիւղացիք անասնոց համար արօտատեղիք չունենալով ցորենի ընտիր արտերու մէջ առւոյտ և կորնկան, (եօնճա) ցանելոյ պարտաւորեալ են, թէև ձմեռն կենդանիքն կապրին աւելի յարդով քան թէ խոտով ։ Ունին մի քանի հատ այգիներ, որոնցմէ բաւական քանակութեամբ գինի կելնէ, սակայն շուտով հատոյնելոյ հետամուտ են, այնպէս որ տարուան 8 ամսուան համար պէտք ըլլալիք բաժակի համար գինին քաղաքէն բերել կըտան ։ Աշխատութեան փափաքն դժբաղդաբար շատ նըուազ տեսայ իւրեանց մէջ և առ հասարակ հակամիտ գտայ զիրենք սպառիչ պանդխտութեան գնալոյ. 20 հոգւոյ չափ պանդուխտ ունին 'ի Պօլիս ։ Զիրքերնին վառվռուն, մանաւանդ նոր սերնդեան, զոր տխուր զգացմամբ մը դիտեցի ուեն մերկ և բոկոտն վիճակի մէջ և որ աւելի կսկըծալին է գտայ զիրենք իւրեանց հասակին յատուկ ուսանողական ԵՐՋԱՆԻԿ ԿԵԱՆՔԷՆ զուրկ ։

Գիւղս իւր անունն առած է իր հիմնադրի անունէն ։ Սենեքերիմ թագաւոր երբ առաջին անգամ 'ի Վասպուրական ('ի Վան) կըգայ, իւր դուստր Շուշանիկ կամ Շուշան տեսնելով սոյն տեղւոյ բնական գեղեցկութիւնն և սքանչելի տեսարանն, մանաւանդ Արեւմտակողմանն, կուզէ մի գիւղ հիմնել և ընել զայն իւրեան ամարանոց, որ քաղաքի ամբողջութիւնն իւր աչքի առջեւն ունի և կընմանի անառիկ բերդի մը, սակայն ջուր չունենալով պահ մը կը վարանի ընելիքին վերայ ։ ուստի իւր Հայր Սենեքերիմէն կը խնդրէ ջուր, յայս վայրկենիս հօր աչքին կը զարնէ իւր դստեր երկու ձեռաց ապարանջաններն և կըսէ թէ « այդ ապարանջանից լայնութեան չափ քեզ ջուր տուի » և վերին Վարագայ լերան ստորոտէն իւրեան ցոյց կը տրուի տանելիք ջրոյ ակն, որոյ վերայ խօսեցայ արդէն երբ ներքին Վարագէն ի վերինն կ'ուղեւորէի ։ Այժմ դրեթէ այդ ջրով կը սնանի գիւղս, որ Շուշանի կամ Շուշանիկի անուամբ ըսուեցաւ « Շուշանց », որոյ Արեւմտակողմն 2–3 քարընկէց հեռու կը գտնուի իւր Հիմնադրի՝ Արքայազուն դստեր վսեմ ԴԱՄԲԱՐԱՆՆ ողորմելի խրճիթի մը մէջ, քանի՜ ցաւ և կսկիծ կընայ պատճառել սոյն գերեզմանի անշուք վիճակն զգայուն ուղեւորաց սրտին և հոգւոյն, եթէ իրարու կից են ։

Շուշանից դարձեալ յԱրեւմտակողմն 10 վայրկենի չափ հեռաւոր կայ մի աննշան խա-

չաքար, զոր տեղացիք «Փերուզ նահատակի գե-րեզման» կանուանեն, որպէս թէ յանուն կրօնի նահատակուած մի աղջիկ լինի այդ անկերպարան և անթուական քարի տակ թաղուածն։

* *
*

Քարոտ Շուշանցէն ճամբայ ելնելով ուղեւո-րիմք դէպ 'ի Հիւսիս և 1/4 ժամէն կը հանիմք ՆԱՐՄՐԻՈՐԱՑ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ կոչուած հը-նաշէն վանքն, որ շինուած է Թադէոս Սրբազան առաքեալէն և կառուցեալ բարձր բլրոյ վերայ և ունի սքանչելի տեսարան, շատ գեղազանց քան զՇուշանիցն և մանաւանդ Արեւմտակուսէն, երբ Արեգակն ոսկի գնդոյ կերպարանք առած՝ ի մար մտնելոյ (աներեւոյթ լինելոյ) վերայ գըտ-նուի, հողեղէն արարածն կզմայլի և կափչի յայս պահուս սոյն տեսարանէն։

Սոյն վանուց մէջ միաբանութիւն չկայ, իւր բոլոր բնակիչքն կը բաղկանան մի ողորմելի քա-հանայէ և 3–4 հոգի երկրագործ մշակներէ, որք ել և մուտ կընեն այդ նուիրական վայրն ամայի չ'մնալոյ համար։ Վանքս ունի բաւական գեղե-ցիկ շէնքեր, որոց մեծագոյն մասն լուսահոգի Իգնատիոս Եպիսկոպոսի և Ստեփան վարդապետ Տ. Սարգսեանի օրովն շինուած են, սակայն ինչ օգուտ ապրանք մ'առանց ՏԻՐՈՋ. այժմ սկը-սած են քայքայուիլ։ Ունի նոյնպէս ոչ սակաւ հողեր, որք դժբաղդաբար երեսի վերայ մնա-ցած են և մէջի 3–4 ողորմելիներն շատ անգամ

տաք ապուր մը (չօրպա) գտնել կը դժուարին և այս ամենայաւալի պարագային մէջ կը պարտաւորին դիմել Տուշանիկի գիւղը՝ ։

Սոյն մենաստանն, յարմար վանահօր մ'իրաւասութեան ներքև, ամենապատուական տեղի մի է 10–12 հատ գիշերօթիկ ուսանող պահելոյ բայց ո՞ւր է պահողն, և ո՞ւր վանահայրն, ահա Ազգի որբերն աչքերնին արտասուաւ կեցած ։

* * *

Գեր. Ղեւոնդ վարդապետ Փիրղալէմեան, որոյ վերայ անձնանուիրութեան հոգին կը փայլի, յարմարագոյնն է վանահայրութեան յիշեալ վանուց և առ այս նա արդէն ամենամեծ իրաւամբ փափաք կը տածէ, որպէս կը լսեմք, միայն սա պայմանաւ որ ինքն ց'մահ վանահայր մընայ այդ վանուց, որոյ շինութեան և պայծառութեան համար կը խոստանայ նաև մեծ զոհողութիւնք իւր անձնականէն ։

Ուստի Ազգային Վարչութեան խորին ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆՆ կը հրաւիրեմ սոյն պատշաճութեան վերայ, զի այս կարգադրութեամբ Ազգն իւր մինուիրական տեղին, ըստ օրինի, բարեկարգած կը լինի, որով և սրբած՝ աղի արտօսր 10–12 անտէր որբերու, զորս այս և այն կողմերէն ժողովելոյ ԱԶՆԻՒ ԽՈՐՀՈՒՐԴ 20 տարիէ 'ի վեր իւր սրտին մէջ կը տածէ այդ մեղուաջան վարդապետն, որ այժմ 'ի Պօլիս եկած է և ունի գրական երկեր 'ի լոյս ընծայելիք, որք են ճոխ

տարեգրութիւնք և յիշատակարանք ։

*
* *

Վանքէս մեկնելով 'ի Հիւսիս կէս ժամէն կարող եմք համնիլ հետեւեալ գիւղն ։

ԱՂԳԱ. — Ունի 60 տուն Հայ բնակիչք, որք ունին մի եկեղեցի և մի բաւական ծաղկեալ ծաղկոց ։ Տեղւոյս ամենէն աւելի մխիթարանքն իւրեանց համեստ և աշխոյժ քահանայն է ։ Տեղական կլիմային ազդեցութիւն մեծ է տեղացւոց վերայ, որոնցմէ, ցաւ է ըսել 40 ի մօտ պանդուխտներ կը գտնուին 'ի մայրաքաղաքիս ։ Գիւղ տափարակ դաշտի վերայ է ։

Աղգայէն ճամբայ ընելով վերադարձ ընեմք յԱյգեստան, ուր բնաւ կանգ չառած՝ ուղեւորիմք 'ի քաղաք Դուհրէծ դրան առ ընթեր, որոյ առջեւի ուղին բռնելով չարունակեմք դէպ 'ի Հիւսիսային Արեւմուտ և 3/4 ժամու տեւողութեամբ տափարակ արտօրայք և մարգագետինք կտրելով կը ժամանեմք 'ի Բզնունեաց ծովն, որ վերայ յաջորդ գլխով խօսիմք ։

# ԳԼ. ԼԸ.

## ՎԱՆԱՅ ԿԱՄ ԲԶՆՈՒՆԵԱՑ ԾՈՎ

Վանայ յԱրեւմտակողմն կը գտնուի համանուն ծովն, որ կանուանի նաև «Բզնունեաց» ծով մերձակայ նոյն գաւառի անուամբ ։ Ջուրն չատ աղի է և դառն (բորակային), ծովն ձգուած է յԱրեւելէն յԱրեւմուտ, իւր մակերեւոյթն տա-

կաւին ճշդօրէն չափուած չէ, միայն ըստ մեր Մովսէս Խորենացի հօր, 100 մղոն երկայնութիւն և 60 մղոն լայնութիւն ունի, սակայն այժմ այս հաշիւն բնականաբար իւր ստուգութիւնը կորսնցուցած պէտք է լինի, երբ 'ի նկատ առնումք այսչափ դարերու մէջ ծովուն ըրած մակընթացութիւնն, որով իւր անհաւասար եզերաց վերայ շատ տեղեր, գիւղեր և գիւղաքաղաքներ կոխած է, որոց նշաններն տակաւին սրատես աչաց նշմարելի են: Մենք Վանայ ծովու ընդարձակութիւնն կը սահմանեմք հետեւեալ գործնական հաշուով, զոր առած եմք տեղւոյս նաւավարներէն, այսինքն յԱրեւելէն յԱրեւմուտ 24 ժամ և Հարաւէն 'ի Հիւսիս 8 ժամ տեւողութիւն ունի կանոնաւոր հովերով երթացող առագաստաւոր նաւու մ'ընթացիւք: Իւր անմիջական եզերքներն շատ ներս դուրս ինկած են, մանաւանդ Հարաւակողմն, եզերքներէն տեղ տեղ անտառային են և բնաւ չունին կանոնաւոր նաւահանգիստ մը:

Ծովս, հակառակ իւր փոքրութեան, ժամանակ առ ժամանակ սոսկալի մրրիկներ կը յարուցանէ, որով կատաղի ալիքներ կունենայ, որք ծովու մէջ տեղերն ևս կը պայթին և պարունակած աղային նիւթի պատճառաւ պայթած միջոցին փրփրալով կը դաշտանայ ծովուն երեսը, որոյ յատակն գիտես թէ կրակ կը վառուի և ջուրըն եռացմամբ կը յուզուի: Այս առ երեւոյթ

տեսարանն ամենէն ճարտար նաւավարին անգամ մեծ երկիւղ կը պատճառէ շատ անգամ։

Ծովուն մէջ 4 կղզիներ կան, յորոց մին ԱՌ ՏԷՐ կանուանի, որ անմարդաբնակ է և միւսներն են Ա. Աղթամար (Կաթուղիկոսանիստ). Բ. Լիմ (*) (Ս. Գէորգ) և Գ. Կտուց (Ս. Կարապետ), որք Եպիսկոպոսանիստ են։ Սոյն անապատներն ունին իւրեանց յատուկ ապատներ, բաւական թուով միաբանական ուխտ և նիւթական բարւոք վիճակ, որով կրնան լինել լուսաւորութեան մէկ մէկ կեդրոններ, եթէ ունին։

Ծովու Արեւելեան Հիւսիսակողման մասն, որ նման ըղտու պարանոցի, կերկարի, ունեցած է իւր վերայ երբեմն հսկայ կամուրջ մը կապուած, որոյ մի ծայրն Արճշու կողմն Քարաքէշէշ կոչուած գիւղին մերձ է եղած և միւսն անոր դիմաց «Ամկու բերդ» կոչուած գիւղին մօտ, որպէս կաւանդեն տարեւոր անձինք։ Նոյն աւերեալ և անյայտացեալ կամուրջի երկայնութիւնն Պօլսոյ կամուրջի 15 անգամէն չ'պէտք է պակաս լինի։ Ուղեւորաց ճանապարհն այժմ 2 օրուան չափ երկարած է, վասն զի փոխանակ ուղիղ գծով՝ այժմ խոտոր գծի ուղղութեամբ գնալոյ պարտաւորեալ են. այժմ երբ Քարաքէշիշէն դիմաց անցա-

(*) Սոյն անապատոց մէջ ծովու եղերքի հին գերեզմանոցը կայ մի գերեզման, որոյ պատանաքարի վերայ գրուած է «զՎարդան փիլիսոփայն յիշեցէք 'ի Քրիստոս. Թվական ՊՀԹ» (1430).

նելոյ պէտք մի լինի ,  հետեւեալ կերպով  հը-
նարք գտած են իրարու խմաց տալոյ համար :

Երեկոյ ժամ 12 ին կամ անկէ յետոյ գիշեր-
ուան մէջ ծովու եզերաց վերայ մէկ կողմէն կը-
րակ կը վառեն , որոյ բոցն հանդիպոյ կողմանէ
նաւավարք տեսնելով անմիջապէս նաւակնին ա-
ռած՝ Էրերին ըսուած գիւղի մօտէն 'ի ծով կը
մտնեն ճանապարհորդել . մի նաւակ և երկու
նաւավարներ յատկացեալ են սոյն երթեւեկու-
թեան : Մեր պարզ գիւղացւոց հեղինակած յի-
շեալ բնական կոչոյ հնարքն ցերեկ ատեն ան-
գործածելի է , վասն զի կրակին բոց արեգա-
կանն ճառագայթից ներքև անտեսանելի կը լի-
նի և այս արդէն բնական մի պարզ երեւոյթ է :

Վանայ ծովու բերքերն են տառեխ անուա-
նեալ փոքր ձկունք և բորակ (սալփէթր) , որոց
վերայ տակաւին առիթ կունենամ խօսելոյ թէ
ինչ եղանակաւ ձեռք կը բերուին ծովային այդ-
բերքերն : Ծովու Արեւելակողմն 10 վայրկեան
հեռու կը գտնուի հետեւեալ նշանաւոր գիւղա-
քաղաք :

## ԳԼ. ԼԹ.

### ԱՒՄՆՑ ( թերեւս ԱՒԱՆ )

Սոյն գիւղաքաղաք Վան - Տոսպ գաւառի
համայն գիւղօրէից մէջ առաջինն է և քաղաքէն
հազիւ 3/4 ժամ հեռու որ : Ունի տափարակ
դիրք , սիրուն տեսարան , բաւական թուով այ-

գի.ք և պտղատու ծառաստանք․ սակայն օդն և ջուրն չեն գովանի ։ Տեղւոյս բնական այս կեն-սատու տարերց անառողջապահիկ վիճակն ար-դիւնք է եղերաց վերայ գտնուող ճահճային տեղերուն, թէև բնակիչք քաջառողջ, աշխոյժ և վարժ լինին իւրեանց գիւղաքաղաքի կլիմա-յին, որ ամեն մարդոյ չ՚կրնար յարմարիլ։

Աւանց ունի 280–300 տուն Հայ բնակիչ, որք ունին Ս. Յովհաննէս անուն պայծառ եկեղեցի մը համեմատաբար խաւար վարժարանի մը քով, ուսանողաց թիւ ամառն և ձմեռն միջին հա-շուով 60–70 կը լինին, որոնք մեծագոյն մասամբ են կապտագոյն աչօք, կռուզ ու չէկ մազերով նման իւրեանց հարց ։ Այժմ 'ի չնորհս Ամեն. Սրբազան Հայրիկի յորդորանաց սկսած են իրենց բարոյական ողբալի վիճակն օր ըստ օրէ կանո-նաւորել։ Սոյն գիւղաքաղաքն Վարագայ վա-նուց թեմն է ։

Փոքրիկ բացատրութիւն մ'ընդունելով գիւ-ղաքաղաքիս բնակչաց առ հասարակ ունեցած ռուսական դէմքն ուղղակի տեղւոյ կլիմային և մանաւանդ ծովու հետ ունեցած յաճախակի յա-րաբերութեանց ներգործութեան վերագրելչատ բանաւոր է ։ Տեղւոյս բնակիչք խիստ ճարտար են և կ'զբաղին ընդհանրապէս նաւավարութեամբ, երկրագործութեամբ ու մասամբ մ'այգեգործու-թեամբ, ինչպէս նաև բորակ հանելոյ արհեստո-վըն, զոր 'ի գործ կը դնեն հեռևեալ եղանակաւ ։

Նախ ծովու մակերեւութէն աւելի ցած ածուներ կը փորեն 10–30 մեթր հեռաւորութեամբ կամ որչափ որ ուզեն . այդ ածուները նեղ ջրրանցքներով (փոքր առու) ծովու հետ հաղորդակցութեան մէջ կը դնեն եւ այս եղանակաւ ամեն օր ջուր կտով կը նետեն ածուէ յածու, մինչեւ վերջի ածուները, որոց մէջ պիտի լինի բորակն, որոյ բուն ածուին եւ իրեն նախորդի մէջ եղած սահմանին վերայ ալ մի եւ նոյնն հաստատած են, այսինքն եռոտանի փայտ մը, որմէ կախած են Ռէ-կ անուամբ փոս եւ քառակուսի կտո մը, որոյ մէկ կողմն բռնելոյ տեղ չինուած լինելով՝ դիւրութեամբ եւ շարունակ ջուր կը նետեն վերջի բորակնոցի ածուներուն մէջ։ Այդ թիակն չափ մի է, որ 20 օխա ջուր կառնու, սակայն ճօրի (սալընճաղ) նման չուանով կախուած լինելուն պատճառաւ, որպէս յիշեցի, մարդ մ'ամենայն դիւրութեամբ կարող է այդքանակութեամբ ջուր փոխադրել։ Իւրաքանչիւր օր 1500 կտո կը նետեն եւ չորս ամիս այսպէս շարունակ ամառ եղանակին սոյն ջրոյ փոխադրութեան գործողութիւնն կը կատարեն։ Բորակնոցի վերջի ածուներուն մէջ ջուրն միշտ լճի նըման կեցած է 'ի շոգիանալ, որ Արեւու տաքութեան առջեւ միշտ տեղի ունենալով աղի ջուրն կը թանձրանայ եւ այսպէս սկսած օրէն մինչեւ 120 օր . յետոյ վերջի ածուներու մէջ բիւրեղացեալ բորակն յատակը նստած կը լինի 3–5 մատ թան-

հրուԹեամբ (*)․ և ապա սղոցով քառակուսի քառակուսի (կէս մեԹր երեսով) կը կտրեն ու կը վաճառեն շատ աժան (օխան 5–6 փարայի)։ Այս եղանակաւ միլիոնաւոր օխաներ կը գոյանան և կը խրկուին 'ի Վան, 'ի Բաղէշ, 'ի Սղերդ և 'ի Պարսկաստան։

Բորակն կը գործածեն օճառ եփելոյ, աղտոտուԹիւնք մաքրելոյ (ճերմակեղէնի) և արդէն վառօդի մէկ տարերքն է։

Վանայ ծովն աւազանն է բազմաԹիւ առուներու, գետակներու և մի քանի գետերու, յորս նշանակելի են Առեստ (Պէնտիմահու) Սեւ կամ Մարմոռ, Խօշապայ կամ Անգղայ գետերն, յորոց վերջնոյն վերայ արդէն խօսուած է և առաջնոյ վերայ ես 'ի կարգին պիտի խօսիմ։

Ծովու ձկունքն տարին երկու ամսոյ չափ կը խաղան անհամեմատ քանակուԹեամբ յիշեալ գետերուն մէջ և զայնս կորսան հետեւեալ եղանակաւ։ Ձկունք կը խաղան 'ի գետս ապրիլ 15 էն մինչև յուլիսի 15 ի ատենները, այս ժամանակամիջոցը ծախու կառնուն կառավարուԹենէն և առնողներն գետոց վերայ յարմար տեղեր ձկ-ան ընտրելով Թումբ կը շինեն վանդակաւոր փայ-

(*) Վանայ կամ Բզնունեաց ծովն 300 էն մէկ բորակ կը պարունակէ և բորակ շինելոյ արհեստն Մեծն Ներսէս՝ Սահակ ՊարԹեւի հայրն սորվեցուցած է տեղւոյս բնակչաց, որք « Աստուած ողորմի Ներսէսի հոգւոյն » կըսեն աշխատուԹիւննին երբ կը վերջանայ։

տերէ, որոց մէջ շրջանակի ձեւով ծակեր կը թողուն, յորս կը հաստատեն կողովներ, բերաններն դարձուցած դէպ 'ի ծովն, այսինքն ջրոյ ընթացքի կողմն: Ջկունքն ծովէն ելնելով, գետոյ ընթացքին հակառակ, կը խաղան դէպ 'ի վեր և այսպէս երբ անցնին ուղեն, վանդակներէն կը բռնուին կողովներուն մէջ: Ջկունքն աւելի մեծ քանակութեամբ կը գան, երբ որոշեալ ժամանակին ամպ լինի և երբեմն ալ երկինք որոտայ, որոյ ձայնէն իրարանցում կը տիրէ այդ կենդանեաց մէջ, զորս աղած՝ կը տանին այն ամեն կողմերն, ուր կը խրկուէր բորակը:

Աւանուց նաւավարներն, առանց կողմնացոյցի, ճամբայ կելնեն և իւրեանց ծովային ամեն ուղեւորութիւնք և երթեւեկութիւնք բնական երեւոյթից վրայ նայելով կընեն, որ թերեւս զարմանալի մի բան թուի Եւրոպացւոց աչքին, որոնցմէ թերեւս աւելի քիչ սխալին, մանաւանդ օդային գուշակութեանց մէջ: Յիրաւի ծովու պզտիկութիւնն ալ 'ի նկատ առնուլ պէտք է, սակայն չմոռնամ ըսել որ սոքա ճամբորդութիւն կընեն ծովուն վրայ գիշերուան ամենախաւար առեններն իսկ:

Ծովս զՎան յարաբերութեան մէջ դրած է Բաղիշոյ և շրջակայ գիւղօրէից հետ, որպէս ըսուեցաւ վերև, կանոնաւոր նաւահանգիստ չունի: Հիւսիսական, այն է Արճշու և Արճաւազու (որոց վերայ տեղագրութեանցս վերջի Գ. մասին

մէջ տեղեկութիւնք տրուած են) կողմերէն կը
փոխադրուին անապատ ցորեաններ և Հարաւա-
յին կողմերէն ևս մեծ քանակութեամբ ածուխ
և փայտ, որք յառաջ կը գան այն տեղերու ան-
տառներէն, յորոց խուրաքանչիւրն տէր ունի։

Ներկայ Թուականէս 9–10 տարի յառաջ
խնդիր եղաւ այս ծովու վերայ շոգենաւ մը բա-
նեցնել, բայց եկան արտաքին պատճառներն, ո-
րովք սոյն օգտակար գաղափարն մեռաւ իւր
խանձարուրին մէջ։

* *
*

Վանայ ծովու մակընթացութեան (շատնա-
լով ցամաք կոխելն) նկատմամբ ականատեսնե-
րէն կը պատմուի թէ «Ոսկէ 50 տարի յառաջ Ա-
ւանուց այժմեան Ս. Յովհաննէս եկեղեցւոյն նա-
խորդ 60–70 մեթր հեռաւորութեամբ ամայա-
ցեալ վիճակաւ կը կենայր կանգուն ծովուն ե-
զերքը, կառուցեալ կոփածոյ պատուական քա-
րերէ պայծառ և զարմանալի տաճարով մը, ե-
կեղեցւոյ շրջապատի բնակութիւնքն երկիւղէն
փոխադրուած էին դէպ 'ի վեր՝ ծովէն աւելի
հեռու (այժմեան տեղին)․ պարպուած տեղերն
«այգեստան» կանուանէին, զի առաջի ժամա-
նակն երբ ձուկն փոքր եղած էր, այս տեղերն
լի էին այգիներով»։ Ուղեւորն մինչ ունկնդիր կը
լինէր այս խօսքերուն, ականատեսներէն ուրիշ
մը յարեց․ «Ես իմ հօրս հետ և մի քանի ըն-
կերներուս՝ գնացինք այդ գեղեցիկ, այլ ան-

մարդի Ս. Յովհաննէս եկեղեցին իւր փոշոտած վիճակէն մաքրել, որպէս զի յաջորդ օրն քահանայն պատարագ ընէր, ըստ որում տարին 3-4 անգամ պատարագ ընելու սովորութիւնն կը պահէին մեր տէրտէրներ այդ եկեղեցւոյն մէջ։

«Իմ ընկերներովս (յարեց) կենդանի աւանդարանն գիւղիս տուները պտոյտ ընելով 5-600 հատ հաւկիթներ հաւաքեցինք ծերունի քահանային հրամանաւ. էտա հաւկիթներն բերինք մեծ ամանի մը մէջ կոտրեցինք և անոնցմով սրբեցինք մեր շրջանոյ Ս. Օհաննէսի խաչկալներն, հին ոսկեզօծեալ և ներկուած Աստուածոր պատկերն ու տեղերն փայլեցուցինք. այս միջոցին մեր բարի քահանայն ներս մտնելով մեր աշխատութիւնն օրհնեց, յայս պահուն ես տղայական աշխուժիւս եկեղեցւոյ պահարաններէն միոյն մէջ ելայ սրտիս ուրախէն և նայիլ հոն թէ ինչպէս բան է կամ ինչ կայ։ Անոնց մէջ (պահարաններէն միոյն յատակը) իմ երկու աչքովս տեսայ կէս մեթր քառակուսի թղթի մեծութեամբ և երեք մատ թանձրութեամբ խօրօտիկ և լաւ կերպով կոկուած փայտեր շարուած, չեմ գիտեր ուր էին ինչ էին և անոնց վերայ շատ մը ձեռագիր նխշուն կէ-ուլէմ գիրքեր շարուած էին տաստէ տաստէ (խումբ խումբ), անոնցմէ կարմիր պատկերով մէկ հատ ձեռքս առի և մինչ վրան կը նայէի առանց հասկնալու, մեր տէր պապան վրաս բարկացաւ ըսելով թէ «գիրքերն իրենց

տեղեր դիր, դու վար իջիր» այս խօսքին վերայ դիրքն հոն ձգեցի վար իջայ. տարիէ մ՚ետքը գնացի Ստամպօլ, 25 տարիէն յետոյ վերադարձայ, տեսայ որ մեր աղօտ ծովն յիշեալ եկեղեցին կոխած և աւրած էր և յիմ մանկութեան «այգեստան» բռուած տեղերն ծովաստան եղած լմնցած էին, այլ ես չեմ գիտեր և ոչ իսկ, մէկն ինձ ասաց թէ ինչպէս եղան և ինչպէս գնացին այդ եկեղեցին և իւր դրեանքն»:

Բարի և զգայուն պատմիչն զայս ասաց և դարձեալ յարեց «մեր խէրեր (հայրեր կամ պապեր) մեզ կ՚աւանդէին թէ ծովառած Ս. Յովհաննէս եկեղեցին չինուած էր մեծն Ներսիսի ժամանակն, երբ այդ ազգասէր եկեղեցական հովիւն այցելութեան կուգայ այս կողմերը, մեր Աւանուց Հայերն կերթան անոր ոտքին և ձեռքին կիյնան, կաղաչեն և կը պաղատեն, նա ալ չինել կուտայ այն եկեղեցին, զոր քեզ պատմեցի սրտիս ցաւէն, և Մեծն Ներսէս գիւղէս հեռացած պահուն կը խաչակնքէ ասելով թէ «բարութիւն 'ի ձէնջ մի պակասեսցի»:

*

*   *

Աղնիւ ՀՕՅ, տեղագրութեանցս ուշիմ վերծանող, քեզ և ինձ համար քիչ ցաւ չէ Ս. Յովհաննէսին կորուստն, սակայն երբ բնութեան անդիմադրելի օրինօք եղած է կրնամք 'ի միասին

մխիթարուիլ ։ Եթէ Ազգն բռած է մի թանկագին և ամենաողբալի կորուստ, այն եւս եկեղեցւոյ պահարանի ձեռագիրներն են, զորս նոյն ժամանակի մանուկն՝ այժմեան չափահաս անձն ՚ի ձեռին բռնած և ադէտ քահանային հրամանադարձեալ պահարանի մէջ ձգած է զայնս, որք ծովամոյն եղած են եկեղեցեան հանդերձ ։

Վերոյիշեալ պատմութեան վերայ այն պատկերազարդ ձեռագրեանց կորստեան վերաբերութեամբ արդարև քաշուածս Ա՛խ մի էր, սակայն զգացի յիս թէ այդ Ա՛խն վարելի կեանքէս մի քանի տարիներ կորզեց ։

* * *

Այս պահուս կը ներշնչուիմ շատ բան գըրելոյ, բայց լռութեամբ կանցնիմ, վասն զի ունիմ զօրաւոր պատճառներ, որք երկնային չեն և կանխահաս համարիլ կը տան ինձ կուրծքիս տակի և մտքիս մէջի ԲԱՆԵՐՈՒ արտայայտուիլն կամ արտատպուիլն, զոր մոռնալոյ երբէք չունիմ զուշ, աներկմիտ հաւատալով թէ յայս անհաւատ աշխարհումս վաղ կամ անարգան ԲԱՆՆ կը մարմնանայ և ես կը տանիմ կենաց յաղթանակն, ոյր վերայ կարգ մ'ուշակորոյս ողորմելիք կամ ծռամիտ խղճալիք կը նային իբրև պարտութեան վերայ. կը կարեկցիմ դոցա վերայ հոգւովս և միանգամայն կը փութամ սրբել իւրեանց աչքերու բիժն ու միժն, յայնժամ պիտի նշմարեն ՚ի հեռուստ, զոր ինչ Տեղագիր–Ուղե-

ւորս այժմ քաջ կը տեսնէ 'ի մօտուստ ։

Իմ սոյն տողերն , ստուգիւ գիտեմ որ բազմաց պիտի թուին մեկնութեան կարօտ , սակայն ես ներկայիս մէջ ԳՐԻՉ միայն ըլլալ կուզեմ և ոչ ՄԵԿՆԻՉ , որ լինելոյ չիք ամառն , զի օրն ձըմեռն է , տարին 1885 և ամիսն յունուար , որոց մէջ ազգային լրագիրներն զգայուն սիրտերն տրտմութեամբ կը լեցնեն՝ հրատարակելով նոր սահած տարւոյն հաշըր-էկչէրան , որ կենդանի պատկեր մի է ու երբ և լինի նկատողութեան առնելի դաւառացւոց իմաստուն մասէն , որ հանդիսատես կը լինի այժմ և կը լռէ պահ մը յանուն ազգային խաղաղութեան և միութեան ։

*

* *

Աւանուց մէջ 'ի հնուց անտի , մասունքի նըման կը պահուին երեք հատ ձեռագիր Աւետարանք , որք են Ա. Մէշէլ յօրղուլ , Բ. Խօսըրած և Գ. Ոսրբաթ անուններով ։ Ասկէ 45–50 տարի յառաջ Սամաթիոյ քարոզիչ Յարութիւն Եպիսկոպոս Սարայլեան երբ 'ի Վան կը գայ Առաջնորդութեան պաշտօնով , յիշեալ Աւետարաններն բերել տալով ժամանակ մ'իւր քով կը պահէ և յետոյ առաջի երկուքն կը վերադարձնէ հրամայելով որ « հասարակ Աւետարանի նման սեղանին վրայ դնեն և պէտք եղած ատեն գործածեն զայնս » , որք ցարդ կը կենան , իսկ երրորդն՝ այն է Ուչէար Աւետարան « այրած է » ըսելով այլևս ետ չ'դարձներ ։

Բաւ է այժմ այսչափ խօսիլ այդ աւերծեալ ծովուն վերայ , որոյ Հարաւային ալիքներն շատ անգամ մխիթարական են , ուստի անցնիմք Աւանուց բնակութիւններէն և գնամք յիւր անմիջական հիւսիսակողմն երկայն ու բարձր պարըսպի մը ներքև յեզր ընդարձակ արտի մը , զոր Վայ Վայ Բաղչասը կ՚անուանեն , որ արտասուաց անթիւ կաթիլներ ընդունած է և կ՚ընդունի ։

Աստ կը հաւաքուին Վանցիք , երբ ՚ի Պօլիս պանդխտութեան մարդ խրկեն , աստ կընեն բաժանման հայկերոյթն , աստ կը պարպեն բարեմաղթութեան գաւաթներն , և աստ յանուն Աստուծոյ կուխտեն զիրեար չմոռանալ ։ Ի վերջոյ կարաւանապետն իմաց կը տայ մեկնումն ու կը հնչէ վերջին հրաժեշտի տխուր ժամն և ահա յոտընկայս կ՚սկսին ցաւագին , այլ կաթոգին համբոյրք և գրկախառնութիւնք փոխադարձք , ընդորս նաև Վայն և Վայն ու վերջապէս կը տեւնուին , ողբումն , լալումն և աշարումն յոյժ . Հաւաքել զիւր որդիներ կուլայ և չուզեր մխիթարուիլ , վասն զի այլևս չկան ։ Այս պահուս աւելի աւելին գրել չեմ կարող , ըստ որում իմ աչկունքըն լեցուած են և իմ սիրտ զգացմանց ծանրութենէն փլած է , երբ կը յիշեմ որ մի օր ես ալ աստ յիմ բարեկամաց շրջապատեալ , հակառակ անսովորութեանս , մի վերջնական գաւաթ պարպեցի , զոր աղի գտնելով՝ անմիջապէս զգացի թէ ՄՕՐ ՄԸ արտասուօք խառնեալ էր ։

Ահա այսպէս ամենացաւալի տեսարան մը կը ներկայանայ մարդկային սրտերուն, որք կը բաժնուին իրարմէ։ Այսուհետեւ ճանապարհորդըն կ'ուղեւորի յԱրեւմուտս վիզ ծռած արտասուք սրբելով և երբեմն երբեմն վերջնական ակնարկներ նետելով իւր ետեւէն։

Այժմ քեզ տեսեմ ազնիւ և ուշիմ ընթերցող, Երկնքի ու Երկրի մէջէն ո՞ւր կը դիմէ այդ ողորմելի Հայ մարդն ստիպեալ իւր անողոք բաղդէն, — դէպ 'ի Սեւ-Ծով, զոր յիշեցի սիրտս կոտրած, որով և կարմրած։

Վերայիշեալ արան սոյն տխուր երեւոյթէն առած է իւր անունը, զոր ընդարձակել չեմ ուզեր, վասն զի արդէն արգաւանդ չէ ու չ'տար որ և է սերման ծնունդ, և այս իսկ է արդարութիւն, ըստ որում ի՞նչպէս կարելի է բարիք մ'արտադրել, երբ այսչափ աղի արտասուք ծըծած է և կը ծծէ ընդ միշտ։

*
* *

Վան-Տոսպ գաւառի Արեւմտեան կողման վերայ մեր ըսելիքն աւարտած՝ դառնամք այժըմ մեր ընտրած կեդրոնի (Վանայ) Հարաւակողմն ու շարունակեմք մեր ՈՃՆ։

ՎԱՆԱՅ ՀԱՐԱՒԱԿՈՂՄՆ

Մեկնիմք Վանայ «Այգեստան» մասի Հարաւակողմն 'ի կենդանանց (կենդանեաց) դուռը։ Տեղագրեմք նախ ճանապարհի վիճակն։ Մեր չուման կէտէն 20 վայրկեան ուղինիս շարունակե-

լով կը հանդիպիմք ընտիր քարահանքի մը, որ-մէ քաղաքացիք քարեր բերել տալով սալայա-տակ հնձաններ՝ կը շինեն խաղող քամելոյ հա-մար, նոյնպէս այլ շինութեանց գործածելի։ Այս տեղէն մեր ընթացքը յառաջ վարելով քիչ մ'ետքը մեր դիմաց կելնէ հանքային ջրոյ աղ-բերակ մը, որոյ համն հոտած հաւկթի կը նմա-նի և գետնէն դուրս կը տայ։ Այս ջուրն գիւղա-ցիք «կռոտի (բորոտի) աղբիւր» կ'անուանեն, վասն զի բորոտութիւն և եռքոր ունեցողներն այսու լողանալով շատ անգամ կատարեալ ա-ռողջութիւն գտած են։ Այսպէս ահա կէս ժա-մէն կը հասնիմք յիշեալ գիւղը կտրելով նուազ բուսաւոր և նմանօրինակ արգասաւոր դաշտօ-րայք և արտօրայք։

## ԳԼ. Խ.

### ԿԵՆԴԱՆԱՆՑ (ԿԵՆԴԱՆԵԱՑ)

Սոյն գիւղն շինուած է ընդարձակ բլուրի մը կողին վերայ. ունի 22 տուն Հայ և 2 տուն Քուրդ։ Հայք ունին յանուն Ս. Աստուածածնայ կառուցեալ մի բաւական կոկիկ եկեղեցի, որոյ տաճարն կը թուի լինիլ Առաքելաշէն, որոյ թը-ւականն «Ներքին երեսի նորոգութեան տակն ծածկեալ է»։ Տաճարի երկու կողմերը մէկ մէկ խորաններ կայ, յորոց աջակողմեանն շինուած է 'ի յիշատակ Թադէոս Սրբազան Առաքելոյն. իսկ ձախակողմեանն 'ի յիշատակ Մուշեղայ՝ Հայոց

ընտիր, կրօնասէր և հայրենասէր վարդապետին ։

Աջակողմեան խորանի առջև կայ մի խաչաքար, որոյ խաչի մէջ տեղը բեւեռ մի կը տեսնուի դամուած ։ Աւանդութիւնն կըսէ թէ « Թադէոս և Բարթուղիմէոս Առաքեալքն երբ իւրեանց ձեռամբ խաչաքար օծէին, խաչի կեդրոնատեղին կը դամէին մի բեւեռ 'ի նշան առաքելոց և անոնց ժամանակակից լինելուն » ։ Սոյն քարի նըշանաւոր թուականն 1880 տարիներու ձեռամբ ջնջուած էր ։ Գալով տաճարի ձախակողմեան խաչաքարին տակը ննջող Մուշեղ հայրենասէր վարդապետին, սորա նկատմամբ 90 տարեկան մտաց կարողութեան տէր մի լուրջ ծերունի իւր պապերէն լսած լինելով ինձ պատմեց նստած իրմէ շատ աւելոր քարի մը շուքին ներքև « այս Մուշեղ վարդապետն Վարդանանց արեւապաշտ Պարսից դէմն մղած պատերազմէն ետ դարձած ժամանակ՝ սստ կը հանդիպի և ինքն հիւանդացած լինելով կը վախճանի մեր այս գիւղի մէջ, որոյ նոյն ատեննուան բարեպաշտ բնակիչք զայս քար օծել տալով յիւր վերայ կը դնեն 3 հատ ոսլան եզներ մատղելով և գիւղաժողով մ'ընելով » ։

Գիւղիս եկեղեցւոյ մէջ խնամօք կը պահպանուի քէօշախան անուանեալ մի ձեռագիր Աւետարան, որում շատ հեռաւոր տեղերէ ախտաւորք կը դիմեն հետերնին առած գառնուկ մը կամ ոչխար մը 'ի մատաղ ։ Ըստ նախնի սովորութեան՝ քահանայի իրաւունքն է մատաղի մի

ճուռն, 4 ոտքեր, լեարդն և կաշին ։

Կենդանանուց Հարաւակողմն 20 վայրկեան հեռու կան երկու բլրակներ, որք կը կոչուին « Ճխտակ ժամոուն », զոր մահմետականք եւ կ'անուանեն [illegible], որոց վերաբերմամբ կաւանդեն թէ « այդ եկեղեցեաց չէն եղած ժամանակն այս տեղերը այնչափ տուներ և ծառեր եղած են մեր խէրերուն, որ չեմ կրնար պատմել, Վան քաղաք երթացողներուն վերայ ծառերու շատութենէն Արեւն չէր կրնար զարնել » ։

Գիւղիս յԱրեւմտակողմն 2 քարընկէց հեռու կայ ընտիր և պատուական քարահանք՝ երկանաքարի համար յատուկ, զոր մեր անթուղթ և անգիր գիւղացիք կը պատրաստեն հետեւեալ եղանակաւ ։

Նախ հողին երեսը կը բանան տեսնել թէ քարն միակտո՞ւր է և երբ այնպէս է, իւրեանց ուղած մեծութեամբ շրջանակի ձեւով կը գծեն և կսկսին այդ գծերէն դրսի մասերն մուրճով ջրնջել մինչև որ հասնին որոշեալ թանձրութեան մը, յետոյ տակի շրջապատը դէպ 'ի ներս կը խորունկցնեն մինչ հորիզոնական դրիւք, ապա բընութենէն փրցնելի այդ քարի կեդրոնը քարի խորնկութեամբ ծակ' մի կը բանան և ասկէ ետքը երկաթեայ [illegible] կամ [illegible] (ցից) միջոցաւ, եթէ չը կարողանան քարը իւր հօր գրկէն անջատել, յայնժամ քարի կեդրոնի խորնկութեան մէջ կը լեցնեն որոշեալ քանակութեամբ վառօդ, ՈՐՈՎ կը հասնին իրենց ՆՊԱՏԱԿԻՆ ։

Վերոյիշեալ քարէն առնելոյ համար 1–2 օրուան հեռու տեղերէ կը դիմեն սատ: Միջին հաշուով քարն ունի 1½ մեթր տրամագիծ և կէս մեթր բարձրութիւն կամ թանձրութիւն: Շատ հետաքրքիր է մեր Հայ գիւղացւոց այս օրինակ քարանց փոխադրութեան կերպն, որով ահագին քարի ծանրութիւնը կը թեթեւցնեն իւրեանց փորձառական ճարտարութեամբն չինելով մի պարզ գլան, զոր կանցունեն քարի կեդրոնէն, ուր հաւասարակշռութեամբ կը հաստատեն. քարն արդէն շրջանականաձև իւր լայնութեան վերայ կեցած է. գլանի երկու ծայրերն երկու բաւական հաստ և 4–5 մեթր երկայն թեղի փայտերու բունին կողմը ծակած մէջեր կանցունեն. զայս ընելէն յետոյ այդ երկու փայտերն մի և նոյն ուղղութեամբ դէպ 'ի քարի առնելիք ճանապարհ երկարելէն ետքը՝ միջին ուղղութեան կը բերեն և մէկ կէտի վերայ կը կապեն: Ահա այս կերպով կը ձեւանայ ճիշտ երկկողմնաղոյդ եռանկիւն մը, որոյ խարիսխ այն հաստատեալ գլանն է, որ անցած է քարի կեդրոնէն և հաւասար հեռաւորութեամբ երկու կողմերէն դուրս ելած. եռանկեան կողմերն այն երկու փայտերն են, որոց բունի մերձ ծայրերու մէջ անցուած են խարսխի երկու ծայրերն, իսկ գագաթն այն կէտն է, որոյ վերայ կողմերն զիրեար կապած են մէկ կէտով. չուանն այժմ կապուած է գագաթնակէտին. չուանի ուղ-

ղութեան վերայ (տանող դէպ ի քարին գնալիք ձեղը) 6–10–12 զոյգ եզ կամ գոմէշ կը լծեն, որք քաշած ատենը քարն կըսկսի կանոնաւոր շրջանակի պէս կամ նման կառքի անիւի դառնալ և կլոր ու մլոր յառաջ գնալ. Եռանկեան երկու կողմերն հաստատուն են և խարիսխի երկու ծայրերն իւրեանց անցած տեղերուն մէջ կը դառնան որչափ որ քարն դառնայ։ Մեր Հայ գիւղացիք այսպիսի դիւրութեամբ սոյն օրինակ վիթխարի քարինք ուզած տեղեր փոխադրելոյ կարող կը լինին, բաւական է միայն որ ճանապարհներն, որչափ կարելի է, դաշտային լինին և անքարոտ ու անգետ։

Գիւղիս խեղճ բնակիչքն այդ քարահանքն ունին իւրեանց մխիթարանք, նոյնպէս և տեղւոյս բնութեան տեսարանն։

## ՄԵԿՆՈՒՄՆ

Կենդանանց գիւղէն մեկնելով դէպ 'ի Հարաւային Արեւելը և մէկ ժամու տեւողութեամբ բազմաթիւ անջրդի արտօրայք կտրելով կը հասնիմք հետեւեալ գիւղը։

ԲԵՐԴԱԿ (փոքր բերդ). – Այս գիւղն շինուած է երկայն ձորակի մը մէկ կողին վերայ, քիչ ծառաստան, նուազ ջրաստան, օդաւէտ և սիրուն տեսարանաւ։ Ունի մի քանի խաղողի այգիներ։ Բնակիչք 60 տուն Հայ, որ ունին Ս. Յովհաննէս անուամբ տաճարաւոր եկեղեցի մը, որ տաճարն 750 տարուան թուական կը կրէ։

կայ երկայարկ փոքրիկ ծաղկոց մը՝ բաւական յարմար շինուածքովն և դիրքովն իւր դեղջկական տեսակին մէջ, ուր կ'աշակերտեն 25–30 ուսանողներ, որք ունին զարմանալի կայտառութիւն և աշխուժութիւն, ձիրք, բարետիպ դէմք և կազմուածք: Սոքա յանձնուած են մի փութաջան և բաւական զարգացեալ ուսուցչի, որ տակաւին երիտասարդ դոլով ունէր նորանոր յառաջադիմական ձգտումներ, զորս կը սիրեմ տեսնել ամեն ուսուցչի քով:

Տեղւոյս դասատուն գիս հրաւիրեց գիւղապետին տունը, ուր 2–3 ժամ կենալէ յետոյ իրենց խօսեցայ ԼՈՒՍՈՅ և ՅՈՒՍՈՅ վերայ երկարօրէն յորոց վերջնոյն աւելի պէտք ունէին. իւրեանց յիրաւի չ'գլացայ Հայօրէն տալ ԿԵՆԱՑ օգտակար խրատներ, զորս միտքիս մէջ հաւաքած էի ԳԻՐԷՆ և միայն ԳԻՐԷՆ:

Տեղւոյս վերայ կարճիկ տանդաւթեան մը

«Մեր Բերդակ նախապէս 7 գիւղ եղած է և իրարու դրացի, սակայն էն ժամանակի Հայերն չ'գէտ լինելով չ'կրցան ապրիլ իրենց խէրանական ծուխէն մէջ և ասոր համար թողուցին իրենց տուն և տեղին, արտ և այգին, քակեցին իւրեանց ՇԷՆ ՕԾԱԽ և որ աւելի սրտի մըռմուռն է (կսկիծ) թող տուին անտէր ու անտիրական եկեղեցիներ և գերեզմանաց սուրբ խաչեր, որոց քով պէտք է մեռնիլ ու չ'զատուիլ. այսպէս անհա անխելքներն գնացին, կո-

րան և չ'գիտեմ յոր աշխարհ » ։ Սոյն աւանդու֊թեան վերայ մի Բերդակցւոյ հետ կրցայ ման գալ դաշտերու մէջ, ուր հին սահմաններ ցոյց կը տրուէին և տակաւին նշմարելի հետքերէ չէն զուրկ ։ Ցիշեալ աւանդութիւնը ինձ աւանդողն օժտեալ էր բնականէն ազնիւ յատկութեամբ, որմէ դոհ լինելուս համար իւրեան տուի, իբրև դուզնաքեայ նուէր, գրքոյկ մը, որ ծայրէ ի ծայր լի էր ԳՐԵՐՈՎ, և անուն կը կրէր « Հաւատալ և Ապրիլ » ։

* * *

Տեղւոյս Հայոց նիւթական վիճակն շատ ո֊ղորմելի է, հողերնին մեծագոյն մասամբ ան֊ջրդի և հետևաբար այս գիւղի բաղդն ալ Երկնից կամքէն կախեալ է ։ Տեղւոյս իգական սեռն աւելի ժիր և յանդուգն է արանցմէ, ու֊նին սէր ԱՇԽԱՏՈՒԹԵԱՆ վերայ ։ Ուսման և գի֊տութեան կարօտ են ամենեքեան. ահա գործ, այլ ո՞ւր է գործող ։

Բերդակէն ելնելով կէս ժամէն կը հանդիմք հետևեալ կարեւոր գիւղը ։

## ԳԼ. ԽԱ.

### ԾՎԱՏԱՆ ԵՒ ԻՒՐ ՀՆՈՒԹԻՒՆՔ

Սոյն գիւղն կը գտնուի Վանէն գրեթէ 2 ժամ հեռու 'ի Հարաւակողմն, շինուած տափա֊րակ դաշտի մը վերայ, ունի լաւ տեսարան, պտղատու և անպտղատու ծառաստան, օդն և ջուրը պատուական ։

Գիւղս կը բաժնուի երկու գլխաւոր մասերու. Ա. Հայ, և Բ. Քուրդ, որոնք իրարմէ 4 քարընկեց հեռու կայքին: Տեղւոյս Քուրդերն ևս, նման Հայոց, երկրագործութեամբ կը պարապին և շատ երջանիկ կեանք կը վարեն:

Հայք են 80 տուն, ունին նորաշէն և գեղեցիկ ճաշակաւ կառուցեալ մի նոր եկեղեցի, որոյ առընթեր Հիւսիսակողմն կայ 700 տարուան տաճար մը հաստատուն շինուածքով թէպէտև այժմ լինի անգործածելի: Երկու պարզ քահանայ՝ բաւական սիրող իմաստութեան և մի երկայարկ դպրոց լաւ տեսարանաւ, զոր գտայ դրօքն փակելօք, զի չունէին ուսուցիչ:

Այս տխուր առթիւ 40 էն աւելի ուսանող մանուկներ 'ի փողոցս օր 'ի բուն կը թափառին իւրեանց կարճամիտ ծնողաց աչքին առջև, խեղճ տղեկներ չունին գոնէ Սեփաստական լըճակ մը, ուր ինքզինքնին նետելով խաղդուէին, որով մտատանջութենէ ազատուէին, հոգ չէ թէ չ'նդունին հրեշտակի ձեռքէն պսակ մը գոնէ ապագայի դառնութեանց բաժակն խմելոյ դըժբաղդութեան չեն հանդիպիր: Ես պատմեմ հետևեալն յուզելոյ նպատակաւ ճշմարիտ ուսումնասէր սրտեր և հոգիներ:

*
* *

Ծվատանայ ընկուզենի ծառերէն միոյն հովանեացներքև մտահոգ նստած՝ երեսս 'ի Հիւսիս և միտքս յԱրևել կը նայէր, աչքիս հանդէպ

'ի հեռուստ տեսնուեցան երկու պատանիներ , որք գերեզմանատան մէջ անհոգ պառկած մեծ խաչաքարի մը քովկը գտնուէին . Հեռադիտակս ինձ ցոյց տուաւ , որ նոքա այդ քարին վերայ կամ կը գրէին և կամ կընթեռնուին զայն ինքնաբերաբար : Աստ մի քահանայ և 3 աշխարհական ունէի ինձ խօսակից , իմ թախանձանաց վերայ քահանայն կոչեց զոյգ տղեկներն , որք եկին կայտառ և բոկոտն մինչև 'ի ծունկ մերկ և կեցան մի կողմ լուռ և մունջ : Պատանիներն իւրեանց բնական ամօթխածութենէն գլուխնին խոնարհած կը նայէին յերկիր , դիտեցի զիրենք խիստ լրջօրէն , որպէս ՈՒՂԵՒՈՐՈՒԹԱԵՆՍ նըպատակներէն մին էր , տեսայ որ ձեռքերնին մրոտուած էին , առ այս հետաքրքրուեցայ հարցանելով թէ տղա՛յք, ձեռքերնիդ ինչո՞ւ այդպէս ածուխի մելանով սեւցած են , նախապէս չըփոթեցան , և կարմրեցան , նման արեան , առանց տակաւին պատասխան մը տալոյ , ինձ այնպէս թուեցաւ թէ բառս չ'հասկցան , քովս նստողներէն մին կրկին հարցուց մի և նոյն բան , վերջապէս այդ պարկեշտ և գեղջուկ տղայոց լռութեան կապն խզեցաւ և փութացին ինձ ասել թէ « մեզ հաչէ » կայ գրել կարդալու , մենք երկուքս էինք մէկ դասընկեր , երբ մեր վարժապետ գնաց գիւղէն , մեր խերերու (հայրերու) կռիւներէն մեր վարժատան դուռն գոցուեցաւ ; մենք էլ երկուքս խելք խելքի տուինք , ամեն

որ կերթանք գերեզմանոցի մէջ մեր պապերու գրուած խաչաքարեր կարդալով կը վարժուինք և մեր ՆԱՂԱՄԱՐԻ ՄԵԼԱՆ չորցած է ու թուղթ էլ չ'կայ որ գրենք, սոր համար կտորիկ մը ածուխ կը տանեմք հետերնիս, ՃԵՐՄԱԿ քարի տակ կը մըրեմք այդ «ե» [illegible] և վրան պուտ մը (կաթիլ) ջուր լեցնելով կէնի մեզ համար թանաք, յետոյ կառնումք խօրօտ փայտի մը կտոր և ինորով կը գրենք և մէկ կողմէն էլ խաչաքարերը կը կարդամք, որ չ'մոռնամք մեր գիտցած ԲԱՆԵՐ (սորված ուսմունք). պալէ (բայց) ինչ անեմք շատ տեղեր սխալ կը կարդանք, մէկ չ'կայ մեզ հետ որ տրուստ (ուղիղ) նշանց տայ (ցոյց տալ) որ գիտնանք։

Այս երկու գեղջուկ, այլ սրամիտ ուսանողաց Տեղագիր–Ուղեւորիս տուած սոյն բնական բացատրութիւնն իմ արդէն փլած սիրտը ազգային սուրբ զգացումներով օծեց և աչքերս ցասկոտ արտասուօք լեցուց, մանաւանդ երբ տեսայ թէ գիւղիս ուսումնակարօտ մանուկներն իւրեանց դպրոցական կամ ուսումնական փափաքը գերեզմանոցին մէջ մեռեալ պապերու տապանաքարանց տառերովն կը լնուն և կը մխիթարուին, այն ինչ մխիթարութիւն մը չեն գտներ իւրեանց կենդանի հայրերէն։

Բաւական շատ ուսումնասիրեցի տեղւոյս հանգամանքները և գտայ որ նիւթական աղքատութիւնն չէ զիրենք այս օրինակ դժբաղ-

դութեանց ենթարկողն , այլ տեղական կենաց ՀՄՈՒՏ գործիչներու սովէն է , որ կը տիրէ Հայաբնակի ամեն կողմը ։

Ծվատանայ բնակութեանց հիմնաքարերէն ոմանք բեւեռագրեր կրողեն , ոմանք անեղծ և ոմանք եղծեալ ։ Գիւղիս սահմանին մէջ կը տեսնուին հնութեանց բաւական այլ բեկորներ , յորոց նշանաւորներն են յԱրեւելահիւսիս բերդի մը հիմունք , երկու աւերեալ գիւղատեղիք , որոց վիթխարի խաչաքարինք աստ և անդ կան ցիր ու ցան 'ի ցաւ զգայուն ուղեւորաց , որոց աչքին պէտք է նշանակութիւն ունենան այդ քարինքն , ոչ թէ միայն կրօնական տեսակէտով , զի օծեալ են , այլ նա մանաւանդ Ազգ. տեսակէտով , որ դարձեալ նուիրական են , եթէ ոչ աւելի գոնէ առաջնոյն չափ ։

Գիւղէս 5–6 քառընկէց հեռու ձորակ մի կայ , զոր գիւղացիք « խաչերու ձոր » կանուանեն , որոյ վերայ որ և է տեղեկութիւն չ'գտայ ։ Դարձեալ մի և նոյն կողմն 3–4 քառընկէց հեռաւորութեամբ կան հին չէնքերու հետքեր , որոց նկատմամբ հետեւեալ աւանդութիւնն կը տեսնուի ժողովրդեան մէջ , այդ աւերակներու տեղն ժամանակաւ գիւղաքաղաք եղած է , ուր կային եղեր 7 եղբայրներ՝ Հարուստ և առատասեղան , որոնք իւրեանց [illegible] առիթներ ունենալով՝ տեղէս քակուելոյ (գաղթելոյ) դիտաւորութիւն ունեցած են . առ այս 'ի նոցանէ

կրտսերն կը ջանայ զիւր եղբայրներ ետ կեցնել այն անհեռատես միտքէն , անոնց կ'առաջարկէ մի փորձ , որ եթէ իւրեանց նպաստաւոր չը լինի, նորէն թող ճամբայ ելնեն . ուստի շինել կը տան մի լճակ , որոյ վերայ զիւրեանց բաղձն պիտի որոշեն ։ Այն լճակին վերայ կը ձգեն երկու նաւակներ թղթերէ շինուած , յորոց մին 'ի Հիւսիս և միւսն 'ի Հարաւ դէմ առ դէմ կը կեցնեն , նաւակներէն առաջնոյն վերայ կը կապեն մի մերկացեալ սուր , և երկրորդն առանց սրի ։ Եօթն եղբարքն իրենց մէջ խորհուրդ և միանգամայն ուխտ կընեն ըսելով թէ «նաւակներն լճակին վերայ թող տանք , եթէ զինաւորն եկաւ ու զարնուեցաւ անզէնին , մեզ կը մնայ թողուլ տուն և տեղիք ու գնալ 'ի տար աշխարհ . իսկ եթէ անզէնն գայ ու զարնուի զինաւորին , յայնժամ մեզ կը մնայ անխախտ կենալ և համբերել որ մեզ բարի և լաւ է ։ Կրտսեր եղբօր բուռն փափաքն էր , որ այն վերջինն լինի , որով իւր հայրենասէր նպատակին պիտի հասնէր . կը թողուն վերջապէս նաւակները , յորոց զինաւորն Հիւսիսային հովերէն մղուելով կը գայ և սաստկապէս կը զարնուի անզէնին ու կը ծռէ զայն . ահա այս երևութին առջև կրտսեր եղբայրն ևս կը համակերպի միւսներուն և 7 եղբարքն 'ի միասին անմիջապէս ինչքերնին առած՝ յիմարաբար կը գաղթեն 'ի Ռուսաստան , ուր ամեն տեսակ նե-

ղութեանց մէջ իյնալով կորսուեցան »։

Ծվստանայ գերեզմանատան մէջ կայ Ս. Յովհաննէս անուն մի տաղաւարիկ, որ գիւղիս «բաղմահայութեան տուն եկեղեցի եղած է», ուր այժմ շաբաթ երեկոյները պառաւ կանայք ջերմեռանդօրէն ճրագ կը վառեն ՃՐԱԳ ՄԸ տեսնելոյ համար սրբոյն ՏԻՐՈՋՄԷՆ, նոյնպէս խունկ կը ծխեն 'ի յիշատակ ննջեցելոց։ Գիւղիս հիւսիսակողմն կէս ժամ հեռաւոր «Փաշի աղբիւր» կոչուած ջուր մի կայ, որ քով սուր աչաց նըշմարելի են եկեղեցւոյ հիմնատեղին, որոյ հողէն պտղունց մը (ցուցամատի և բթամատի երկու ծայրերն 'ի միասին գալով պտղունց կ'անուանի) կը կերցնեն մայրերն իրենց այն մանուկներուն, որք հող ուտելոյ վարժութիւն ունին։ Տգէտ մայրեր, որ խեղճ և անմեղու մանուկնին հող ուտելոյ վնասակար սովորութենէն ազատելոյ բարեմտութեամբ ուղղակի զայնս կը վարժեցնեն յանդէտս և այս ևս գործնական օրինակաւ։ Սոյն տեղերէն երբեմն խաչաքարինք կերեւին հողի տակէն, երբ զհողն վարելով կը շրջեն։

Ծվստանցիք 35 հոգիէն աւելի մարդ ունին 'ի Պօլիս պանդխտող։

Տխուր տպաւորութեան մը տակ տեղէս մեկնելով՝ զիմ ուղին կըշարունակեմ դէպ 'ի Հարաւային Արեւմուտ և 20 վայրկեան արտօրէից մէջնաճամբէն յառաջ երթալով կը ժամանեմք հետեւեալ վանքը։

## ԳՂ. ԽԲ.

### ԿՌՈՒՆԿ ՎԱՆՈՒՑ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ

Սոյն վանքն կառուցեալ է մի բարձր և բաւական ընդարձակ բլրոյ վերայ, առանց դմբեթի «իւր նախորդն առաքելաշէն եղած է որ 300 տարուան մօտ աւերակ մնալէն ետքը Արտամետցի Դաւիթ Եպիսկոպոս Նուրօեան և Պաղտասար վարդապետ Զիրլիֆեան՝ երկու ջանասէր կղերներն իրարու հետ միացած կը վերանորոգեն զվանս ակէ 150–160 տարի առաջ (սոյն թըւականն արդէն անտեսանելի չէ)». ահա այսպէս կ'աւանդեն ծերունիք։

Վանքս ունի հաստատուն շինուածք, շըրջապատը մի քանի սենեակներ, օդն և ջուր պատուական, հիանալի տեսարանովն, որ կը նայի Հիւսիսէն 'ի Վան քաղաք և Արեւմուտքէն նորա ծովուն վերայ. աստ՝ Վան և իւր ծովն դիտողի մը զգալի և իմանալի հորիզոններ կը կազմեն և յիրաւի հողածին մարդն կ'զմայլի և կը յափըշտակուի տեղւոյս բնութեան այս գեղեցիկ տեսարանին վերայ, որոյ մէջ ապրող միտքեր հըրաշքներ կրնան գործել, սակայն ո՞ւր են միտքերն և ո՞ւր հրաշք, որոյ դարն չէ անցած, երբ մեր խօսքն բարոյական տեսակէտով է։ Վանքն ունի բաւական ընդարձակ հողեր (200 Վանայ չափի սերմամուտի տեղ) և 100 ոսկւոյ արժողութեամբ պտղաբեր այգի մը։

Այն մենաստանն կը գտնուի Աղթամարայ Աթոռի դերիշխանութեան տակ և 2-3 Արտամետցւոց իրաւասութեան ներքև , որոնք վանուց մէջ ընտանեօք մի գիւղացի դրած են , որ վանուց պարագայից վերայ կը հսկէ , կը վարէ և կը ցանէ , ինքն է վանահայր , ինքն է կառավար , մէկ խօսքով ինքն է ամեն բան , այլ ես աւելորդ իսկ է յիշել սաղմոսաց և ժամասացութեանց լռութիւն , հակառակ իւր նախնի ճոխ և բարգաւաճ վիճակին : Ներկայիս մէջ տարին երկու անգամ պատարագ կը լինի Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ տօներուն , ուր այլ և այլ գիւղերէն , ինչպէս նաև Վանէն բազմաթիւ ուխտաւորք կը դիմեն , կուտեն , կը խմեն և կուրախանան այս . . . Աստուածածնայ առջև զանի պաշտելոյ համար :

Վանքս այժմ ունի բաւական տուար , ոչխար , ել և մուտ , որոց հաշիւն և կշիռը յիշեալ աշխարհականն և զինք վանահայր կարգողներն միայն գիտեն , որ համարակալ և միանգամայն համարատու պէտք է եղած լինէին : Այժմ Աղթամարայ Սրբազան գահակալն սկսած է հոգտանիլ վանուցս մարած կանթեղ վառելոյ :

Այն մենաստանն լաւ գիշերօթիկ վարժարանի մը տեղ է և ամեն դիւրութիւն ունի 12-15 տղայ մեր գիւղացի որբերէն կրթելոյ , որ պակաս չեն դժբաղդաբար . սակայն ո՞ւր վարժարան , ո՞ւր կամք և ո՞ւր անշահասէր հմուտ գործիչ : Հետեւեալ աւանդութիւնը պատմելով

հեռանամ աստի, ըստ որում Արեւն 'ի մար մըտնելոյ մօտ է, Երկինք պղնձացած և ծոմս ծիրանի կապած կը ծիծաղի անխռով այդ պղնձէ կամարին տակ, որ չ'գիտեմ զգացմանց թէ աստեղց բնակարան է, որոյ չիք սահման :

Վանքէն անուան ծագումը

«Մի օր երբ քահանայն պատարագ կը մատուցանէ, Ս. Խորհրդեան գինին կը պակսի, կռունկ մի յանկարծ եկեղեցւոյ պատուհանէն ներս կը մտնէ և կիջնէ սեղանին վերայ քահանային առջև՝ յիւր բերան բռնած հասուն մի ողկոյզ խաղողի. պատարագիչ քահանայն մեծ երկիւղածութեամբ կառնու զայն (ողկոյզ) և վարագուրի ետեւը քամելով՝ Ս. Խորհուրդն կը կատարէ». այս առթիւ յիշեալ անունն առած է. զանց կընեմ նաև նմանօրինակ մի այլ աւանդութիւն :

## ԳԼ. ԽԳ.

### ԱՐՏԱՄԵՏ ՀԻՆ ՔԱՂԱՔ

Յ'ուշ ածելով զԱրտաշէս և զՍաթենիկ՝ դուստր Ալանաց, առաջնոյն փախուստն 'ի Պարսկաստան յերեւաց Երուանդայ և յիշելով ամարանոցիս ԴԻՐՔ անցնիմք շարունակել մեր ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՆ :

Արտամետ այժմեան գիւղաքաղաք կը գըտնուի Վանայ ուղղակի Հարաւակողմն և անկէ $2\frac{1}{2}$ ժամ հեռու, շինուած Բզնունեաց ծովու Ա-

րեւելեան Հարաւային անմիջական եզերքը եռանկիւնաձև ապառաժ դարափի մը վերայ։ Ունի 480 տուն բնակիչք․ յորոց 120 տուն Հայ են և մնացեալ 360 տուն մահմետական։ Գիւղաքաղաքիս բնական վիճակն ամենայն կողմանէ գովելի է (ծառաստանաց վերայ իւր կարգին կը խօսուի)։ Հայերն ունին Ս. Աստուածածին անուամբ պարզ եկեղեցի մը և երկու պարզադոյն քահանայ հին մտաց և հին հոգւոյ տէր, նոյնպէս երկյարկ ու գեղեցիկ տեսարան ունեցող դպրոց մը, ուր ձմեռ ատեն 60–80 ուսանողներ կ'աշակերտին, իսկ ամառը 25–30 հոգի հազիւ կը մնան, որք յանձնուած են Վարագայ վանուց ժառանգաւոր աշակերտներէն մի անձնանուէր երիտասարդի, որ կարող ուսուցչութեան հետ ունի նաև ազնիւ և բարի տրամադրութիւնք, զորս անշուշտ ընդունած պէտք է լինի յիշեալ վանուց մէջ իւր դաստիարակութեան օրերումը, այս առթիւ պարտ կը համարիմ գովել Արտամետցի Հայոց ճանաչողութիւնը։

Վանէն յՈստան գաւառի կողմեր տանող պողոտային գիւղաքաղաքիս երկու ազգաց բնակութիւնք որոշակի իրարմէ կը զատէ։ Հայոց բնակութիւնքն ամփոփ իրարու վրայ սեղմուած են յիշեալ եռանկիւն ապառաժին վերայ․ իսկ տաճկացն եզերքը կը գտնուին ընդարձակ այգեստանեայց մէջ սփռուած են։

Տարուան չորս եղանակին մէջ, մանաւանդ

ամառնային ժամանակը , մեծանուն Շամիրամայ պատուական ջուրն (*) հարիւրաւոր ճիւղերու բաժնուած՝ Թուրք բնակութեանց իւրաքանչիւրի թաղէն , դրան առջեւէն ու այգիներու մէջէն կարկաջասահ կընթանան և սաղարթագեղ ծառոց սքանչելի տեսարանին հետ միացած՝ մարդս կըզմայլեցնեն կազմելով մի դրախտ , հոգ չէ թէ լինի երկրային , որոյ շրջապատը մի մարդ 3 ժամէն հազիւ կրնայ պտտիլ ։ Սոյն այգեաց մէջ Հայերն ևս իւրեանց թուոյն համաձայն բաժին ունին , այսինքն դրախտ ունին . սակայն պտուղն կը վայելեն թէ ոչ այդ տարբեր խնդիր է ։

## ԱՐՏԱՄԵՏՈՒ ՀՆՈՒԹԻՒՆՔ

Որպէս վերև յիշեցի , Հայոց բնակութիւնք այդ եռանկիւն ապառաժին վերայ հաստատուած են ։

Առաջին անկիւնն «Բերդ» կը կոչուի , ուր վերայ յանուն Ս. ՍԱՐԳԻՍ զօրավարին կայ շինուած անզօր մի մատուռ փոքրիկ . երկրորդն « Տէր Յուսկան որդւոյ պառեկ » կ'անուանեն, որոյ վերայ կայ նոյնին անուամբ կառուցեալ դարձեալ փոքրիկ մատուռ մը, ուր տարին մի անգամ պատարագ կը մատուցուի և տեղւոյ անձկութեան պատճառաւ քահանայն և երկու սպասարկուք միայն ներս կը մտնեն , իսկ դպիրք ընդ որս և

(*) Սոյն գետոյ վերայ արդէն խօսուած է ՏԵՂԱԳՐՈՒԹԵԱՆՑ Ա. մասի 122 եւ 178-179 երեսներուն մէջ ։

աղօթող ժողովուրդ կը կենան արտաքոյ դրան ։

Այս մատրան չուրջը 2 քարընկէց հեռու տարածուած են գիւղաքաղաքիս հնոց և նորոց գերեզմանները , յորս կը գտնուին մի քանի վիթ-խարի խաչաքարինք 300–350 տարուան հնու-թեամբ , թէպէտև շատ են աւելի հին տապա-նաքարինք , սակայն ժամանակն անընթեռնլի ըրած է նոցա յիշատակագրեանքն հանդերձ թուականներովն ։

Երրորդ անկիւնն բարձրահայեաց կը նայի 'ի Հարաւային Արեւմուտս Բղնունեաց ծովու եր-բեմն ծիծաղուն և երբեմն կատաղի ալեաց վե-րայ , ինչպէս նաև նորա հրաշալի և ընդարձակ հորիզոնին ։ Ահա սոյն անկեան վերայ կառու-ցեալ է այժմեան եկեղեցին , որ ՀԺԱ. թուականն կը կրէ և է մութ , ցած ու նեղիկ պատուհան-ներով ։ Եկեղեցին տաճարաւոր է և անծանօթ թուականաւ. տաճարն շատ հին լինել կը թուի , որ ունի ճարտարարուեստ խաչկալ մը , որոյ տեսքն և վիճակը ցոյց կը տան թէ ժամանակակից է տա-ճարին ։ Եկեղեցւոյն կից և շինութեամբ 31 տա-րուան կայ մի այլ եկեղեցի աւելի պարզ և կի-սաբաց , ուր ամառ եղանակին մէջ ժամասացու-թիւնք կը լինին և որոյ հանդէպ կախուած է մի սիրուն զանգակ (զամբանայ) Տփխիսէն յատ-կապէս բերուած . սոյն ձայնատու գործիքն ճա-թած լինելով այժմ դրեթէ լուռ է . սակայն չեմ գիտեր , թէ իւր լռութիւնն մշտական է ,

թէ մի օր իւր լուսութեան կայն պիտի խղէ վը-նասուած տեղին նորոգուելով։

Աչնիւ ընթերցող, վերոյիշեալ եռանկեան մասունքներէն զատ քեզ պիտի թուեմ տակաւին գիւղաքաղաքիս և իւր այգեստանի մէջ գտնուած բազմաթիւ սրբավայրեր, յորոց իւրաքանչիւրն ունեցած է անշուշտ իւր ԱՆՑԵԱԼ։

Գիւղի մէջիններն են. Ա. Մ. Շմաւօն, Բ. Թօւխմանուկ, Գ. Մ. Զօրք (զօրաւոր) և Դ. Մ. Յակոբ տաղաւորէնկներ։

*

* *

Անցնիմք յԱրեւմտակողմն յԱյգեստան, ուր նախ կը տեսնեմք Ս. ՍՏԵՓԱՆՆՈՍ կիսաւեր եկեղեցին, որոյ քարաշէն պարսպաց Հիւսիսային և Արեւելեան մասերն տակաւին կանգուն կը կենան, որ Տեղագիր-Ուղեւորիս զարմանք շարժեցին իւրեանց ճարտար շինուածքովն։

Ըստ աւանդութեան «Եկեղեցւոյս չէն եղած ատեն իւր մէջ պահուած է եղեր Կիլիկիոյ Տարսոն քաղաքի Լեւոն թագաւորի քեռորդի Վասիլ սպարապետի ժամանակը ՉԾՀԴ (674) Հայ թուականին գրուած կէտա կէտա անուամբ Աւետարան մը, որ երբեմն հրաշք գործած է»։ Այժմ սոյն ձեռագիր Աւետարանն Կուռնկ վանուց մէջ տարին կամ երկու տարին մի անգամ հանդիսապէս դուրս կը հանեն, ինչ ատեն ուխտաւորք բազմաթիւ եղած լինին»։ Ականատեսք կը պատմեն թէ բաւական կտակագրութիւնք

կը պարունակէ իւր կողերուն վերայ այդ Աւետարանն , զոր չ'տեսնելոյ դժբաղդութիւն ունեցայ Վանուց մէջ վանահայր մը կամ կրօնաւոր մը չ'գտնուելուն համար ։ Աւետարանիս վերայ այսչափ բան համարելով վերսկսիմք թուումն կամ նշանակումն մեր պատկնական հնութեանց ։

Այգեստանեայց մէջ կան դարձեալ հետեւեալ գետնատարած եկեղեցիք , որք են Ա. ՊՈՒՏԱԽ ՊԷԿ . Բ. ԿԱՐՄԻՐ ԽԱՉ . Գ. ԿԱԹԱՃԱՂԱԽ, որոց պարսպաց մի մասն դեռ չեն անտեսանելի ։ Այս այգեաց եզերքը կայ մի այլ փաղաւորէկ , որ կանուանի « Ս. Թալալու » . Թալյնել տեղական իմաստով կը նշանակէ այսահարիլ . իսկ գիտական առմամբ ճղայլին տկարութիւն , որմէ երբ մարդս բռնուի երբեմն կիյնայ յերկիր ուշակորոյս ։ Այս տեսակ հիւանդութիւն ունեցողներն հոս կը դիմեն ամենայն ջերմեռանդութեամբ և իւրեանց ուխտ և խնդրուածք , ինչ որ ունին , ընելէն ետքը կը վառեն մոմ, կը ծխեն խունկ , ու քով դնելով մի քանի հատ հաւկիթներ կը հեռանան ։ Ասոնց մեկնելէն յետոյ ով որ առաջին անգամ տեղս հանդիպի թէ Հայ լինի այն և թէ այլ ազգ , նորա իրաւունքն է տանել յիւր տուն սրբոյն առջև դրուած նուէրներն ( թէ մոմ լինի թէ հաւկիթ ) այս է ահա իւրեանց ուխտադնացութեան կերպն , զոր ես համառօտակի նշանակեցի ։

Այլ եւս չ'պէտք է դեգերիլ այս վայրերուն

մէջ, ուր տխուր երեւոյթներն կրնան մեր սիրտ ճմլել, նման ողկոյզի, և մեր կուրծքը մենէ խըլ-լել. անցնիմք ուրեմն յուրիշ կողմեր տեսնել ու-րիշ բան և նոր տեսարան, թերեւս հոգեկան ա-ւելի քան թէ նիւթական, որովք աշխուժնիս վերանորոգել և կրկնադրոշմել հետեւեալ գըլ-խով:

## ԳԼ. ԽԳ.

### ԿԱՏԵՊԱՆՑ

Արտամետի այգեստանի ,յԱրեւմտակողմն 3/4 ժամ հեռաւորութեամբ կայ Կատեպանց կոչ-ուած գրեթէ ծովեզերեայ տեղի մը, ուր կը տեսնուի դարձեալ հին շէնքերու հին աւերակ-ներ և նշմարելի բեկորք նուիրականք. աստ փոքրիկ անտառակի մը նման ծառոց մէջ տա-ղաւարիկ մի կայ, ուր կը բնակի Ս. Յովհաննէս, որում երբեմն կը գան յուխտ:

Մեծահռչակ Շամիրամայ գետն ասկէ կան-ցանէ սիգաճեմ ընթացիւք այգիներու վրայէն, Հայոց բնակութեանց Արեւմտեան Հիւսիսային անմիջական ստորոտը պատելով կերթայ ի Վան քաղաք: Սոյն ջրոյ առուակի երեսէն 'ի յատակ նայողն խորունկութենէն կրնայ զարհուրիլ ու ետ քաշուիլ: Հսկայ գետոյս հսկայ առուներու աջ ու ձախ կողմերն հիանալի ամրութեամբ շար-ուած են քարերով և հաստատուած ամրապէս:

Կատեպանց կոչուած տեղւոյն մերձ Շամիրա-մայ առուի երկու եզերքը կան երկու մեծա-

մեծ և տաշուած քարեր, որոնց վերայ կը տես-նուին բեւեռագիր յիշատակագրեանք, որք գրուած են հաւանօրէն Շամիրամ թագուհւոյն օրովն և թերեւս նորա հրամանգովն։ Տեղէս մէկ քարընկէց հեռու կայ ահագին լեռնակար-կառ մի փորուած, զոր տեղացիք Խահձիւլէ հէր կանուանեն։ Այս քարի դուռն որովհետև քարի կողին վերայ բարձրէն բացուած է, բաւական դժուարութեամբ ներս կը մտնուի, նախ մուր-ճով յատկապէս փորուած սենեակ մը կը բացուի և հետ ղհետէ մի քանի սենեակներ իրարու մէջ փորուած։ Աստ քիչ մը վարօք կը տեսնուի վիթ-խարի քարամբ.ք շարուած տեղի մը, զոր կան-ուանեն ըլփափուն, որ ունի 2 կանգուն լայնու-թիւն, 2 1/2 բարձրութիւն և 15 կանգնոյ չափ երկայնութիւն, որոյ վրայէն կանցանէ Շամիրա-մայ գետն, զոր շատ անգամ կը կոչեն «Շամիրամ»։

Թէ նախորդ քարափոր տանց և թէ ըղտա-տան վերաբերմամբ աւանդութիւն մը չ՚կրցայ ձեռք բերել, որ միտքս կարենայ գոնէ փոքր ինչ գոհանալ և գոհացնել։

ԱՐՏԱՄԵՏԻ կամ Արտամատի հին բաբգա-ւաճ վիճակն և որմէ շինուած լինելը Թովմայ Արծրունին քաջ կը պատմէ, հետեւաբար աստ կրկնել աւելորդ է և մանաւանդ որ Թովմայ Արծրունիէն աւելի կենդանի, այլ անբառբառ վկայներն կը տեսնուին ամեն կողմն։ Այգես-տանեայց մէջ ընտիր և ոչ ընտիր բազմաթիւ քա-

ներու կոյտեր կան, որք Տաճկաց 360 բնակու-
թիւնք չինելէն յետոյ մէկ մարդաչափ բարձրու-
թեամբ ցանկեր կազմած են, իբրև պարիսպ հար-
իւրաւոր այգիներու, որոց մէջ փորուած ատեն
երբեմն կան հին կարասիք կը գտնուին թէպէտև լի-
նին փտտած, որով և անարժէք․ նոյնպէս երկա-
թի և պղնձի կտորուանք ։ Ո՛վ Երկիր, վրադ-
անցքերով և տակդ գանձերով լի ես ։

* *
*

Տեղւոյս մերայնոց մէջ հետևեալ աւան-
դութիւնն կը պատմուի « մեր ԱՐՏԱՄԵՏՈՒ թա-
գաւոր (առանց անուն մը տալոյ) երեք եղբայր
ունեցած է և իւրաքանչիւրն ունէր մէկ պալատ
շինուած յիշեալ եռանկեան անկիւններուն վե-
րայ, գաղտնի հեռագիրներ ունէին, և ի պա-
հանջել հարկին, այդ թելերու միջոցաւ իրա-
րու գաղտնի լուրեր կամ խորհուրդներ կը հա-
ղորդէին »․ իսկ ինձ գալով՝ կերեւի թէ այդ պա-
լատներն (պալատներու տեղիք) որ ծովահայեաց
բարձր դիրք մը և հիանալի հորիզոն մի ունին թա-
գաւորական արքունիք եղած լինին երբեմն, ըստ
որում ԱՐՏԱՄԵՏՈՒ ամենէն լաւ տեղին լինելով
հանդերձ համայն գիւղաքաղաքն տներովն և
ընդարձակ ծառաստաններովը իւր տեսութեան
տակն կեցնան ։

Գիւղաքաղաքս ունի գրեթէ մի ջրաղաց
բանեցնելոյ չափ անուշահամ և արտասուքի նը-
ման լաւ ջուր մը, որ քարի տակէ կը բղխի և

որմէ առ հասարակ թէ Հայք և թէ Մահմետականք կը գործածեն ու գիւղիս մերձ խմելոյ ջուրն այս է արդէն ։ Սոյն աղբիւրն տեղւոյս Արեւելակողման զարդն է, մանաւանդ Հայ բնակութեանց նկատմամբ, որոց առ երի կը դըտնուի ։ Աղբիւրն ճանապարհի ճիշտ այն կէտին վերայ է, ուր Հայոց և Տաճկաց թաղերն իրարմէ կը բաժնուին ։

Արտամետու Հայ ժողովուրդն երկրագործ և միանգամայն այգեգործ է. իսկ մահմետականաց գալով՝ նոքա քիչ թուով երկրագործ են, կապրին այգեաց պտուղներովն ։ Այգեաց մէջ 2–3 հատ հազիւ խաղողի են և մնացեալ 3–350 այգիներն, բացի խաղողէն, ամեն տեսակ պըտուղներ յառաջ կը բերեն, յորս նշանաւոր և առատ խնձորն է, որ պտղաբերած տարին նաւերն ծովով, Հայ և Քուրդ գիւղացւոց հարիւրաւոր կարաւաններ ցամաքով կը տանին ու կը տանին և չեն կարող վերջ տալ ։ Վանայ այգեստանի պտուղներէն զատ ունի նաև փաշէկի և Պհրամէկ կոչուած տարբեր տանձեր ։ Կեռաս և բալ (փիշնէ) առատ են ։

Տեղւոյս խնձորի նման շատ առատ է նոյնպէս ընկոյզ, որոյ մէջ նշանաւոր է ղուրան անուանեալն, որ կը լինի հաւկթի մեծութեամբ, անօսր կեղեւով, այնպէս որ երբ ծառէն վար իյնայ երկուքի կը տապկուի (կը բաժնուի) և զուտ ընկոյզն, ճենճի նման, դուրս կը գայ, զոր թելի

վերայ անցունելով կը չարեն, որ յետոյ շուրան անուն կը կրէ ։

Գիւղաքաղաքիս 120 տուն Հայերէն 80 հոգի պանդուխտ կը գտնուի 'ի Պօլիս ։ Աստ անչափահաս ամուսնութիւնք երբեմն տեղի կունենան և իրենց մէջ նշանաւոր առակախօսներ ժամանակ առ ժամանակ կը տեսնուին, թէև չունենան Գողթան գաւառի գինին ։ Տեղւոյս մերայնոց դժբաղդութիւններէն մին է գիւղին ճանապարհի վերայ գտնուիլն ։ Աստ չ'կայ քիչ նիւթ գրելիք, բայց ինչ ընեմ երբ գրիչս համութիւն չունի ։ Արտամետցիք վեհանձն ծիրքերէ զուրկ չեն ։ 1870 թուականին կազմած են իւրեանց մէջ միութիւն մը, զոր կ'անուանեն « Արշակունեան Ընկերութիւն », որոյ բուն նպատակն է դպրոցի ապագայն նիւթապէս ապահովել, դաստառւի վարձ հոգալ և դպրոցական պիտոյք մատակարարել. այժմ գոհ եմ ըսելոյ որ մեծապէս յաջողած են իրենց բարի նպատակի մէջ, ըստ որում ամեն ջանքերնին 'ի գործ դնելով 'ի Պօլիս գնած են մի խան, որ ամիս 5 ոսկի հաստատուն եկամուտ կը բերէ, մինչդեռ դպրոցի տարեկան ծախքն 25 ոսկիէն դեռ պակաս է և ընկերութիւնն տակաւին կանոնաւորապէս կը չարունակի ։ Արշակունեան ընկերութիւնն իւր գործունէութեամբ կարժէ օրինակելի լինիլ այն ընկերութեանց, որք միշտ գեղեցիկ խորհուրդներով կը յղանան, ծնանելով յաջ-

*խարհ կը գան , այնու ամենայնիւ տակաւին փո-քըր ժամանակ մը կեանք չ'վարած՝ կը մեռնին իւրեանց խանձարուրոյ մէջ , ուր մարդկային ԷԱԿՆ խորհուրդներով լեցուն :*

*ԱՐՏԱՄԵՏՈՒ վերջի մխիթարական կողմէն ընդունած ուրախ տպաւորութեամբ տեղէս մեկ-նիմք 'ի Ս. Խաչ , որոյ վերայ գրեմք յաջորդ գլխով :*

## ԳԼ. ԽԵ.

### ՍՈՒՐԲ ԽԱՉԻ ՎԱՆՔ

*ԱՐՏԱՄԵՏԷՆ յուղի ելնալով շարունակեմք այս անգամին Հիւսիսային Արեւելեան գծովս , բլրոց կողերուն վերայ ճանապարհորդելով կը հասնիմք յիշեալ վանքը , որ Վանայ Այգեստա-նի Հարաւակողմն է եւ անկէ 2½ ժամ հեռու կ'իյնայ :*

*Ս. Խաչի վանքն կը գտնուի մի լայնածաւալ եւ բարձր բլրոյ կողերուն հողի վերայ, կառուցեալ կոփածոյ քարերէ , շէնքն է շատ հին , բաւա-կան հսկայ տաճարաւոր եւ ճաշակաւոր : Ունի սքանչելի տեսարան , մանաւանդ Հիւսիսային կողմէն , որ ամբողջ Վան քաղաք յԱրեւելքէն յԱ-րեւմուտ կը տեսնէ իբրեւ 'ի բարձր դահէ բերդի: Վանքն շրջապատեալ է ահագին պարիսպներէ , օդն եւ ջուրն պատուական , բայց մեղք որ սոյն վերջի կենսական տարր շատ նուազ է . ծառաս-տան գրեթէ չունի :*

*Վանուց հնաշէն վիճակն կրնայ ուղեւորաց*

յիշեցնել Առաքելական և թերևս կռապաշտական դարերն իսկ , տեղ տեղ անորոշ աւեններու մէջ վերանորոգուած են ։ Բարոյական կամ դրական կեանքէ զուրկ է ։ Ունի 10–15 հատ ողորմելի սենեակներ , որք կը ծառայեն մի քանի ոչխարներու , տաւարներու և զայնս պահպանող մշակաց բնակութեան տեղւոյ ։ Հողերն ընդարձակ են թէպէտև մեծագոյն մասամբ անջրդի ։ Արևւակէզ մշակի քրտինքն պէտք եղածին պէս վարձատրելոյ համար հմուտ երկրագործի ՁԵՌՔ կը պակսի ։ Երբ վանքիս յատկապէս այցելութեան եկայ , վանահայր վարդապետին հետ ջերմաբար խօսեցայ խաւարէն աւելի ԼՈՅՍ սիրելուն վերայ . մեր հայր սուրբ յիրաւի շեշտելով կը խոստանայր թէ « 5–6 ամիսէն յետոյ նորէն մտադիր եմ երկու հատ որբ մանկտիներ ժողովել գիւղերէն և բերել աստ 'ի պայծառութիւն և 'ի բարեկարգութիւն վանուցս , որոյ վիճակն շատ աղքատ է ։

Մենաստանէս 5–10 վայրկեան տարակայ մի քարայր կայ , զոր կ'անուանեն «կուսանաց այր», որոյ նկատմամբ կ'աւանդեն թէ « երբ 40 կուսանք Արևմտեան աշխարհէն՝ Դիոկղետիանոսի վախէն 'ի Հայս փախան , եկան այս վանուց մէջ ահով և դողով կրօնաւորեցան ժամանակ մը և իւրեանց մասնաւոր աղօթարան կամ ճգնութեան տեղի ընտրած էին յիշեալ քարայրն ,

ուրկէ 'ի Պարսկաստան փախած միջոցին Հռիփսիմէի կուրծքէն կախեալ կենաց փայտի մասն, որպէս զի անվնաս մնայ, կը տանեն և կը դնեն Վարագայ լերան մի բարձր գագաթի վերայ՝ 'ի Գալիլիա, ուր խաչաձև կ'ամփոփուի հրաշիւք և ապա Թօդիկ ճգնաւորին կ'երեւնայ երկոտասան լուսեղէն սիւներով»։ Սոյն կէտի ստուգութիւնն պատմութեան կը թողում։

*

* *

Ս. Խաչ վանուց Հիւսիսակողման առջև մի տափարակ տեղի կայ, ուր տարին մի անգամ, Տեառն ընդ առաջի երեկոյ, Արեւն 'ի մար մըտնելէն անմիջապէս ետք չոր ցախեր (խռիւ) դէզ ըրած՝ կը փռնկցնեն, որով կը լինի մի ահագին բոց, զոր քաղաքացիք տեսնելով կ'սկսին, նախնի սովորութեան համաձայն, տանեաց վերայ կամ բակերու մէջ իրենց արդէն պատրաստած խռիւները փռնկցնելով վրայէն ցատկել կամ բոլորտիքը պարել, [illegible] թերևս կռապաշտական դարուն, զոր յանդէտս յիշեցնել կը տան մեզ։ Այժմ այս հետաքրքիր սովորութիւնն երթալով վերջանալոյ վերայ կը գտնուի։

*

* *

Ս. Խաչի մենաստանն վանեցւոց համար տարւոյ մէջ մի քանի անգամ ուխտատեղի է, (ինչպէս նաև գարնան եղանակի կիւրակէ օրերն) որում կը դիմեն խուռն բազմութեամբ երկու սեռերէ անխտիր. վանուցս մերձ ընտիր

քարերու հանքեր կան, յորոց քաղաքացիք կ'օգտին և ոչ մենաստանն, որ ցաւ է ըսել, նըման ԿԱՐՄՐՈՒՈՐԱՑ, ամայաստան լինելոյ դըժբաղդութեան կը հալի օր ըստ օրէ։

Ս. Խաչ Վանայ Առաջնորդարանի գերիշխանութեան տակը կը գտնուի և երկու գիւղ միայն թեմական ժողովուրդ ունի։

ՄԵԿՆՈՒՄՆ

Ս. Խաչի տխուր մենաստանէն մեր վերջի հրաժեշտ ուրախ վանահօր տալով մեկնիմք և վանուց Արեւելեան ուղղութեամբ յառաջ երթալով $^3/_4$ ժամէն մի քանի քարոտ ձորամէջերէ և բլուրներէ անցնելով կ'իջնեմք ընդարձակ դաշտավայր մը, որմէ կրկին 'ի վեր ելնելով կը ժամանեմք հետեւեալ գիւղը։

ԳԼ. ԽՋ.

ԿՈՒՌՈՒԿՊԱՇ ԵՒ ԻՒՐ ՀՆՈՒԹԻՒՆՔ

Այն գիւղն շինուած է ընդարձակ բլրադաշտի մը վերայ, սովորական գիւղերէ աւելի ընդարձակ նստուածքով. կը գտնուի Վանայ Այգեստանի յԱրեւելահարաւ և անկէ $1^1/_2$ ժամ հեռու։ Ունի 75 տուն Հայ բնակիչ, յորմէ մեծագոյն մասն նիւթականի միջակ կարողութեան տէր է, իսկ մնացեալն աղքատ և միանգամայն շատ պարտուց ներքև ընկճեալ է։ Ունին Ս. ՍՏԵՓԱՆՆՈՍ անուն մի եկեղեցի՝ շինուած անճաշակ և հնութենէն փշրտած, (որոյ կառուց-

ման թուական տեղ մը գրուած չ'տեսի) և մի քահանայ՝ մատակարար իրենց կրօնական պիտոյից ։ Գիւղիս Նախակրթարանն եկեղեցւոյս կից է, որ գիտես թէ, առանց անոր, չ'ապրիր, և որոյ վերայ իրաւամբ պէտք է ԿՌԹՆԻԼ, ըստ որում ԵԿԵՂԵՑԻՆ Դպրոցին ԿԵԱՆՔ կը տայ և Դպրոցն եկեղեցւոյն ԼՈՅՍ. ահա Յաւիտենականէն սահմանեալ առեւտրական օրէնք մը ։ Եւ միթէ աշխարհային գործերն ևս նոյն ԱՐԴԱՐ օրինաց վերայ չե՞ն կայանար, ուրիշ խնդիր է թէ մարդ կը յանդգնի այդ օրինաց ուղղութիւնն խանգարել ։ Գիւղիս Նախակրթարանն և իւր ազնիւ ուսուցիչն արտաքին խնամոց, եթէ ոչ նիւթապէս, գոնէ բարոյապէս պէտք ունին ։

Տեղւոյս ժողովուրդն առ հասարակ ուսումնասէր և ջերմեռանդ է, յար և նման քահանայն, նոր տարիքով և հին մտօք ։ Կզբաղին երկրագործութեամբ, ջրաղացպանութեամբ և այգեգործութեամբ, զի կան մի քանի այգիք ։

*

* *

Գիւղիս հնութեանց գալով՝ իւր մերձակայ Հիւսիսակողմն կը տեսնուի Ս. ՅՈՎՀԱՆՆԷՍ անուամբ գետնատարած եկեղեցւոյ մը հիմունք, որ տեղւոյս հին բազմահայութեան ժամանակ ունեցած է իւր փառաւորութիւն ։ Սոյն աւերեալ եկեղեցին ներկայիս մէջ ուխտատեղի դարձած է, ուր տարին մի անգամ Ս. Յովհաննու տօնին գիւղացիք խուռն բազմութեամբ կը դի-

մեն, ցատկելոյ, սրինք ածելոյ, Նաղարա (դա-ւուլ) զարնելոյ եւ օրն 'ի բուն պարելոյ . . . :

Կուռուպաշայ յԱրեւելակողմն փոքր ինչ հեռու կը տեսնուի էկմալ (եկ մ'ալ կամ ուրիշ ի-մաստով մէկ տուն) անուամբ մի աւերեալ Հայ գիւղ, ուր են եկեղեցւոյ հիմքերու նշաններ: Աստ կը տեսնուին ընտիր ջրոյ 3 հատ աղբերակներ, որք երբեմն ծարաւն անցուցած պէտք է լինին տեղւոյս նախնի Հայ բնակչաց եւ անոնց երկրա-գործող եզանց եւ կաթնատու ոչխարաց: Դար-ձեալ Հարաւակողմն մի քանի վայրկեան հեռու մի աղբիւր կայ, զոր տեղացիք կ'անուանեն Ա-ՒԱԶԱՆԻ ԽԱՉԻՆ (աւազան խաչի), որոյ վերա-բերմամբ կ'աւանդուի « լինիլ հին դարուց մէջ կռոց տեղի եւ յետոյ Քրիստոնէութեան յաղթա-նակաւն խաչ տնկուած ». այժմ ջերմ ունեցող-ներն սոյն աւազանի խաչի ջրովն կը լուացուին յառողջութիւն, զոր շատեր կը գտնեն:

Գիւղիս « Կուռուպաշ » անուան վերաբե-րութեամբ աստ կը նշանակեմ 'ի ծերոց եկած 2 աւանդութիւնք, որք են Ա. 'ի հնումն Մեհե-նաց կամ կռապաշտից տեղի եղած է, ասոր հա-մար ժամանակին կոչուած է « կռապաշտ, » որ աղաւաղեալն է այժմեան անունն: Մինչ տակա-ւին հետաքրքիր լինելոյ վերայ էի յանկարծ ներս մտաւ մի ծերունի գաւազան մը հաստ 'ի ձեռին եւ ինքն էր դողդոջուն. այդ խեղճ մար-դըն մի շատ յարգանօք բարեւ տուաւ Ուղեւո-

րէս և իւր պատկառելի ու խորին ծերութեամբ հանդերձ չկամէր առանց հրամանի նստիլ. սոյն տեսարանն անբնական չէր, որ ինձ համար լի-նէր սրտաճմլիկ և տխուր, վասն զի ինէ աւելի հասակաւոր թոռանց տէր եղող ակնածելի մի անձ էր՝ իմ կրօնէն, իմ Ազգէն և իմ արիւնէն, որ ինձ կը կենայր ճիշտ հանդէպ՝ դեղջուկ և աղքատ: Այս պահուս զգացումներս կըյորդէ-լին և զիս դտայ մի տարբեր կեանց մէջ, վերջա-պէս սթափելով վեր ելայ տեղէս, այդ ալեւորի կամ տարեւորի ձեռքէն բռնեցի, որ կաչի կըտ-րած՝ սիրտս յուղեց և քովս բերի, ուր նստաւ թէ չէ բերան բանալով ուղեց ինձ պատմել գիւղիս անուանդկատմամբ հետեւեալ Բ. աւանդութիւն և չարունակեց մեր ծերունին այսպէս «էյ ա-ղա, քու ծառէն (ծառայ) կամ 4 քսան տասն էլ աւելի տարեկան (90 տարու եմ ըսելոյ փո-խան). ունիմ Աստուծով քեզմէ ճոչ (մեծ, տա-րեւոր) թոռներ, մկա (հիմա) դու մեղաւորիս ականջ տուր, ես քեյ (քեզ) պատմեմ չատ ը-ղորդ (ճիշտ), որ իմ պապիկէն լսած եմ»: Յա-րեց «հին ժամանակ չեմ գիտեր Աճէմըստանի որ կռալ (կայսր) կուռի կիւգայ (կուգայ) մեր Օսմանցիին վերայ, երբ էսա տեղէն կանցնի մէկ գիչեր գիւղիս մէջ կը կենայ իւր ճաղամաթով (բազմութեամբ) ձիերու համար գարի կուզեն, երբ էլ չՙմնայ, կը խլնի, գեղիս Ռէսին չատ չար-չարանք կը տան, քիչ պակաս Ս. Գրիգորի չար-

շարանքէն ։ Ուէս կը պօռայ թէ « էլ չ՚մնաց , չոր գլուխս մնաց , եսոր վերէն Օսմանցին յաղթեց և անոր լեզուաւ մնաց « դուռուպաշ կամ կուռու-պաշ » ։

Գիւղէս մեկնելոյ պահուն բնակչաց խօսե-ցայ թէ շատ բնական է՝ որ մարդս սիրէ այն բան, որ իւրեան փրկարարն է կամ կրնայ լինիլ ։

* *
*

Վան-Տոսպ գաւառի Հարաւակողմն տեղա-գրած և աւարտած լինելով՝ այժմ կուռուպաշ կամ գուռուպաշ գիւղէն բռնելով Արեւմտեան Հիւսիսային գիծն իյնամք յուղի և 5 վայրկենի տեւողութեամբ ճանապարհնիս շարունակելով կը հասնիմք Հիւսիսէն 'ի Հարաւ երկարող կարճ և նեղ ձորակի մ՚ափունքը , յորմէ մեր ուղին քիչ մը հեռու կը գտնուի ։ Յիշեալ ձորակի մէջ 3–4 հատ փոքրիկ , այլ պատուական ջրոյ աղբերակ-ներ կան , զորս տեղացիք կանուանեն « Հաց ու պանրի աղբիւրք » , որք իւրեանց անունն առակ են ջրոց անուշահամութենէն կամ մարսեցուցիչ յատկութենէն ։

Մեր ՈՒՂԻՆ կամ ՈՃՆ շարունակելով կանգ-նիմք ընդարձակ բլրոց կողերու ստորոտէն և « կուռուպաշյայ գետ » կոչուած ջրէն , որ գար-նան եղանակին բաւական յորդ է և զայրացկոտ ։ յետոյ մի քանի արտօրայք կտրելով կը հաս-նիմք « Ճղլակ (երկճղի) դար » ըսուած բլրային տեղ մը , որմէ յառաջ գնալով մեզ կը պատա-

հին ձախէն « ըուպի (մէքմէզ) հողեր » անուանեալ անբեր դաշտերը և աջէն գեղեցիկ և արգասաւոր արտօրայք են, ինչպէս նաև հաճի ղէֆըրէ թահըրէղ կոչուած աղբիւրն, որ իւր անունն առած է հանողի անունէն և որ Վանայ ամենանշանաւոր Թուրքերէն մէկն է և իւր առաքինութեամբ հռչակաւոր : Այսպէս ահա յառաջ երթալով կը հանդիպիմք « տէր Սահակու » ջրաղացին, որ կուռուպաշէն $1^{1}/_{4}$ ժամ հեռու կը գտնուի, ասկէ ետք կը հասնիմք յԱյգեստանի « Արարք » թաղը 15 վայրկեան ճամբայ առնելով :

*

* *

Մեր Տեղագրութեանց սոյն Բ. Մասն կամ բողջանայ Վան-Տոսպ գաւառի Հիւսիսակողման Թիճար անուանեալ մասն լրացնելով, ուստի ուղեւորիմք յայդ կողմն, որ ընդարձակագոյն տեղին կը գրաւէ գաւառիս :

## ԳԼ. ԽԷ.

### ԱՅԳԵՍՏԱՆԻ ԽԱՉ-ՓՈՂՈՑԷՆ ՄԵԿՆՈՒՄՆ

Վանայ Այգեստանի կեդրոնական տեղի՝ Խաչ-փողոցէն մեկնելով ի Հիւսիսակողմն 1 ժամէն կը հասնիմք հետեւեալ գիւղը՝ անցանելով աղ-քէ կոչուած մեծ լեռնակի Արեւմտեան ստորոտէն և տեսնելով « Ակռփու Աստուածածին » անուն աննշան մատուռն, որ մանաւոր ուխտատեղի է Հայ կանանց և այլոց համար :

ՇԱՀՊԱՂԻ . — Սոյն գիւղն շինուած է բնա-

կանէն լաւ տեսարան ունեցող տեղւոյ մը վե-
րայ, որ մասամբ մը բլրային և մասամբ մը դաշ-
տային է. ունի գեղեցիկ օդ և առողջարար ջուր։
Բնակիչ 120–130 տուն Հայ. ունին 240 տարուան
եկեղեցի մը բաւական կանոնաւոր, կառուցեալ
յանուն Ս. Ստեփաննոսի, կայ 2 քահանայ և 1
նախակրթարան, ուր ձմեռ 60, իսկ ամառ 30
աշակերտներ կուսանին և են անորոշ ուղղու-
թեան մ'ենթարկեալ։

Տեղւոյս ժողովուրդն առ հասարակ կզբա-
ղի երկրագործութեամբ և այգեգործութեամբք.
այգիներու թիւն 60 էն աւելի է, որ լաւ խաղող
հասցնելով յառաջ կը բերեն ամենապատուական
գինի, որ համբաւ ունի 'ի Վան-Տոսպ, որպէս
Գօրտոյինն' 'ի Ֆրանսա։ Ունին երկու լճակներ,
յորս մանաւոր ջրեր ժողովելով կոռոգանեն
իւրեանց արտօրայս։

Ծահպաղին ունի իւր անցեալ կենաց հե-
տաքրքիր աւանդութիւնք, յորոց ինչ որ գտայ
աստ խնամօք կը նշանակեմ, որպէս առ 'ի ծերոց,
և որք գիւղիս անուան սկզբնապատճառն կը
չօշափեն։ Աւանդութիւնն կըսէ «ամէ 400-450
տարի յառաջ Պարսից Ծահերէն մին զօրանալով
կուգայ և կը յարձակի Վան քաղաքի վերայ.
բայց երբ յաղթուելով ետ կը քաշուի, կուգայ
գիւղիս մերձակայ բլուրներուն վերայ կապաս-
տանի և կըսպասէ իրեններէն օգնութիւնք, երբ
Պասկաստանէն օգնութիւնքն կը հասնին, ինքն

վերստին կը զօրանայ և ասա (ի Տաճպաղի) կը պատրաստէ արհեստական բերդ մը, որով բաւական յաջողութիւն կը գտնէ։ Այս առենը գիւղս բազմահայ կը լինի, որոնց Տաճն արտօնութիւն կուտայ և միանգամայն նիւթական ձեռընտուութիւն կընէ, որ փառաւոր եկեղեցի մը շինեն յորդորելով զՀայս, որ երբ հարկ լինի իւրեան օգնութիւն չ'զլանան, սակայն Հայք, որոց արեան հետ խառնեալ է հաւատարմութեան ոգին, առանց երկիւղ մը կրելու կը պատասխանեն թէ «Մենք Օսմանցիէն բնաւ ձեռք չենք քաշեր». ինչ գեղեցիկ պատասխան։

Պասից Տաճն բերդ շինելէն յետոյ կրկին կը յարձակի Վանայ վերայ և դարձեալ կը յաղթըւի. այս անգամին կապստանի տեղւոյս յիւր բերդ, 'ի մտի ունենալով Հայոցմէ վրէժ մի առնուլ իրեն չօգնելնուն համար։ Ասա այգի կը տնկէ և 7 տարի կսպասէ մինչև որ դորա պըտուղն՝ խաղողն կը վայելէ։

Տաճն իւր այս վերջի բաղձանաց հասնելէն ետքն, երբոր կը վերադառնայ 'ի Պարսկաստան, գիւղիս մէջ իւր ունեցած բերդին հետ Հայոց բընակութեանց մեծագոյն մասն քար ու քանդ ընել կը տայ և ապա 5–6 տարիէն ասա հաստատեալ Պարսիկներն իւրեանց ընտանիքներն առած՝ կը դաղթեն 'ի Պարսկաստան. իսկ Հայք կը մնան ծառայել Օսմանեան Պետութեան տակը։ Տաճի այգեստանկի պատճառաւ գիւղիս անունն մնաց

«Տաճ պաղը», որոյ հին տեղին այժմ ցոյց կը տրուի և ուր նոր այգիներ տնկուած են։

## ՄԵԿՆՈՒՄՆ

Տաճպաղիէն ելնելով յառաջ երթամք Արեւելեան Հիւսիսային ուղղութեամբ և 1 ժամէն կը հասնիմք հետեւալ գիւղը։

ԼԷՋՔ. (Արալէզ.) — Սոյն պատմական և աւանդական կեանք ունեցող գիւղն կը գտնուի Միակտուր լեռնակի մը ստորոտը, որ գագաթան վերայ շինուած է ԱՄԵՆԱՓՐԿԻՉ անուամբ մատուռ մը, որոյ շինութեան չիք թուական։ Գիւղս Հարաւային կողմանէ ունի պատուական տեսարան հանդերձ լաւ օդովս, այլ դժբաղդաբար նուազ ջրով։ Ունին բաւական թուով այգիներ, որոց գինիներն շուտով սպառելոյ համար գիւղացիք իրարու հետ կը մրցին։

Բնակութեանց թիւն է 150 տուն, որք ունին Աստուածածին անուամբ փոքր ինչ կոկիկ, այլ մութ եկեղեցի մ՚անթուական շինութեամբն։ Եկեղեցւոյն կից է ծաղկոցնին, ուր ձմեռատեն 60–70, իսկ ամառ եղանակին 20–25 աշակերտք կուսանին, որք կարեկցող սիրտերու այնպէս պէտք ունին, որպէս սովեալն հացի։ Ժողովուրդն վերջին աստիճան աղքատ է և 40 հոգիէ աւելի պանդուխտ ունի 'ի Պօլիս։ Մի գիշեր գիւղիս մէջ հիւր կեցայ և այս առթիւ ընդունած տխուր տպաւորութիւնս 15 օրուան ընդունարճութեամբ հազիւ կարող եղայ ջնջել։

Տեղւոյս Ամենափրկիչ մատրան ողորմելի կանթեղն շաբաթ մի անգամ կիրակմոտի երեկոյ ծերուկ ժամկոչն կը դայ ֆառառորաղէ· վառել և փառք տալ Աստուծոյ, որ գիւղիս միակ ԱՊԱԻՆՆ է. տարին մի անգամ ևս Աշխարհամատրան կիւրակէ, որ կը կոչուի «կարմիր» կիւրակէ, սատ պատարագ կը լինի և այն օրը ամեն կողմերէ ուխտաւորներ կը գան, մանաւանդ գիւղացի դասն, օրն ողջոյն ուրախութիւն ընելէն ետքը ջերմագին կը համբուրեն մատրան մամռոտ ու խնկոտ քարեր և կը վերադառնան վերստին լի թախծութեամբ:

Գիւղիս անուան վերաբերութեամբ կ'աւանդեն թէ « հին ժամանակ սոյն լերան վերայ (Ամենափրկչի տեղ) կռատուն եղած է և քրմապետք կը բերէին հիւանդներ և մեռեալներ ու կը դնէին կուռքերու առջև, որպէս զի լիզեն և ողջացնեն զանոնք: Շամիրամն՝ կին Թագաւոր, իւր չաստուածներ սոյն լեռնակի վերայ կարգաւ կը շարէր և հրաման կընէր, որ իւր շինած Վանայ բերդի վրայէն երկրպագութիւն ընեն այդ չաստուածներուն, որոց առջեւն դրուած է եղեր նաև Արայ Գեղեցկի մարմինն՝ լիզել տալով ողջացնելու նպատակաւ »:

Արալէզ կամ Լէզք գիւղի կեդրոնը կը բարձրանայ 5–6 գրկաչափ շրջապատ ունեցող միակտուր քար մը, որոյ գագաթան վերայ կան կանաչ բոյսեր, որ.ք, ըստ բանի տեղացւոց, ձը-

մեռ ատեն եւ մի և նոյն կանաչութիւն կը պահեն ։ Այս քարի նկատմամբ կ'աւանդեն թէ «մի օր տեսնելով՝ որ ամեն մարդ յարգանք տալու համար դետնէն կը բարձրանան մինչև Ամենափրկչի —Ն——ը (լերան այն գագաթնակէտը, ուր շինուած է մատուռն), անոր վերայ աղօթք և փառաբանութիւնք կընեն, ինքն (յիշեալ կանաչագլուխ քարն) զինքն անկէ աւելի ծանր գըտնելով, կը նախանձի անոր փառաց և կ'սկսի բարձրանալ և ըսել իրմէն բարձր լերան թէ «ահա ես օր ըստ օրէ պիտի բարձրանամ մինչև որ քեզ հաւասարիմ և քիչ մ'ալ անցնիմ», ասոր վերայ կը բարձրանայ ընդդէմ Ամենափրկչի (լերան) և երբ անոր կը հաւասարի ու կ'սկսէ գերազանցել, յայնժամ Ամենափրկիչ լեռն անմիջապէս կը բարձրանայ և ձեռքովը կը զարնէ իւր հակառակորդի գլխին, որ կը ցածրանայ և իւր առաջուան խոնարհութեան կ'իջնայ. ահա Ամենափրկչի ձեռաց տեղն է, որ այժմ ամառ և ձըմեռ միշտ կանաչ կը մնայ»։

Աստ եւս ցաւ 'ի սիրտ պարտաւորեալ եմ շեշտելով կրկնել թէ «գործ կայ գործող չկայ»։

## ԳՂ. ԽԸ.

### ԱՒԵՐ ԱՏՆԱԿԱՆՑ

Արալէզ գիւղէն մեկնելով մեր ՈՃՆ յառաջ վարեմք, կէս ժամէն կարող եմք հասնիլ, յԱւեր Ատնականց՝ Հայ գիւղը, ուր չիք

մարդ և անասուն , խաշն և արջառ ։

Սոյն աւերակն մի ընդարձակ գիւղատեղի է , որոյ կեդրոնը եկեղեցին կը բարձրանայ կիսակործան , որոյ երբեմն չէին դրան վերաբերեալ բաւական արհեստաւոր քանդակներով խաչաքարն երեսի վերայ պառկած էր ԵԿԵՂԵՑԻՈՅ դըրան առջև . . . ։ Աստ կտրիճ կարապետիս հետ ուժերնիս միացուցած , այլ անջատ զգացումներով փոյձ փորձեցինք սոյն քարն իւր կռնակին վերայ դարձնել դէմքն տեսնելոյ բաղձանօք , բայց չյաջողելով՝ լի թախծութեամբ պահ մը նստանք 'ի հանդիսա եկեղեցւոյ փլատակաց ըստուերի տակը սպասել՝ որ մի անցորդ հեռուանց անցանէ և աստ առ մեզ կոչեմք յօգնութիւն . դժբաղդաբար ճանապարհէն ոչ ոք անցաւ ու մեր համբերութիւն հատնելով կրկին վեր ելանք, նոր ուժով և նորոգեալ կորովով ձեռք զարկինք նոյն քարին , որ անմիջապէս տեղի տուաւ այս անգամին մեր աւելի նոր եռանդին քան թէ ուժին առջև , որով քարն դարձաւ կռնկին վերայ , մենք տեսանք զիւր դէմքն , որոյ ճաշակաւոր նկարներու միջավայրը կային բաւական հին գրեանք , սակայն ցաւ է ինձ աստանօր ասել թէ նոքա անընթեռնելի մնացին ԳՐԱՍԷՐ և ՀՆԱՍԷՐ Ուղեւորիս , վասն զի ժամանակի հընութենէն եղծեալ էին , վերջապէս այդ անկապ քարն սիրտս կապեց մէկ ժամէն աւելի իրեն հետ , որ զլացաւ ինձ մի լոյս ։

Եկեղեցւոյ Արեւելահարաւը կը գտնուի ասայացեալ գիւղիս ընդարձակ գերեզմանատուն, որոյ խաչաքարինք կամ սրբաքարինք սփռուած են դաշտի երես՝ ոտքի վերայ կանգուն կեցած, յորոց միոյն ընթեռնելի յիշատակիրն աստ կը նշանակեմ, 'ի կրկին յիշատակ իւր անյայտացեալ տիրոջ, « Տէր Յիսուս Քրիստոս յիշեա զղարիպջան խալիֆան թվին ՋԻ », որ ըսել է 414 տարուան ։

Գիւղիս յԱրեւելահիւսիս 2 քարընկեց հեռու բաւական երկայն լեռնագօտի մի կայ, որոյ ստորոտէն կը բղխի մի քանի անուշահամ աղբերակներ, որոնցմով թերեւս տեղւոյս բնակիչներն իւրեանց անասուններովն եւ ասուններով երբեմն ծարաւնին անցուցած են ։ Սոյն լերան կողին վերայ շինուած կը տեսնուի մկրտութեան աւազան մը օծեալ խաչքարիւ, որ 280 տարուան որոշ թուականն կը կրէ, անկէ զատ լերան կողերուն վերայ դարձեալ կը տեսնուի բազմաթիւ խաչեր, որք թէպէտեւ լինին շատ աննշան, բայց «իւրաքանչիւրն մի անյայտացեալ ընտանիքի կը վերաբերի ։

* * *

Աւեր Անականից տակաւին չմեկնած՝ վերոյիշեալ բարեհամ աղբերակներու քով նստած էի Հայ կարապետիս հետ, առջեւնիս դրուած էր հաց եւ պանիր. տեսայ մի գիւղացի իւր ընտանեօք, երկու կայտառ եւ պարարտ մանկիկ-

ներ մի նիհար եղան կռնկին վերայ կապած և այրն ու կինն Արևուս կիզիչ տաքութենէն թըխցած էին, իսկ եղն բնականէն արդէն կարմիր գոյն ունէր. եկան սառ ջրին եզերքը փոքր ինչ հանգչելոյ. եղան չնչաւոր բեռն (մանկիկներ) վար առաւ գեղջկուհին համեստ և պատկառոտ շարժմունքով մը։ Մեր գիւղացին ծանօթ եղաւ կարապետին. բնութեան զաւակն այդ գիւղացին յափշտակուած տեղւոյ գեղեցիկ տեսարանէն՝ ինքնաբերաբար այս խօսքերն արտասանեց. «աղա տահա աղէկ չէ՞ր, որ էսա մեծ գեղ Շէն միար չուր մկա (մինչև հիմա), որ դու փոխանակ հացի հետ պանիր ուտելու, ուտէիր անուշ անուշ ոչխարի սեր և կարագ»։

## ԳԼ. ԽԹ.

### ԹԵՄԱՐԱՅ ԵՐԵՔ ԳԼԽԱՒՈՐ ԳԾԵՐ

Աստ յարմար դատած եմ ընտրել երեք ուղղութիւններ, կարելի եղածին չափ որոշ ընելոյ համար մեր տեղագրելիք և նկարագրելիք տեղերը վերաբերութեամբ աշխարհագրական դըրից Ռէսմը կոչուած այս մասին, զոր ես իբրև հօրիզոնական ընդունած եմ, չնայելով թէ դորա Արևելակողմն և իւրեան հարևանները բաւական լեռներ կան՝ թէև լինին ոչնչանաւոր։ Մեր ընտրած երեք գծերն են Ա. Արևելեան գիծ. Բ. Միջնագիծ և Գ. Արևմտեան գիծ։ Սոյն երեք ուղղութեանց և անոնց մերձակայից վերայ

գտնուած գիւղօրէից ՆԿԱՐԱԳՐՈՒԹԻՒՆՆ և ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՆ ընելոյ համար մեզ չունիմք սկզբնակէտ բռնած եմք միշտ զՀարաւակողմն, յորմէ շարունակել դէպ 'ի Հիւսիս։ Ուղեւորիմք ուրեմն Թիմարայ մեր ընտրած գծի (Ա. Արեւելեան) Հարաւային ծայրէն, ուր են Զրուանդանց, Զորոյ-վանց (ձորոյ վանք Թերևս) կարգաւ Տարման գիւղ, Լամզկեր, Փառուխ և Պախէզիկ գիւղերն, որք երբեմն էին զուտ Հայաբնակ և բազմատուն. իսկ այժմ են խառնաբնակ (քրդաց հետ) և նուազատուն։ Սոյն չորս գիւղերէն վերջինն ունի համանուն երկրորդ մը, իրեն մօտակայ, ուր առաջինէն փոխադրուած են և այժմ կը բնակին 15 տուն Հայեր, որոց 'ի Քրիստոս ննջեցեալներն առաջնոյն գերեզմանատան մէջ կը թաղուին։

ՄԽԿՆԵՐ. — Պախէզիկէն $1^1/_2$ ժամ հեռու է, ունի 30 տուն Հայ, Ս. ՅԱՐՈՒԹՈՒՆ անուամբ եկեղեցի մը, առանց քահանայի և առանց դըպրոցի։ Գիւղիս մերձ է կարաւանի ճամբուն անուանեալ հռչակաւոր մարգագետին, խիստ ընդարձակ և խոտաւէտ։ Աստ Արեւմտակողմն հին աւերակ մի կայ, զոր «բերդ» կ'անուանեն, որոյ հիմնաքարանց վերայ կը տեսնուին չատ հին խաչեր փորուած աննշան արուեստիւ, չ'կրցայ գիտնալ թէ ինչ յիշատակութիւնք արձանագրողներ էին այդ դարաւոր չէնքի մնացած վերջի բեկորներն, ինչ

որ է, նոքա Ուղեւորիս անծանօթ՝ ես մեկնեցայ հետեւեալ գիւղը, ուր մէկ ժամէն կարելի էր հասնիլ, թէպէտեւ ես տեղւոյն մ'ուշացայ :

ՆԱՊԱԹ. — Կը բաղկանայ 20 տուն Հայերէ, որք ունին պարզ եկեղեցի մը եւ պարզագոյն քահանայ մը, իսկ դպրոց «Աստուած տայ» : Գիւղս շինուած է լեռնադաշտի մը վերայ բլրոց ստորոտը, ունի պատուական տեսարան : Տեղէս մեկնելով կ'անցանեմք սիրուն վայրերէ եւ 1 ժամէն կը հասնիմք հետեւեալ տեղին :

ԽԱՌԱՇԻԿ. — Բնակուած 20 տուն Ասորիներէ եւ 3-4 տուն Հայերէ : Գիւղս շատ զուարճալի է ընդարձակ արօտատեղիներովն :

## ԿԻՒՄՆԵՆՑ ԵՒ ԻՒՐ ՀՆՈՒԹԻՒՆՔ

Թիմարայ Արեւելեան գծին վերաբերող սոյն նշանաւոր գիւղն նախորդէն $1\frac{1}{2}$ ժամ հեռու՝ շինուած «Սեւ» կամ «Մարմեռ» կոչուած գետոյն ձախակողմն(*) տափարակ դաշտի վերայ: Տեղւոյս օդն եւ ջուրն լաւ են, բնութեան տեսարանն նմանապէս. իւր ընդարձակ նստուածքի համեմատութեամբ քիչ է ծառաստան եւ ընդհանրապէս անպտղատու :

Կիւմնենց ունի 110 տուն Հայ բնակիչ, յանուն Ս. Ստեփաննոսի կառուցեալ մի եկեղեցի

(*) Գետոյ մը կամ ջրոյ մ'աջ ու ձախ կողմ բսելով պէտք է հասկնալ մարդոյ աջ ու ձախ կողմերն, երբ մարդն ջրոյ վազած կողմն դարձուցած է իւր երեսը :

գիւղական պարզութեամբ և շատ հին է , սակայն չունի թուական ։ Աստ կայ Միացեալ Ընկերութեանց վերաբերեալ նախակրթարան մը , ուր ձմեռ 40 , իսկ ամառ 10–12 աշակերտներ կուսանին ։ Ժողովուրդն առ հասարակ երկրագործ է , որոց ձեռքը կը գտնուին ընդարձակ հողեր՝ արգաւանդ և ջրարբի մեծագոյն մասամբ , նիւթական վիճակնին, բաղդատմամբ այլ գիւղացւոց, բարւոք է ։ Գիւղս ԱՆՑԵԱԼԷ չէ զուրկ ։

Կիւսնենից Հայերն այժմ օրինակելի ջանիւք սկսած են որթատունկեր և պտղատու ծառեր տնկել, որով այլ ևս դրսէն բերուած անպիտան պտղոյ փոխան ՑՈՐԵԱՆի հատիկներ տալոյ չեն պարտաւորուիր, որպէս սովոր են այն ամեն գիւղերն , որք իրենց անմտութեամբ կամովին զըրկուած են բնութեան այդ օրինակ բարիքներէն ։ Տեղւոյս թէ մխիթարական և թէ անմխիթարական սրբավայրեր հետևեալներն են Ա. ՏԻՐԱՄԱՑՐ . Բ. ՊԱՐՈՆ Ս. ԳԷՈՐԳ . Գ. ՇԷՆ Ս. ԱՏՈՄ . Դ. ԱՐԾՈՒԱԲԵՐ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ . Ե. ԹՈՒԽ ՄԱՆՈՒԿ ։ Արծուաբերի նկատմամբ 'ի տարեւորաց կը պատմուի աւանդօրէն թէ « 'ի հնումն՝ իւր չէն ժամանակին՝ տարին մի անգամ վէրու ոչխար (կէյիկ) մ'ինքնին գալով կը պառկէր տաճարի դրան առջև երբ նոյն իսկ տակաւին մատուռ էր , բաղմութիւն մը հոն կը դիմէր , և կը տեսնէին , որ յիշեալ ոչխարն անմռունչ ինքզինքը մարդոց կը յանձնէր , յորոց մին (լուսարար

կամ ժամակոչ) զոչխարն կը մատղէր և կը բաժանէր չ'քաւորաց, այս պատճառաւ «արծուաբեր» կոչուած է, թէև իր բերածն չ'լինէր արծիւ»:

Վերոյիշեալ նուիրական վայրերէն այժմ ոմանք փոքրիկ տաղաւարիկի ցած վիճակի մը մնած են և ոմանց ևս տեղիք միայն նշմարելի են տեսանելի խաչաքարերովն: Շաբաթ երեկոները ճրագ կը վառեն նոյն տեղերէն ոմանց մէջ, որոնք շարուած են մոլոզներով (անկերպարան քար) ճրագի լոյս չ'մարելոյ համար և որոց մէջ կը ծխեն նաև խունկ, որոյ բուրման ԽՈՐՀՐԴԱԻՈՐ պահուն, ըստ Հայաստանեայց մեր ժողովրդեան հնաւանդ սովորութեան, բոլոր ննջեցելոց հոգիները կը յիշատակեն թէ նոքա լինին յայտնիցն և թէ լինին անյայտիցն: Ծըխող բարեպաշտուհին, եթէ 'ի մտի պահած է իր ննջեցելոց անուանքն կամ ազգականացն, արդէն յանուանէ կը յիշատակէ, իսկ եթէ ոչ, ընդհանուր առմամբ կը վերջացնէ «Աստուած հոգիք լուսաւորէ»ներ մրմնջելով և այնպէս կը վերադառնայ յիւր տնակն գիւղական:

Կիւմնենց գիւղէն 25 հոգի պանդուխտ կայ 'ի Պոլիս, ուր չարաչար կ'աշխատին և շատ անգամ ականատես եղած եմ, որ կուշտ փորով հաց մը չեն կրնար ուտել նոյն իսկ այն պահուն, յորում այլք իւրեանց հայրենական տան մէջ հաւով և հաւկթով, սերով ու կարագով պատ-

ռեւլէոէ կիրակին կը տօնեն, այսպէս Ծարայի որ-կորով պէտք չունին Շիրակայ ամբարներն յիշե-լոյ, զի Նորոմը գոհ կը լինին։

Գիւղիս յՕրեւելակողմն «աւեր վանք» ըս-ուած տեղի մի կայ, որոյ սուրբ նշխարներ չեն երեւիր գետնի երեսը. իսկ տակն լի են և եր-բեմն իսկ եկեղեցական անօթներ դուրս կը գան տակաւին գործածելի. ով գանձարան երկիր։

# ԳՂ. Ծ.

## ԱՏԻԿԻՒԶԷԼ ԵՒ ԻՒՐ ՀՐԶԱԿԱՒՈՐ ԱՒԵՏԱՐԱՆ

Գիւղս Նախորդէն 3/4 ժամ հեռու է շին-ուած ընդարձակ բլրոյ մը ստորոտը, Սեւ գետն գրեթէ իւր առջեւէն կընթանայ, որ կը գեղեց-կացնէ տեղւոյ բնութեան վիճակն։ Ունի 20 տուն բնիկ և 2 տուն անբնիկ բնակիչ, առաջինքն, որ Հայ են, ունին Աստուածածին անուամբ մի նո-րաշէն եկեղեցի՝ կառուցեալ 1862 թուականին, տարիքոտ քահանայ մը, իսկ դպրոց նոր պիտի ծնանի, որով այժմեան կանտ ու կլուզ ճժիրն դպրոցական փրկարար կեանք տեսնելոյ բաղդին կ'արժանանան։ Ժողովուրդն աղքատ և խաղալիք է ոգէյտոռբէան ձեռքը։ Գիւղիս մէջ կը պահուի մի ձեռագիր Աւետարան հուլնաւոր մականուա-նեալ, և ժամանակ առ ժամանակ հանդիսով դուրս կը հանեն, երբ ուխտաւորք լինին յանուն իւր եկած։ Ատիկիւզէլի Հիւսիսակողմն բլրոյ մը գլուխը մատուռ մի կայ, զոր տեղացիք «Ս.

Սարգիս» կ'անուանեն, որոյ մերձակայ և տարակայ շրջապատը առատօրէն քաղեր (կեավան) կը բուսնին ամեն տարի, սակայն բնակիչք բնաւ չեն քաղեր զայնս, վասն զի աւանդութիւնն կըսէ, «ով որ Ս. Սարգսի քաղեր վառէ, փուշ կը բուսնի նորա աչաց մէջ»: Գիւղս ունի արգաւանդ հողեր, որոյ համար ՀՈՂԱԳՈՐԾ կը պակսի:

ԿՈՃԵՐ. — Ունի 22–25 տուն Հայ, Աստուածածին եկեղեցի մը, իսկ քահանայ և դըպրոց ունին ոչ. կամ սրտի բացարութեամբ «Աստուած տայ»: Տեղւոյս ժողովրդեան կրօնական պիտոյքն նախորդ գիւղի քահանայն կը հոգայ այցելութեամբ:

## ՄԵԿՆՈՒՄՆ

Կոճերէն մեկնելով խնամք յուղի, հոգ չէ թէ ճանապարհն լինի փոքր ինչ կասկածոտ, բաւ է որ մենք ունենամք ինքնապաշտպանութեան ԲԱՑԱՐՁԱԿ իրաւունքն և 'ի գործ դնելոյ յարմարագոյն միջոցները, 3/4 ժամէն [illegible] կը հասնիմք հետեւեալ գիւղը:

ԱՂՃԱՎԷՐԱՆ (ախչա վէրան). — Շինուած է մի լեռնային տեղւոյ մէջ և բնութեամբ հարուստ: Ունի 15 տուն Արամական և 1 տուն Մարական բնակիչ: Արամականք տէր են Ս. Ստեփաննոս կոչուած ողորմելի եկեղեցւոյն, որ ունի մի քահանայ [illegible] ժողովրդեան. իսկ դպրոցի գալով՝ ոչ ունին և ոչ ունենալոյ յոյս մ'այցելած է իւրեանց սրտի բնակավայրը. միտքեր-

նին սորկացած և մեռած տգիտութեան տղմին մէջ ։ Երբեմն ԴՐԱՄ տուող և այժմ անկուտի գիւղէս 1½ ժամ հեռաւոր դէպ 'ի յԱրեւելա-հիւսիս կը գտնուի հետեւեալն ։

ԱՐՏԱԽԱՋ . — Մերձ է ՍԵԻ գետոյ աջակող-ման , 5–6 տնէ բաղկացեալ Հայ բնակիչ ունի , իսկ եկեղեցի , քահանայ , ժամ , պատարագ , դպրոց , վարժապետ , տիրացու և վերջապէս ԼՈՅՍ և ՑՈՅՍ «Աստուած տայ» ։ Նիւթական վի-ճակնին բաւական լաւ է ։

ԿՈՄՍ . — Նախորդէն դրեթէ 2 ժամ հե-ռու՝ ունի սիրուն տեսարան , այլ քիչ ծառաս-տան · բնակիչք 35 տուն Հայ , որք ունին եկեղեցի և դպրոց , որոյ ուսուցիչն է քահանայն. տեղւոյս բնակիչքն բաւական հետաքրքիր կը լինէին աշ-խարհիս հին և նոր [illegible] կամ [illegible] վերայ , գովելի է իւրեանց ուսումնասիրութիւնն ։

ՓԻՐ–ԿԱՐԻՊ . — Ունի 27 տուն Հայ բնա-կիչ , հին եկեղեցի մը և նմանօրինակ մտօք քա-հանայ մը և նոր դպրոց մը , ուր ոչ դասատու կայ և ոչ դասառու ։

ՍՈՍՐԱՏ . — Նախորդէն մեծ տարբերու-թիւն մը չունի ։ Այս կողմերը կը գտնուի հե-տեւեալ գիւղակներ , Բագնիս՝ բնակուած 15 տուն չէրքէզներէ ։ Զօրավար՝ 'ի հնումն բնակ-ուած Հայերէ , իսկ այժմ մի քանի տուն տա-ճիկներէ ։ Մէյտանճիւղ , որ ունի 11 տուն քուրդ բնակիչ՝ տարասեռ եկովիք , սիրով կը պահէ

տակաւին 2 տուն բնիկ Հայ տուներ, որք կը հակակրուած առաջիններէն: Վերոյիշեալ երեք գիւղերն՝ ինչպէս նաև հետեւեալ մի քանիքն կրնան գրեթէ Տօսպ գաւառի Թիմարայ Արեւելեան Հիւսիսային մասը կազմել և հետզհետէ ներքին Խօշապայ հետ ունեցած սահմանն:

ՀԻՒՐԵԿ (հիւր էկ).— Բնակուած 5-6 տուն հարուստ Քուրդերէ: Գիւղիս անցելոյն վերայ ոչ ասել կուզեմ և ոչ զրուցել...:

ՍԱԹԻՊԷԿ.— Ասորի 8-10 տուն և լաւ նիւթապէս, որք ունին ինքնապաշտպանութեան ոգի:

ԳԶԸԼ-ՊՈՒԼԱՔ (կարմիր աղբիւր).— Բնակուած 10 տուն Մարական Թոռներէ, որք այլոց հետ ունեցած կենցաղավարութեան մէջ չունին խոհեմութիւն: Իրենք թէև լինին անաշխատ, այլ կ՚ապրին երջանիկ և ապահով:

ԽԱԼԿՈՒՋ ԱՂԱՃ.— «80 տուն համազգի բնակչօք մէկ դար յառաջ». կանգուն են խաչաքարինք և գետնատարած այժմ քանիներ, որոց առընթեր կը բնակին մի քանի տուն տարազգիք:

ՎԵՐԻ ԱՇՓՇԱՏ.— Մերձ Արճակու ծովակի Արեւմտակողմանն. ունի պատուական տեսարան, արգաւանդ հող, անուշահամ ջուր և բարի օդ: Բնակութեանց թիւն է 15, յորմէ 5 տուն հազիւ Հայ են, որք կը պատմէին լինել 20 տարի յառաջ եղած 50 տուն զուտ Հայոց վերջնական մնացորդն. իսկ մնացեալ 10 տուն Քուրդ են:

ՎԱՐԻ ԱՃՓՃԱՏ. — Նախորդէն կէս ժամ տարակայ կը գտնուի և անոր ներկայ վիճակէն աւելի փայլուն վիճակ մը չունի. միայն թէ տեղւոյս Հայերն մօտ 20 տուն կը լինին և կը բնակին 30 տուն Քրդաց հետ ու տեղւոյ բնութեան կենսատու օդն կը չնչեն :

Աստի մեկնելով 'ի Ճերմուկ և յՕփիկ՝ տարաղգիներէ բաղկացեալ գիւղեր, որք 10 ական տուն հազիւ բնակիչ ունին, որոց զբաղմունքն է երկրագործութիւն, որմէ աւելի խաշնարածութիւն՝ որ սոյն կողմերու քրդաբնակ գիւղօրէից հարստութեան մեծ աղբիւրն է, զոր պէտք է ըսել պարտական են ոչ թէ իւրեանց ճակտի քրտունքին, այլ պարգեւատու բնութեանն, յորմէ ամեն ոք դժբաղդաբար ազատ չէ օգուտ քաղել, թէպէտև ունենայ ապրելոյ և իւրայինքըն ապրեցնելոյ բացարձակ և յերկնից նուիրագործեալ ԻՐԱԻՈՒՆՔ, զոր ես խղճիւս ճանաչելով կը մեկնիմ: Կօղլուճան և Զօպան օղլու գիւղերն կը գտնուին Արճակու ծովու հիւսիսակողմն 30 ական տնէ բաղկացեալ, վերջնոյն մէջ մեծ մասն Քուրդ է :

Այս կողմերը տակաւին կան մի քանի մասնաւոր գիւղեր, որք չունին նշանակութեան արժանի բան մը, ուստի զայնս նշանակել աւելորդ կը համարիմ և կանցնիմ Թիմարայ Բ. գծին :

# ԳԼ. ԾԱ.

## ԹԻՄԱՐԱՑ Բ. ԳԻԾ ԿԱՄ ՄԻՋՆԱԳԻԾ

Տօսպ գաւառի սոյն մասի Արեւելեան և իւր հարեւան ուղղութիւնը նկարագրութեամբ ՏԵՂԱԳՐԱԾ և մեր ընտրած Բ. գծի սկզբնակէտին վերադարձ բրած լինելով՝ այժմ շարունակեմք վերստին մեր ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆ և ՏԵՂԱԳՐԱԿԱՆ բսելիքներն իւր միջնագծի և նորա հարեւան ուղղութեանց վերայ՝ սկսեալ Հարաւային սկզբնակէտէն և այս անգամին հետեւեալէն ։

ԱՒԵՐԱԿԻ (աւերակն) . — Սոյն գիւղն շինուած է ցած լերան մը ստորոտը , օդն և ջուր գովելի հանգամանքէ զուրկ են , նոյնպէս և տեսարանն։ Թեղնոցէ մը զատ ուրիշ ծառաստան չունի ։ Բնակիչք 140 տուն Հայ , որք ունին Ս. ըՍտեփաննոս անուանեալ եկեղեցի մը հանդերձ երեք քահանայիւք , մէկ ծաղկոց կամ որ նոյն է ըսել կատարեալ խամբոց մը ։ Ժողովուրդն վերջին աստիճան աղքատ է . 80 հոգւոյ մօտ պանդուխտ ունին 'ի Պօլիս . Աստուած միայն գիտէ թէ գիւղիս Հայքն ինչ կը քաշեն ծանր վաշխառուաց անկարեկիր ձեռքէն , որոց սիրտերն քար են կապած մարմնեղէն կուրծքի տակ ։ Աւերակի յատուկ խնամօք կը պահպանէ մի ձեռագիր Աւետարան Բոծաւոր մականուանեալ , որում ամեն կողմերէ գիւղացի ուխտաւորք կը դիմեն , նոյնպէս և Վան քաղաքէն ։ Կը պատմուի թէ « շատ

հիւանդներ և դիւահարներ առողջութիւն գըտած են շնորհիւ այդ Աւետարանին » ։ Գիւղս հարուստ է գերեզմանատան տապանաքարներովն. որոյ Հիւսիսային Արեւելակողման մերձակայ բլրոյ վերայ հին մատուռ մի կայ Ս~րբ Ս. Գէորգ անուամբ , որոյ մէջ չաբաթ իրիկուններր , կիրակմուտ ժամուն , կը վառեն ճրագ և կը ծխեն զխունկ ընդ որս կուղղեն նաև իրենց սրտագին աղօթքներն առ Աստուած , որով կը մխիթարուին 'ի սիրտ և 'ի հոգի . ահա իրենց ՅՈՅՍ ։

Տեղւոյս մեր Հայ բնակիչներն տգիտութեան մէկ մէկ զոհեր են . քանի՜ բարիք պիտի լինէր գիւղիս գոնէ նոր սերնդեան համար , եթէ բարեկարգ նախակրթարանի մ'երես տեսնելոյ բաղդն ունենան ։ Աւերակցւոց հողերն ամենամեծ մասամբ արջրդի են՝ այնպէս որ երբեմն կաթիլ մի ջուր Երկնից ամպերէն վար բերելոյ համար չորս կաթիլ արտասուք կը թափեն ԹԱԳԱՒՈՐ ԱՒԵՏԱՐԱՆԻ առջև ։ Այսչափ բաւ է , մեկնիմ տեղէս , ուր աւելի դեգերելով ես ալ կրնամ ծարաւակէզ լինիլ իւրեանց արտերու գլխակոր հասկերու նման ։

ՊՈՂԱՆՑ . — Նախորդէն գրեթէ 1½ ժամ հեռաւոր , ունի 25 տուն Արմենական բնակիչ , մի եկեղեցի , մի քահանայ , իսկ դպրոց «Աստուած հոգին լուսաւորէ» ։ Գիւղիս բոկոտն մանուկներ օրն ողջոյն կը թափառին Արեգական տակն յուսահէտ վատնելով թանկագին ժամերնին՝ 'ի

ցաւ ԳՐԱՄԷՐ Հայ Ուղեւորաց ։ Անկէ զատ կան Շէխ-քարա և Շէխ-եէնի 15 տնական Քուրդ-գիւղեր, յորս տակաւին կը բնակին 3-4 տուն ԱՒԱՆԴԱՊԱՀ Հայեր ։

ՊԱՑՐԱԿ. — Ունի 15 տուն Հայ և 2-3 տուն Մահմետական ։ Հայք իւրեանց համաձայն ունին եկեղեցի մը և քահանայ մը ։

ՏՈՒԼԱՇԷՆ. — Նախորդի Հիւսիսային Արեւ-մուտ 1 ժամէն աւելի հեռու, շինուած երկայն բլրոյ մը ստորոտը. ունի 50 տուն Արամական ժողո-վուրդ, պարզ եկեղեցի մը և պարզագոյն քահա-նայ մը, իսկ դպրոց դարձեալ « Աստուած տայ »։ Խեղճերն արդէն ժամանակէն ներշնչութիւն մը չեն ընդունած. Ինչ պէտք է ԳՐԻ լուսաւորու-թիւն, բաւական է որ ցորեկուան համար ունե-նան Արեւն և գիշերուան համար Լուսին, որոց ներքև վարեն իւրեանց կեանք յայս անցաւոր աշխարհիս ։ Տեղւոյս գիւղացիքն 1500 ոսկիէն աւելի պարտուց տակը կը հեծեն, եթէ ամբողջ հողերնին վաճառեն թերեւս դժուարաւ կարե-նան ազատուիլ այդ բեռան տակէն. 25 հոգւոյ չափ պանդուխտ ունին 'ի Պօլիս ։

ՔԱՐԱ ՔԷՕՓՐԻՒ. — Ունի 12-13 տուն բը-նակիչ և 2-3 տուն Հայ տակաւին կապրին քըր-դաց հետ, որոնցմէ այնչափ դժգոհութիւնք չունին, միայն թէ աղքատ են և անճարակ ։

ԿԷՕԼԼԻՒ. — Մէկ ժամ Նախորդէն հեռու, ունի 35-40 տուն բնակիչ, որոյ կէսն բնիկ են և կէսն

անբնիկ ։ Բնիկ Հայերն ունին եկեղեցի և քահանայ , իսկ դպրոցին գալով չինուելոյ վրայ կը գտնուի . տայր երկինք՝ որ կիսաշէն չմնայր ։

ԲԷՕՉ-ԱՆԻ . — Գիւղս ունի 60 տուն բնակիչ, եկեղեցի և քահանայ . տեղւոյս Հայք , բարեբաղդ եմ ասել , որ չեն մոռացած նաև դըպրոց , որով կրցածնուն չափ կը կրթեն զաւակնին , որք պարտին չմոռնալ Գեր. Պօղոս եպիսկոպոս Մելիքեանի տարած ջանքերն ։

Գիւղիս անուան վերաբերութեամբ եղած աւանդութիւնն , զոր 'ի տարեւորաց լսեցի , սա կը նշանակեմ . « մեր գիւղի Հայանական Ազգ մեծ քաղաքէ մը (. . .) եկած են և ժիւկ մը (ժամանակ մը) անտուն և անտեղ կը բնակըուին դաշտի մէջ վրաններու ներքեւ , որով Բէօչ-Անի անունն առած է » , որ քրդական լեզուի առմամբ գաղթական կը նշանակէ ։

ՇԱՀ-ԿԷԼՏԻ . — Նախորդէն գրեթէ մէկ ժամ հեռաւոր , կը բաղկանայ 23-25 տուն Հայ բնակիչներէ , որք ունին եկեղեցի մը քահանայ մը և մի ծաղկոց համաձայն իւրեանց գեղջկական վիճակին ։ Գիւղիս անուան մասին աւանդութիւնն կըսէ «երբ Պարսից Շահ (անուն չեն յիշեր) Վանայ վերայ կը գայ պատերազմիլ և երբ կը մօտենայ գիւղացիք 'ի հեռուստ զինքն կը տեսնեն և բարձրաձայն կը պօռան իրարու « Շահ կէլտի Շահ կէլտի » , այս առիթով ց'արդ նոյնպէս անուանեցաւ ։

ՆՈՐՈՎԱՆՑ. — Բնակիչ 40 տուն, Ս. Ստեփաննոս անուն եկեղեցի և քահանայ. իսկ դըպրոց «պիտի ունենան»: Ժողովուրդն մեծագոյն մասամբ աղքատ է, այսու ամենայնիւ գովելի է իւրեանց ընտանեսիրութիւն, տնասիրութիւն, և հողասիրութիւն, որոց հետ սերտ սիրով կապուած են: Գեր. Պօղոս եպիսկոպոսի ծննդավայրն է այս գիւղն:

ԱՏԵՌ. — Գիւղիս ընդհանուր նկարագիրն գրեթէ յար և նման է առաջնոյն, միայն թէ անկէ կը տարբերի ծագումն իւր անուան, զոր առած է «ախ տեղ» էն, ոյր վերայ կը լռեմ:

ՃԱՆԻԿ. — Հայ գիւղ 80 տուն բնակչօք, ունի եկեղեցի, քահանայ և գիւղական ճաշակաւ ծաղկոցի չէնք մը: Բնութեան տեսարանն շատ զուարճալի է տեղւոյս, ուր աղի պատուական հանք մի կայ, որ կը տայ կարմրագոյն աղ մը, զոր կը տանին Վասպուրականի ամեն կողմը: Թիմարայ գիւղերէն շատերն աղնոցիս աղբիւրներէն ջուր կը տանին և ամաններու մէջ լեցուցած՝ կը պահեն 'ի գործածութիւն:

Սոյն աղնոցն, որոյ աղն գիւղիս անուամբ կը կոչուի, կառավարութեան կը պատկանի: Տեղւոյս բնակիչներն շատ հիւրասէր, տնասէր և ընտանեկան միաբանասէր են: Գերդաստանի մը մէջ եղբարց իրարմէ բաժանուիլն իւրեանց համար մահ է. կը գտնուին այնպիսի տուներ, յորըս մի և նոյն յարկի տակ 10 էն աւելի մանկիկ-

ներ կորուսին 'ի քուն ։ Որպէս տեսի 'ի Փակակատուկ և 'ի Զուխ՝ Խօշապայ գաւառին պատկանող գիւղերուն մէջ ։ Ճանիկի յԱրեւելահիւսիս կէս ժամ հեռաւոր բլրոյ մը ստորոտը շինուած է Կ[illegible]ն ըսուած գիւղ մը, գրեթէ ծովեզերեայ, ուր 6–7 տուն Մարական որդիք կը բնակին ։ Աստ կայ աւերակ մը անուանեալ Խըլայ վանք, որոյ բեկորներն այժմ կը ծառայեն ուխտատեղւոյ մերձակայ գիւղօրէից համար, որոց խուլերն և ականջի ցաւ ունեցողներն ջերմեռանդօրէն կը բերուին յայս տեղ և յանուն անորոշ սրբոյ մը լողութիւն կը խնդրեն տեսանելի օծեալ քարերէն, և անշուշտ այս առթիւ «Խըլլայ վանք» կոչուած պէտք է լինի և ունեցած՝ ԱՆՑԵԱԼ ՄԸ ։

Ճանիկ գիւղի յԱրեւելակողմն ուղինիս յառաջ վարելով $^3/_4$ ժամէն կը հասնիմք հետեւեալ նշանաւոր տեղին ։

## ԳՂ. ԾԲ.

### ԽԱԹՈՒՆ ՏԻՐԱՄԱՅՐ ԿԱՄ ԸՆԾԱՅԻՑ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵՒ ԻՒՐ ԱՆՈՒԱՄԲ ԳԻՒՂՆ

ՏԻՐԱՄԱՅՐ. — Այս գիւղն շինուած է լայնածաւալ դրիւք լեռնակի մը ստորոտը, հողն բարեբեր, օդն և ջուր ընտիր ու բնութեան տեսարան շատ լաւ. սակայն ափսոս որ ծառաստան չէ, մի քանի աննշան ուռենիներ միայն ունի ։ Բնակիչք 80–85 տուն, որոց եկեղեցին յիշեալ

վանքն է հանդերձ երկու քահանայիւք. ունին նախակրթարան մը, ուր կը նախակրթուին 35–40 ուսանողներ, որք ունին բաւական զարգացեալ մի ուսուցիչ՝ երիտասարդ և աշխոյժ։

Ժողովուրդն ամենամեծ մասամբ չքաւոր է, որոյ խղական պատճառն վանուցս տեղագրութեան մէջ պիտի տեսնուի։ Տեղւոյս Հայերէն ոմանք բնութենէն օժտեալ՝ ունին զարմանալի ձայն և ունակութիւն երաժշտական արհեստի մասին, բայց ինչ օգուտ, բնութեան տուած այդ հաղուագիւտ ձիրքերն միացած են և կը մնան անտաշ։ Քանի երջանիկ կը լինէր Հայ Ուղեւորն, եթէ յայս յարմարագոյն տեղին տեսանէր գիշերօթիկ վարժարան մը, որ մի օր կարող պիտի լինէր Թիմարայ ոգւոյն չօշափելի խաւարն փարատել։

## ՎԱՆՔ

Սոյն վանքն շինուած է գիւղէն 2–3 քարընկեց հեռու նորա յԱրեւելակողմն, կառուցեալ կոփածոյ սև և ճերմակ քարերէ. վանքն Թադէոս Ս. Առաքելոյ օրովն շինուած է և ունի հաչակաւոր անցեալ մը, որոյ վերայ 'ի ծերոց և 'ի տեղական հանգամանաց անձամբ քաղած տեղեկութիւնքըն սաս ճշգօրէն կը նշանակեմ «ԽԱԹՈՒՆ ՏԻՐԱՄԱՅՐ վանուցս տեղին յառաջ քան զՔրիստոս կռատուն եղած է և իւր մէջ յատուկ քրմապետութիւն հաստատուած. երեք քրմապետաց անուանքն տակաւին անաղաւաղ կը յիշ-

ուխն, որք են Շիրակ, Ձիրակ և Միրակ, երեքն
իրարու եղբայր՝ տէր և իշխան եղած մեր այս
երկրին, յետոյ Քրիստոնէութեան սկիզբներն,
երբ Թադէոս Սրբազան Առաքեալն այս կողմ կը
գայ և զՔրիստոս կը քարոզէ, բազմաթիւ ժողո-
վուրդներ առ ինքն կը ձգէ, որով կը պատրաս-
տուի քար ու քանդ ընել տալ կուռքերը և կը-
ռատուններն ու անոնց միջավայրը կառուցա-
նել մի վանք (այժմեանն) յանուն Ս. ԱՍՏ-
ՈՒԱԾԱԾՆԱՅ, յայնժամ յիշեալ երեք քրմա-
պետք, մահ և չարաչար գլխատումն կ'սպառ-
նան Առաքելոյն ասելով թէ «դու եկար քու
Նազովրացի (ուխտաւոր) Յիսուս վարդապետի
կրօնքն քարոզել և զնա պաշտել տալ մեր մար-
դոց, սակայն այդ ընթացքովդ ուղղակի մեր ե-
կամտից աղբիւրն ցամքեցնելու պատճառ կը լի-
նիս. ուստի մեզ մի այլ կողմանէ շահու աղբիւր
պէտք է ցոյց տաս, ապա թէ ոչ չարաչար տան-
ջանօք պիտի մեռցնեմք զքեզ, եթէ կրկին շա-
րունակես քու անվեհեր և յեղափոխիչ քարո-
զութիւնն»:

«Երանելի առաքեալն տեսնելով որ տակա-
ւին քրմապետաց ետեւէն երթացողներն բազ-
մաթիւ են և անոնց խօսքերն իբրև աստուա-
ծային պատգամներ կընդունին, զքրմապետս
շահել իմաստութիւն կը համարի և նոյն իսկ նո-
ցա (քրմապետաց) համախոհութեամբ կործանել

կուտայ զատրուշանս, որոց միջավայրը, որպէս վերև յիշուեցաւ, կը կանգնեն այժմեան վանքն, որոյ հիմնաքարանց աջակողմեան անկիւնաքարն Առաքելոյ խրեան ձեռամբ կ'օծէ. ահա այսպէս կը կանգնի սոյն մենաստանն, որոյ բարեպաշտ հաւատացեալներէն եկած բոլոր նուէրներ կամ եկամուտներ Առաքելոյն կը յատկացնէ յիշեալ երեք քրմապետ եղբարց 'ի ռոճիկ, որով կ'ապրին »:

Սոյն քրմապետաց ցեղէն յանուանէ կը յիշուի գիւղիս գերդաստաններէն մին, որ վանուց եկամտին երբեմն տէր լինելոյ յաւակնութիւն ցոյց կը տար, որպէս աջապահեանքն երբեմն 'ի Սիս:

Տիրամայր գիւղի անունն արդէն մենաստանիս անունէն ծագում առած է: Նախնի ժամանակաց մէջ վանքս նախանձելի վիճակ մը ունեցած է մինչև «Ս. Ահարօն» անուանեալ վանահօր ժամանակը՝ որ Շէն կը թողու իր յաջորդաց և կը վախճանի:

*
* *

Ներկայիս մէջ նշանակութեան արժանի եթէ բան մի կայ, այն ևս վանուցս գեղեցկաշէն փոքրիկ տաճարն է: Աստ ամեն տարի Աստուածածնայ տօնին խուռն բազմութեամբ ուխտաւորներ կը դիմեն հեռաւոր և մերձաւոր տեղերէ և երբեմն իսկ Պարսկաստանէն և Ռուսաստանէն: Կ'աւանդեն թէ «Աստուածամօր ջօտին կը գտնուի տաճարիս յաջակողմն», զոր

սեղանի նման զարդարած են և արդէն բուն ուխտատեղին է այն ։

Ի նախնեաց սկսեալ մինչև 1873 ի ատենները սոյն վանուց(*) բոլոր եկամուտներն գիւղացիք կ՚առնէին իբրև հարազատ ժառանգ եռապետ—քրմապետ եղբարց. և ոչ ոք իրաւունք ունէր միջամտելոյ իւրեանց գործերուն, ըստ որում իրենք եղբայրք բաժին կընէին մէջերնին եկած ընծայներն ։

Տիրամօր ժողովուրդ զերծ չէ ծուլութենէ, զոր ստացած է ուղղակի իւր կեանքէն, վասն զի միշտ վանուց նուէրներով և զօաչ ծոցերնին դրած՝ յանուն Տիրամօր գիւղէ 'ի գիւղ, քաղաքէ 'ի քաղաք մուրացկանութեամբ ապրած են ։ Տասն տարիէ 'ի վեր սոյն վանքն առնուած է Լիմ Անապատայ դերիշխանութեան ներքև ։ Տարեկան եկամուտն այժմ 60 ոսկւոյ կը հանի, իսկ կրթական ծախքն հազիւ 20 ոսկի կը լինի ։

## ԳԼ. ԾԳ.

### ՏԻՐԱՄԱՅՐ ՎԱՆՈՒՑ ՀՆՈՒԹԻՒՆՔ

Համանուն գիւղիս կեդրոնավայրը կան Ս. Յովհաննէս և Ս. Սիմոն անուամբ երկու աւերակներ, յորոց առաջնոյն մէջ սակէ 5–6 տարի յառաջ տեղւոյ քահանայներէն մին վիմաքար

(*) Այլազգիք սոյն վանուց «Միրակ» անուն կը տան, վերոյիշեալ քրմապետաց միոյն անուամբն ։

մը դարձուցած ատեն կը տեսնէ փառահեղ ծերունւոյ մը մարմին, որոյ կապերն անքակ և անայլայլ կեցած, յորմէ կը բուրէ անուշահոտութիւն մը յերեւս քահանային, որ կը զարհուրէ, իբրև սրբոյ մարմինէ, ոյր վերայ երկիւղիւ վեմաքարն վերստին դարձնելոյ կ'ստիպուի ։

Վանուց հարաւային կողմն 4 քարընկէց հեռու կը տեսնուին 2 տաղաւարիկներ, յորոց մին ԿԱՐՄԻՐ ԽԱՉ և միւսն ԿԱՊՈՅՏ ԽԱՉ կ'անուանին ու բոլոր ուխտաւորք ջերմեռանդութեամբ 'ի սոյն նուիրական տեղիս կը դիմեն յուխտ ։

Վանուց Հիւսիսակողմն կայ մի այլ ուխտատեղի, զոր կը կոչեն անճարակաց գերեզման, որում կը դիմեն յուսահատ անձինք իբրև վերջնական յուսոյ ։

* * *

Տիրամօր մենաստանիս յանմիջական Արեւելակողմն բլրաձև երկայն լեռնակին վերայ եղած լինել կ'աւանդուի քրմապետ եղբարց բնակութիւնն, որոյ տեղլին այժմ «Բերդ» կ'անուանեն, վասն զի այդ բնակած քարաժայռին վերայ շինած են երբեմն արհեստական բերդակ մը, յորմէ, իբրև ամենաբարձր տեղէ, կ'որոնէին զճանապարհորդս 'ի կողոպտել. այդ դրութիւնն կը շարունակի մինչև ց'դարձ 'ի Քրիստոնէական հաւատս, որով կեանքերնին կ'ազնուանայ և կը թողուն գէշ սովորութիւննին ։

Յիշեալ բերդի Արեւմտեան ստորոտի ձո-

բակին մէջ կան 3 հատ ուրիշ տղաւարէկներ ։

*
* *

Տիրամայր գիւղին սահմանն չորս կողմանէ շրջապատեալ է Հօշէրէն կոչուած Քուրդ ցեղապետներէ, որոնց բնակութիւնք 40էն վեր չեն անցնիր, սակայն ամենամեծ ազդեցութիւն ունին։

*
* *

Տիրամայր վանուց յԱրեւելեան Հիւսիսակողմն, իբրեւ փոքրիկ Թերակղզի, մնած է դէպ 'ի Բզնունեաց ծովն ԲԱՂ(*) անուն մի գիւղ, որ ունի պատուական օդ, ընտիր ջուր և զուարճալի դիրք ։ «Բաղն երբեմն նշանաւոր քաղաք եղած է, շինուած մեր Հայկ նահապետի թոռնիկ Մանաւազի որդի Բաղ Նահապետ–իշխանէն, որոյ անուամբ ց'արդ կը կոչուի և քանի մը տասնեակ դարերու աղճամուղճները ճեխքելով կը գայ և հարազատութեամբ առ մեզ կը հասնի այդ ԱՆՈՒՆՆ ։ Բաղ գիւղի մէջ այժմ 10–12 տուն բնակութիւնք կան, յորոց 3–4 տուն միայն Հայ են 'ի հնուց մնացած ։

Թիմարայ միջնադծին և իւր հարեւան կողմերու Տեղագրութեանց վերջ տուած լինելով այժմ վերադառնամք յիւր Արեւմտակողմն, որոյ Հարաւային ծայրէն շարունակեմք մեր ՈՃՆ կամ ՈՒՂԻՆ հետեւեալ գլխոյն ։

---

(*) Սոյն անուամբ գիւղ մի եւս կայ Աղբակ գաւառին մէջ, որ վերայ արդէն խօսուած է ։

## ԳԼ. ԾԳ.

### ԹԻՄԱՐԱՑ Գ. ԳԻԾՆ (ԱՐԵՒՄՏԵԱՆ)

ԿԻՐԱՇԷՆ. — *Սոյն ծովեզերեայ գիւղն ունի 30 տուն Հայ բնակիչք, որք մեծագոյն մասամբ բրուտ են. կը շինեն հողէ այլ և այլ ամաններ, որոց հողն արդէն գիւղի սահմանին մէջ է. շինուած ամանները 'ի Զանաք-գալէ շինուածներէն շատ գերազանց են թէ՛ դիմացկունութեամբ և թէ՛ ջուրը պաղ պահելոյ յատկութեամբ, միայն թէ արհեստապէս չեն գեղեցիկ կամ ոսկեզօծեալ. Վասպուրականի յամեն կողմեր կը տարուին 'ի վաճառ:*

ՄԱՐՄԵՏ. — *Նախորդի Արեւմտահիւսիս և անկէ $1\frac{1}{2}$ ժամու հեռաւորութեամբ: Ունի 120 տուն Հայ բնակիչք, որք այգեգործ և երկրագործ են: Գիւղն ունի լաւ տեսարան և Սեւ կամ իւր անուամբ «Մարմետ» կոչուած գետն իւր առջեւէն կ'ընթանայ: Ունին եկեղեցի, քահանայ և դպրոց, ու թուով 30 պանդուխտ:*

ԱՄԵՆԱՇԱՏ. — *Ունի 28–30 տուն Հայ, մեծաւ մասամբ չ'քաւոր. ունին եկեղեցի և քահանայ առանց դպրոցի: Տեղւոյս տեսարան շատ սիրուն է իւր խաղողի այգիներովը: Աստ բաւական նշանաւոր պրակ մի կայ պատկանող Կըտուց անապատայ, և որոյ մէջ 7–8000 հատ թեղի ծառեր կը գտնուին:*

ԱՆՆԱ-ՎԱՆՔ. — *Բնակիչ 30 տուն Նախոր-*

գին գրեթէ յար և նման ։ Ունին գովելի կրօնասիրութիւն , ուսումնասիրութիւն և օրինակելի ընտանեսիրութիւն ։ Պանդխտութեան գնալն բընաւ չեն սիրեր ։ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ անուամբ հին եկեղեցի մ'ունին հաստատուն շինուածքով , զոր կառուցանել տուած է Աննա Շիրակացին , որոյ գերեզմանն եկեղեցւոյ մէջն է , ուր տարին մի անգամ պատարագ կընեն ։

ԱՂԻՒՐ . — Սոյն գիւղն Թեմարայ Մայրգիւղն է և կը գտնուի Վանայ Հիւսիսային Արեւմուտքը 4 ժամու հեռաւորութեամբ . շինուած է մի ընդարձակ և տափարակ դաշտի վերայ՝ շըրջապատեալ պտղատու ծառաստաններէ և 100 էն աւելի խաղողի այգիներէ . Բնակութեանց թիւն է 250 զուտ Հայ , որոց նիւթական կողմն լաւ է ։ Եկեղեցին ճաշակաւոր և կոկիկ է ։ Աստ կայ Միացեալ Ընկերութեանց պատկանող անուանական նախակրթարան մը ։ Գիւղս ունի 60 հոգիէ աւելի պանդուխտ 'ի Կ. Պոլիս ։

Կարմիր Վանք

Աղիւրի յԱրեւմտակողմն յիշեալ անունով աւերակ մի կայ , որ դուն ուրեք ուխտատեղւոյ կը ծառայէ բարեպաշտ գիւղացւոց համար ։ Տեղւոյս անկորուստ խաչաքարինք բնական լեզուաւ մը կրնան զանցելոց պատմել , բայց որովհետեւ ես մոլիկ ընելոյ պատեհ ժամ չունիմ , կ'անցնիմք հետեւեալ չէն տեղին , ուր հարուստ ԺԱՄ կրնամ ունենալ ։

## ԱՍՏՈՒԱԾԱԾՆԱՅ ՎԱՆՔ

Սոյն մենաստան գիւղէն 6–7 քարնկէց հեռու է և շինուած սրբատաշ քարերէ՝ կառուցման թուականն չ'գտի և տաճարն շատ աւերի հին է։

Վանահայր–Վարդապետին հետ խօսեցայ աշխարհիս չորս կողմերու ՀԱՐՑԵՐՈՒՆ վերայ, մի գիշերօթիկ վարժարանի վերայ, գիւղացի բոկոտն և թափառական մանկանց ապագային վերայ, թուղթ և գրչի վերայ ու վերջապէս ԼՈՒՍՈՅ և ԳԻՏՈՒԹԵԱՆ վերայ, առ որս նա դժգոհութիւն մը ըզգաց, և այս խօսքիս ճշմարտութեան համար, խիղճս ալ կը վկայէ, սիրտս ալ կը վկայէ և միտքս ալ լաւ կը յիշէ։ Վանքս նիւթական վիճակի տէր է և կը պատկանի Լիմ Անապատայ (Ս. Գէորգ)։

Ժրաջան վարդապետին իմ վերջի հրաժեշտըս տալով մեկնեցայ և ինքն ուրախ լինելով շարունակեց իւր խոտաքաղութիւնն երկայն գերանդիովն, զոր քաշելոյ շատ յարմարութիւն ունէր և առաջուց արդէն վարժ։

ԷՐԷՐԻՆ. — Ունի 100 տուն Հայ բնակիչ, յանուն Ս. Սահակայ աննշան վանք մը, եկեղեցի և պարզ դպրոց մը։ Գիւղիս մէջ կան խաղողի մի քանի այգիներ։

ԱՄԿՈՒ ԲԵՐԴ. — Ունի 25 տուն Հայկական և 20 տուն Մահմետական։ Աստ կայ բնականէն բերդակ մ'աննշան, որ ժամանակին իւր նպատակին ծառայած է և այժմ անշքացեալ։

Գիւղիս մէջ կը պահուի «Ամկու Աւետարան» կոչուած ձեռագիր Աւետարան մը, «որոյ գրողն օր մէկ ոսկան հատ կերած է»։

*

* *

Վան-Տոսպ գաւառի Հիւսիսակողման Թչմոյ ընկած սոյն մասի վերոյիշեալ գիւղերէն զատ կան նաև Խժիշկ, Էջմիածին, Նոր-չէն և այլ մի քանի աննշան գիւղակներ, զորոց խօսիլ չարժեր։

Ուստի այսչափովս լրումն կը տամ Տեղագրութեանցս Բ. Մասին, զոր նման առաջնոյն, հաւատարմութեան և անկեղծութեան գրչովս կը կնքեմ և քանի որ ըստ Առաքական առածին, «'ի հաւատարմութեան է փրկութիւն», ուրեմն սոյն պատեհ առթիւս ջերմապէս կը յանձնարարեմ իմ համարիւն եղբարցս միշտ սիրել զԱզգն և զՆորա Տէր, սիրել Հայրենիք և Մայրենիք, սիրել իւր օդն կենսատու, սիրել հողն և ջուրը, սիրել առուք և կարկաչք առուակաց, սիրել լեռնիք և բլուրք, յորս են ոչխարք և գառինք Արմենական գիւղացւոյն, սիրել դաշտք և հովիտք, որք լի են խնկունի ծաղիկներով, սիրել բոյսք և անդաստանք, որոց մէջ յաճախ կը լսուին քաղցրանուագ սոխակներու անուշ դայլայլիկք, սիրել տունքն և տեղիքը, ուր կապրին ԱԽԱՆԴԱՊԱՀ Հայ գիւղացիք, սիրել չէնք և աւերակք, սիրել և միանգամայն խնկել համայն վանօրէից և ամայացեալ նուիրական վայրաց, յորոց առ հասարակ կը բուրեն ՍՐԲՈՒ-

ԹԻՒՆՔ և ԱՆՈՒՇԱՀՈՏՈՒԹԻՒՆՔ ։ Սիրել նոյնպէս Արարատայ վճիտ Երկնից պայծառ կամարէն անննջուկ կախեալ Արեւն և Լուսին, մարդկութեան այդ երկու լուսատու ՃՐԱԳՆԵՐ, որոց շնորհիւ միայն կարող են, այս ծուռ ու մուռ աշխարհին մէջ, անսխալ քալել մեր Երկրի անԳԻՐ Հայածինք, որոց կոյս արտօրէից վրայէն քաղցր ակամբ նայելով կանցանեին ամեն օր Երկնային այդ երկու լուսեղէն գունտերն ։

Հուսկ ուրեմն պարտիմք սերտօրէն ընդմիշտ սիրել մեր Օսմանեան Օգոստափառ և Բարեխնամ Վեհապետն և որպէս վերեւ ակնարկեցի, փարել միանգամայն նորա հզօր գահուն, որոյ փառաւորութեամբ անտարակոյս կապրիմք յաւիտեան ։

ՎԵՐՋ ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍԻ



# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

Երես

# ՎՐԻՊԱԿՔ

| Երես | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 44 | 21 | մամնաժողովին | յանձնաժողովին |
| 73 | 27 | մի օր | մի օր կերեւին |
| 78 | 26 | փիղան | փիղան |
| 82 | 10 | վարայ | վարդայ |
| 98 | 9 | կառուցի | կառուցուի |
| 112 | 13 | Մայայրսա | Մայայ սար |
| 117 | 25 | կըսէն | կըսեմ |
| 120 | 18 | կերթեւեկլին | կերթեւեկեն , |
| 128 | 16 | այլ ոչ | եւ |
| 146 | 19 | խօսիք | խօսիմք , |
| 151 | 28 | ՕԳ | ՕԴ |
| 155 | 22 | ունէր | ունի |
| 199 | 4 | ԱՂԴԱ | ՍՂԴԱ |
| 201 | 25 | անապատաց | անապատայ |
| 202 | 23 | ԱԽՄՆՑ | ԱԽԱՆՑ |
| 203 | 27 | բարակ | բորակ |
| 214 | 25 | կայ | կան |
| 232 | 15 | ՀԺԱ | ՋԺԱ |
| 255 | 1-2 | ասայացեալ | ամայացեալ |
| 256 | 16 | ԹԵՄԱՐԱՑ | ԹԻՄԱՐԱՑ |





Կը գտնուի բոլոր Գրավաճառաց քով
գին 10 դահեկանի ։

Դպրոցաց համար զեղջ կը լինի ։